# ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակություններից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8

ՕԳՈՍՏՈՍ 1978

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ









# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

Հուլիսի 18-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը:

Պլենումը քննարկեց «ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումի արդյունքների և Կենտկոմի պլենումի որոշումից ու ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի «ՍՍՀՄ գյուղատնտեսության հետագա զարգացման մասին» զեկուցումից բխող հանրապետության կոմունիստների, բոլոր աշխատավորների խնդիրների մասին» հարցը:

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Պլենումը լսեց «Հայաստանի կոմկուսի XXVI համագումարից հետո ընկած ժամանակամիջոցում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի աշխատանքի մասին» ինֆորմացիան, որով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար ընկ. Պ. Պ. Անիսիմովը:

Քննարկված հարցերի առթիվ պլենումն ընդունեց համապատասխան որոշումներ:

# ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ

## ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ*

*Ընկերնե՛ր։*

*Ինչպես ձեզ հայտնի է, հուլիսի 3—4-ը տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը։ Պլենումը լսեց և քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը «ՍՍՀՄ գյուղատնտեսության հետագա զարգացման մասին»։*

*Ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ տրված է արդի փուլում սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման ուղղությամբ կուսակցության քաղաքականության և պրակտիկ գործունեության խոր գիտական վերլուծությունը, սահմանված են նրա հետագա վերելքի հիմնական ուղիներն ու կոնկրետ միջոցները։ Ընթացիկ, անհետաձգելի խնդիրների լուծման հետ մեկտեղ նրանում ձևակերպված են գյուղատնտեսության և երկրի ամբողջ ագրոարդյունաբերական կոմպլեքսի հեռանկարային զարգացման սկզբունքային հիմունքները։*

*ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը միահամուռ հավանություն տվեց գյուղատնտեսության հետագա զարգացման այն միջոցառումներին, որոնք մշակվել են Կենտկոմի քաղբյուրոյի կողմից և շարադրվել ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ։*

*1965 թվականի մարտյան պլենումից հետո կուսակցության Կենտկոմի ներկա պլենումը նոր փուլ նշանավորեց նրա ագրարային քաղաքականության մշակման և հետագա խորացման մեջ, որը արտացոլում է սոցիալիստական հասարակության ժամանակակից պայմաններն ու պահանջմունքները։ Պլենումն արձանագրեց, որ արդի ագրարային քաղաքականությունը կուսակցության լենինյան ստրատեգիան ու տակտիկան է գյուղատնտեսության բնագավառում զարգացած սոցիալիզմի պայմաններում։*

*Պլենումի նյութերն ու որոշումները գործունեության ուղեցույց են կուսակցական, սովետական և տնտեսական կազմակերպությունների համար, դրանք սովետական ժողովրդին զինում են հստակ ծրագրով կոմունիստական շինարարության խնդիրների հաջող իրականացման պայքարում։*

*Այդ որոշումները մի նոր վառ վկայություն են այն բանի, որ լենինյան կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի գործունեության բարձրագույն նպատակը ժողովրդի բարօրությունն է, հոգատարությունը սովետական մարդու, նրա կարիքների ու պահանջմունքների նկատմամբ։*

*Ամբողջ սովետական ժողովուրդը, այդ թվում և մեր հանրապետության աշխատավորները, աշխատանքային և քաղաքական նոր վերելքի պայմաններում, միահամուռ հավանություն են տալիս ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումներին, ջերմորեն պաշտպանում են մեր կուսակցության լենինյան*

* *Զեկուցումը տպագրվում է որոշ համառոտումներով։*



*ագրարային քաղաքականությունը և պատրաստակամություն են հայտնում այն կենսագործելու։*

*Էկոնոմիկայի դինամիկ և համամասնական զարգացման, պարենային և հումքային հզոր բազայի ստեղծման, ժողովրդի բարեկեցության աճի արագացման, քաղաքի և գյուղի հետագա մերձեցման, կոմունիստական շինարարության այդ և ուրիշ շատ խոշոր պրոբլեմների լուծման հարցերը անխզելիորեն կապված են գյուղատնտեսական արտադրության ըստ ամենայնի զարգացման և ամրապնդման հետ։*

*Կուսակցության լենինյան ագրարային քաղաքականության զարգացման նոր փուլի սկիզբը դրած ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո երկրի գյուղատնտեսությունը խոշոր առաջընթաց քայլեր արեց տնտեսական և սոցիալական առումով։ Հաստատորեն ընթանալով նախատեսված կուրսով, կուսակցությունը կարողացավ լուծել ագրարային մեծաթիվ պրոբլեմներ։*

*Լուծելով ստրատեգիական խնդիրը՝ երկիրը պարենով և արդյունաբերությունը գյուղատնտեսական հումքով հուսալիորեն ապահովելու խնդիրը, կուսակցությունն իր առաջնահերթ պարտականությունն էր համարում զգալիորեն ամրապնդել գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան։ Այդ նպատակով փոխվեց մոտեցումը գյուղատնտեսության մեջ կատարվող կապիտալ ներդրումների հարցին։ Զգալիորեն բարձրացավ նրա բաժինը կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալների մեջ։ Դրա շնորհիվ զգալիորեն ամրապնդվել է գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան, հետևողականորեն իրականացվում է նրա փոխադրումը ինդուստրիալ հիմքի վրա։ Շատ բան է արվել գյուղատնտեսությանը սատարող արդյունաբերության զարգացման ասպարեզում։*

*Պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ վառ ու համոզիչ կերպով բացահայտված է մեր ժամանակի հատկանշական գծերից մեկը՝ գյուղի աշխատավորների բարեկեցության և կուլտուրայի անշեղ աճը, նրանց կենցաղի համակողմանի բարելավումը։*

*Նշելով ձեռք բերված հաջողությունները, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը դրա հետ մեկտեղ արձանագրեց, որ գյուղատնտեսության զարգացման ընդհանուր մակարդակը դեռևս չի համապատասխանում հասարակության արագ աճող պահանջմունքներին և պահանջվում են եռանդուն ջանքեր ժողովրդական տնտեսության այդ կենսականորեն կարևոր ճյուղի նյութատեխնիկական բազայի հետագա ամրապնդման, արտադրության կազմակերպման բարելավման և նրա արդյունավետության բարձրացման ուղղությամբ, այն հաշվով, որ ամենամոտ ժամանակներս շատ ավելի լրիվ բավարարվեն սննդամթերքի և արդյունաբերական հումքի պահանջմունքները։*

*ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը որոշեց, հաշվի առնելով նախորդ տարիների փորձը և ձեռք բերված արդյունքները, որոնք համոզիչ կերպով հաստատում են ՍՄԿԿ-ի լենինյան ագրարային քաղաքականության գիտական հիմնավորվածությունն ու կենսական ուժը, անհրաժեշտ համարել այսուհետև ևս ամենայն հաստատակամությամբ ընթանալ կուսակցության Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումի, Կենտկոմի հաջորդ պլենումների և կուսակցության համագումարների մշակած կուրսով։*

*Պլենումը գյուղատնտեսության ասպարեզում գլխավոր խնդիրը համարեց նրա բոլոր ճյուղերի համակողմանի, դինամիկ զարգացումը և արդյունավետության զգալի բարձրացումը, պարենամթերքի և գյուղատնտեսական հումքի հուսալի մատակարարումը երկրին՝ ժողովրդի կենսամակարդակի հետագա բարձրացումը ապահովելու համար։ Անհրաժեշտ է ըստ ամենայնի մեծացնել ջանքերը քաղաքի և գյուղի կյանքի նյութական ու կուլտուր-կենցաղային պայմանների մերձեցման խնդիրը լուծելու համար։*

*Ընկերնե՛ր։ ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ, ձեռք բերված արդյունքների դրական գնահատականի հետ մեկտեղ, տրված է գյուղատնտեսության բնագավառում ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կատարման ուղղությամբ կուսակցական, սովետական և*

գյուղատնտեսական մարմինների, մինիստրությունների և գերատեսչությունների աշխատանքում եղած թերությունների քննադատությունը։ Թերությունների այդ քննադատությունը ամբողջովին ու լիովին վերաբերում է նաև մեր հանրապետության գյուղատնտեսական արտադրությանը։

Մեր այսօրվա պլենումի խնդիրն է՝ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի պահանջների, ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման բովանդակած դրույթների և հետևությունների լույսի ներքո, հանրապետության գյուղատնտեսության իրավիճակի քննադատական վերլուծության հիման վրա մշակել գործողությունների կոնկրետ ծրագիր մեր աշխատանքի թերությունները արագ վերացնելու, այդ կենսականորեն կարևոր ճյուղի հետագա արագ վերելքն ու դինամիկ զարգացումն ապահովելու նպատակով, որպեսզի ապահովվի գյուղատնտեսության բնագավառում ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի սահմանած բնագծերի նվաճումը։

ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո անցած տարիներին որակական և քանակական որոշակի տեղաշարժեր են կատարվել մեր հանրապետության գյուղատնտեսության մեջ։

Գյուղատնտեսության հանրային սեկտորում հիմնական արտադրական ֆոնդերը հասել են 1.541 միլիոն ռուբլու, որը 3,2 անգամ գերազանցում է 1965 թվականի մակարդակը։ Գյուղատնտեսական ձեռնարկությունների էներգետիկ կարողություններն ավելացել են 1,9 անգամ։ Իրականացվել է հողերի քիմիացման, մելիորացման և գյուղատնտեսական արտադրության մեքենայացման լայն ծրագիր։

Հանքային պարարտանյութերի մատակարարումը 1977 թվականին կազմեց 415 հազար տոննա, որը 273 հազար տոննայով ավելի է, քան 1965 թվականին։

Այդ միջոցառումների իրականացման շնորհիվ գյուղատնտեսության համախառն արտադրանքի տարեկան միջին ծավալը 1971—1975 թվականներին, 1961—1965 թվականների համեմատությամբ, աճեց 47 տոկոսով, իսկ տասներորդ հնգամյակի երկու տարում՝ 75 տոկոսով։

1971—1975 թվականներին, 1961—1965 թվականների տարեկան միջին ցուցանիշների համեմատությամբ, հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունն ավելացավ 64 տոկոսով, իսկ 1976—1977 թվականներին այն կրկնապատկվեց, շաքարի ճակնդեղի արտադրությունն ավելացավ համապատասխանաբար 4 և 51 տոկոսով, կարտոֆիլինը՝ 6 և 28 տոկոսով, բանջարեղենինը՝ 24 և 38, մսի արտադրությունը՝ 62 և 86 տոկոսով, կաթի արտադրությունը՝ 23 և 28 տոկոսով, մեկ կովի միջին կաթնատվությունը 16 և 31 տոկոսով, ձվինը՝ 67 տոկոսով և ավելի քան 2 անգամ, հանրային սեկտորում կոշտ կերի արտադրությունը համապատասխանաբար ավելացավ 28 և 77 տոկոսով, հյութալի կերինը՝ 3 և 36 տոկոսով։ Ընդ որում, զգալիորեն ավելացան գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունները և անասունների գլխաքանակը։

Այս ամենը հնարավորություն տվեց բարելավել պարենի մատակարարումը բնակչությանը։ Այսպես, պետական և կոոպերատիվ առևտրի միջոցով հանրապետության բնակչությանը մսամթերքների վաճառքը 1977 թվականին հասավ 107 հազար տոննայի, որը գրեթե երեք անգամ ավելի է, քան 1965 թվականին։ Կաթնամթերքների վաճառքը համապատասխանաբար ավելացավ 2,5 անգամ (այդ թվում կենդանական յուղինը՝ 2,5 անգամ), ձվինը՝ 4,2 անգամ, բանջարեղենինը՝ ավելի քան 4 անգամ, մրգերինն ու բոստանային կուլտուրաներինը՝ 2,5 անգամ։ Բնակչության թիվը 700 հազարով ավելանալու հետ մեկտեղ մեկ շնչին ընկնող մսի սպառումը ավելացավ 16 կիլոգրամով։

Տասներորդ հնգամյակում հանրապետության գյուղատնտեսական արտադրության ծավալը պետք է աճի 24,9 տոկոսով, որը միութենական հանրապետությունների մեջ բարձր ցուցանիշներից մեկն է։ Նախատեսվում են նաև գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալային աճի բարձր տեմպեր։

Այդ բնագծերին հասնելու համար մենք պետք է առավելագույն չափով, մեծ արդյունավետությամբ օգտագործենք գյուղատնտեսական արտադրության գոյություն ունեցող պոտենցիալը, ըստ ամենայնի բարձրացնենք աշխատանքի



արտադրողականությունը և մեր աշխատանքի որակը, ինչպես նաև հետևողականորեն և դինամիկ կերպով զարգացնենք և ամրապնդենք հանրապետության գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան, այն պլանաչափորեն փոխադրենք ինդուստրիալ հիմքի վրա։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն ընդգծեց, որ գյուղատնտեսական արտադրության ըստ ամենայնի մեքենայացման, հողերի քիմիացման ու մելիորացման հիման վրա նրա ինտենսիվացումը մնում է արդի փուլում կուսակցության ագրարային քաղաքականության հիմնական ուղղությունը։

Գյուղատնտեսական արտադրության աճի արագացման նպատակին ուղղված միջոցառումների սիստեմում առաջնակարգ դեր է պատկանում գյուղատնտեսական արտադրության մեքենայացմանը։ Վերջին տասնամյակում հանրապետությունում քիչ բան չի արվել կոլտնտեսությունների և պետական տնտեսությունների տեխնիկական զինման ասպարեզում։

Այսուհետև ևս նախատեսվում է զգալիորեն մեծացնել աշխատանքի ֆոնդազինվածությունն ու էներգազինվածությունը հանրապետության գյուղատնտեսության մեջ։ Դրա հետ մեկտեղ խնդիր է դրվում ուժեղացնել պահանջկոտությունը ամբողջ գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործումը բարելավելու ասպարեզում։

Հանրապետության շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում տեխնիկայի օգտագործման մակարդակը դեռևս չի համապատասխանում ժամանակակից պահանջներին։ Ցածր է մեքենաների հերթափոխային և օրական արտադրողականությունը, դանդաղ են արմատավորվում աշխատանքի կազմակերպման, մեքենատրակտորային համակազմի ու սարքավորումների նորոգման, սպասարկման ու պահպանման առաջավոր մեթոդները, մեծ են տեխնիկայի պարապուրդները, գոյություն ունի մեխանիզատորական կադրերի հոսունություն։

Արտադրական պրոցեսների մեքենայացման աստիճանը առանձնապես ցածր է անասնապահության մեջ։

Դեռևս դանդաղ են արմատավորվում և վատ են օգտագործվում ստացված տեխնիկան և սարքավորումները, որը թանկացնում է արտադրանքի ինքնարժեքը, մեծ վնաս հասցնում հանրապետության տնտեսությունների էկոնոմիկային։

Պետպլանը, գյուղատնտեսության մինիստրությունը, «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորումը, գյուղատնտեսական ձեռնարկություններ և կազմակերպություններ ունեցող մյուս մինիստրություններն ու գերատեսչությունները, կոլտնտեսությունների, պետական տնտեսությունների և միջտնտեսային ձեռնարկությունների ղեկավարները պետք է մշակեն և իրականացնեն միջոցառումներ, որոնք նպատակ ունենան զգալիորեն բարձրացնել արտադրական պրոցեսների մեքենայացման աստիճանը, գյուղատնտեսական մեքենաների և անասնապահական ֆերմաների սարքավորումների օգտագործման արդյունավետությունը, ամրապնդել տնտեսությունների ինժեներատեխնիկական ծառայությունը, կատարելագործել մեխանիզատորների աշխատանքի կազմակերպման ձևերն ու մեթոդները, ուժեղացնել վերահսկողությունը գյուղատնտեսական տեխնիկայի պահպանման, շահագործման և դուրսգրման սահմանված կարգը խստորեն կիրառելու նկատմամբ։

Մենք պետք է վճռական միջոցներ ձեռնարկենք նաև հանրապետության կոլտնտեսությունների և պետական տնտեսությունների արտադրական սպասարկման հետագա համակենտրոնացման ուղղությամբ, որը հնարավորություն կտա լայն մանևրման հաշվին բարձրացնել մեքենատրակտորային համակարգի օգտագործման արդյունավետությունը։ Գյուղատնտեսության մինիստրությունը (ընկ. Հ. Թարջումանյան) և «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորումը (ընկ. Հ. Նավասարդյան) երկչոտ քայլերից պետք է անցնեն տնտեսությունների արտադրական սպասարկման լայն արմատավորմանը։

Հանրապետության Մինիստրների խորհուրդը, հաշվի առնելով ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի պահանջները, պետք է մշակի առաջավոր տեխնիկա-

յի ու տեխնոլոգիայի հիման վրա հանրապետության գյուղատնտեսական արտադրության մեքենայացման երկարաժամկետ կոմպլեքսային պլան։

Վերջին տարիներին հանրապետությունում մի շարք միջոցառումներ են իրականացվել հանքային պարարտանյութերի օգտագործման արդյունավետության հետագա բարձրացման, փոխադրելիս, պահպանելիս և պարարտացնելիս դրանց կորուստների կրճատման և հանրապետության տնտեսությունների ագրոքիմիական սպասարկման կատարելագործման ուղղությամբ։ Դրա հետ մեկտեղ պարարտանյութերի օգտագործման և կոլտնտեսությունների ու սովխոզների ագրոքիմիական սպասարկման կազմակերպման գործում դեռևս մեծ թերություններ կան, որոնք իջեցնում են գյուղատնտեսական արտադրության քիմիացման արդյունավետությունը։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը քննադատեց Գուգարքի, Շամշադինի, Ամասիայի, Եղեգնաձորի, Մեղրու, Մարտունու և այլ շրջանների կուսակցական, սովետական և գյուղատնտեսական կազմակերպությունների ղեկավարներին այն բանի համար, որ այդ շրջաններում հաճախ խախտվում են հանքային պարարտանյութերի և բույսերի պաշտպանության քիմիական միջոցների փոխադրման ու պահպանման սահմանված կանոնները։ Տնտեսությունների և «Հայգյուղտեխնիկայի» հանրապետական միավորման կազմակերպությունների մեծ մասում դանդաղ է ստեղծվում քիմիացման համապատասխան նյութատեխնիկական բազան։ Հանրապետությունում չի մշակվել օպտիմալ տարողության մեքենայացված պահեստների տեղաբաշխման միասնական սխեմա՝ հանքային պարարտանյութերի և մյուս քիմիական միջոցների պահպանման համար, մինչև այժմ լուծված չէ ագրոքիմիական կենտրոնների ստեղծման հարցը։

Մեղրու, Ղուկասյանի, Ամասիայի, Ազիզբեկովի, Թալինի և ուրիշ շատ շրջաններում գյուղատնտեսական կուլտուրաների մեկ հեկտարին տրվում է սահմանված նորմայից 2,5—3 անգամ պակաս հանքային պարարտանյութ, որի հետևանքով բերքատվությունը միջին հանրապետական ցուցանիշներից մեծապես ցածր է։ Եվ, որքան էլ տարօրինակ է, այս վիճակը չի հուզում գյուղատնտեսության մինիստրության, «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորման, հիշյալ շրջանների կուսակցական, սովետական և գյուղատնտեսական կազմակերպությունների ղեկավարներին։

Շատ կոլտնտեսություններում և պետական տնտեսություններում թույլ են տրվում պարարտանյութերի մեծ կորուստներ և նույնիսկ՝ փչացում։ Ժողովրդական վերահսկողության մարմինները հայտնաբերել են հանքային պարարտանյութերի ռացիոնալ օգտագործման նկատմամբ առանձին տնտեսությունների ղեկավարների անհոգատար վերաբերմունքի աղաղակող փաստեր։ Այսպես, օրինակ, Աշտարակի շրջանի Սասունիկի սովխոզում (դիրեկտոր՝ ընկ. Մ. Բաղդասարյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ՝ Ջ. Մարգարյան) 610 տոննա հանքային պարարտանյութերը «պահպանվում» էին պտղատու այգիներում, բաց երկնքի տակ։ Ցավոք, այսպիսի փաստերը եզակի չեն։ Մի շարք շրջաններում կոպիտ կերպով խախտվում են պարարտանյութերի օգտագործման ագրոքիմիական կանոնները և, որ գլխավորն է, դեռ չկա պատշաճ փոխհատուցում։

Քիմիացման ծավալները տարեցտարի կաճեն։ Դա հրամայաբար պահանջում է, որ գյուղատնտեսության մինիստրությունը, «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորումը, կուսակցության շրջկոմներն ու շրջգործկոմները կոնկրետ միջոցներ ձեռնարկեն հանքային և օրգանական պարարտանյութերի օգտագործման արդյունավետությունը խիստ բարձրացնելու համար, պարարտացման և սնուցման տեխնոլոգիական պրոցեսների հետագա կատարելագործման ու խստիվ պահպանման, աշխատանքների ամբողջ կոմպլեքսի մեքենայացման մակարդակի բարձրացման համար։

Ընկերնե՛ր։ ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը ընդգծեց անասնապահության հետագա զարգացման ժողովրդատնտեսական հսկայական նշանակությունը, նշեց, որ երկրի էկոնոմիկայի զարգացման ամբողջ ընթացքը, ժողովրդի



կյանքի նյութական մակարդակի անշեղ աճը առաջին պլանի վրա են դնում անասնապահության առավել արագ վերելքի խնդիրը։

Վերջին տարիներին, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հունվարյան և հուլիսյան պլենումներից հետո, հանրապետության տնտեսություններում որոշակի աշխատանք է կատարվել անասունների մթերատվությունը բարձրացնելու, մսի, կաթի և ձվի արտադրությունն ու մթերումները ավելացնելու ուղղությամբ։ 1975—1977 թվականներին մեկ կովի կաթնատվությունը ավելացավ 242 կիլոգրամով և 1977 թվականին կազմեց միջին հաշվով 1.901 կիլոգրամ։ Պետությանը վաճառված խոշոր եղջերավոր անասունի միջին քաշը ավելացավ 44 կիլոգրամով։ Ձեռք բերվածը պատշաճ կերպով գնահատելու համար ասենք, որ նախորդող տասը տարում կաթնատվությունն ավելացել էր 258 կիլոգրամով, պետությանը վաճառված խոշոր եղջերավոր անասունի միջին քաշը՝ 26 կիլոգրամով։ Վերջին երեք տարում հանրապետությունը հաստատուն կերպով կատարում է պետությանը անասնապահական մթերքներ վաճառելու պլանները։ Ընդ որում, այդ ժամանակամիջոցում կաթի մթերումներն ավելացել են 48,3 հազար տոննայով, մսինը՝ 11 հազար տոննայով և ձվինը՝ 69,4 միլիոն հատով։

Պատշաճ կերպով գնահատելով կուսակցության շատ շրջկոմների, շրջսովետների գործկոմների, հանրապետության գյուղատնտեսության մինիստրության և այլ կազմակերպությունների կատարած աշխատանքի արդյունքները, մենք միևնույն ժամանակ ամենայն որոշակիությամբ պետք է ասենք, որ այդ բնագավառում շատ ունենք չօգտագործված ռեզերվներ։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում իր զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևը արդարացիորեն նշեց, որ Անդրկովկասի և Միջին Ասիայի հանրապետություններում անասունների մթերատվությունը առաջվա պես մնում է ցածր, դանդաղ է լուծվում բնակչությանը սեփական արտադրության մսամթերքներով և կաթնամթերքներով ապահովելու խնդիրը։ Ընկեր Լ. Ի. Բրեժնևի այդ քննադատական դիտողությունը լիովին վերաբերում է նաև մեր հանրապետությանը։

Ելնելով դրանից, մենք պետք է գործնական միջոցներ ձեռնարկենք խիստ ավելացնելու սեփական արտադրության անասնապահական մթերքների ծավալը։

Այդ առաջադրանքի կատարման և անասնապահության արդյունավետության առավել բարձրացման համար մենք պետք է լուծենք հետևյալ խնդիրները՝

— ստեղծել կերի ամուր բազա, որն անասնապահությունն ապահովի լիարժեք կերով.

— ըստ ամենայնի բարելավել ցեղաբուծական գործի և հոտի վերարտադրության կազմակերպումը.

— անասնապահությունն ապահովել կոմպլեքսային մեքենայացված ժամանակակից շինություններով.

— պատրաստել բարձր որակավորում ունեցող անասնապահական կադրեր։

Անասնապահության հետագա զարգացումը և նրա արդյունավետության բարձրացումը ուղղակիորեն կապված են իրար փոխադարձաբար առնչված այդ կարևոր խնդիրների լուծման հետ։ Դրանցից մեկի նկատմամբ ուշադրության թուլացումը թույլ չի տա հասնել անասնապահության արագ վերելքի։ Այդ ծրագրի կատարումը պահանջում է փոխել մեր բոլորի վերաբերմունքը դեպի այս ճյուղը, առավել ուշադրություն նվիրել նրա հետագա զարգացման հարցերին։

Միայն տասներորդ հնգամյակի երկու տարում հանրապետությունում տարեկան, միջին հաշվով, կուտակվել է 44—50 տոկոսով ավելի կոշտ և հյութալի կեր, քան միջին հաշվով իններորդ հնգամյակի տարիներին։ Հենց դա մեզ թույլ տվեց նկատելիորեն մեծացնել անասնապահական մթերքների արտադրության և մթերումների ծավալները։ Դրա հետ մեկտեղ խոսել այդ գործում լիակատար բարեհաջողության մասին սխալ կլիներ, քանի որ հանրապետությունում կերարտադրության պրոբլեմը առայժմ դեռ չի ստացել արմատական լուծում և կոմպլեքսային զարգացում։

Մենք պետք է այսօր ուղղակի ասենք, որ կերի բազայի զարգացման գո-

յություն ունեցող մակարդակը դեռևս չի ապահովում անասնապահության հարաճուն պահանջմունքները, կասեցնում է մթերքների արտադրության աճի տեմպերը։

Կերի կուտակման առաջադրանքները հանրապետության շատ տնտեսություններ տարեցտարի չեն կատարում։ Այսպես, Ազիզբեկովի, Իջևանի, Մարտունու, Սևանի, Եղեգնաձորի, Թումանյանի և այլ շրջանների տնտեսությունների մեծ մասում բավականաչափ միջոցներ չեն ձեռնարկվում հանրային անասունները կոշտ և հյութալի կերով ապահովելու համար։ Հիշյալ շրջանների կուսակցական կոմիտեները անհրաժեշտ հետևություններ չեն արել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի այն պահանջից, որ յուրաքանչյուր տնտեսություն իրեն ապահովի սեփական արտադրության անհրաժեշտ քանակությամբ կերով։ Հարկ է նշել, որ մի շարք տեղերում նկատվում է միանգամայն սխալ միտում։ Առանձին տնտեսությունների և նույնիսկ շրջանների ղեկավարներ անհրաժեշտ գործնական միջոցներ չձեռնարկելով խոտի, սենաժի, սիլոսի, արմատապտուղների ավելացման համար, հոգ չտանելով դրանց որակը բարելավելու մասին, փորձում են գտնել կերի պրոբլեմի լուծման առավել «հեշտ» ուղի՝ կերի պակասը ծածկել համակցված կերով՝ հիմնականում պետական ռեսուրսներից։

Անասնապահական մթերքների արտադրության հետագա ավելացման համար մենք պետք է հասնենք այն բանին, որ անասունների մեկ պայմանական գլխի հաշվով ունենանք առնվազն 3.000—3.500 կերամիավոր, հաշվի առնելով գնովի և արոտային կերերը։ Իսկ դա նշանակում է, որ ամեն տարի հանրապետությունում անհրաժեշտ է կուտակել մոտավորապես 3 միլիոն տոննա միայն կոշտ և հյութալի կեր։ Դա շատ դժվարին, բայց միանգամայն ռեալ խնդիր է։ Ի՞նչ ուղիներով կարելի է լուծել այդ խնդիրները։ Նախ և առաջ անհրաժեշտ է կոնկրետ միջոցառումներ իրականացնել դաշտային կերարտադրությունը բարելավելու ուղղությամբ, հասնել այն բանին, որ կերային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից մաքսիմում չափով կերամիավոր ստացվի։ Դրան կարելի է հասնել դաշտային կերարտադրության կուլտուրան բարձրացնելու, բոլոր ցանովի կերային կուլտուրաների բերքատվությունը շեշտակի ավելացնելու, ցանքերի կառուցվածքը վերանայելու միջոցով, ընդարձակելով բազմամյա խոտաբույսերի, հատիկալոբազգի կուլտուրաների տարածությունները և լայնորեն արմատավորելով սոյայի, եգիպտացորենի և այլ կուլտուրաների բարձր բերքատու սորտերն ու հիբրիդները։

Կերի կայուն բազայի ստեղծման կարևոր ռեզերվ է բնական խոտհարքների և արոտավայրերի վիճակի, ինչպես նաև կերի կուտակման տեխնոլոգիայի բարելավումը և նրա որակի բարձրացումը։

Գյուղատնտեսության մինիստրությունը, «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորումը, կուսակցության շրջկոմները և շրջգործկոմները պետք է այսուհետև հատուկ ուշադրություն դարձնեն կերի որակի բարձրացմանը, կուտակման ընթացքում վերահսկեն ոչ միայն կերի քանակի, այլև որակի գործը, մշակեն և ներդնեն բարձրորակ կոշտ և հյութալի կերի կուտակման աշխատանքը բարոյապես ու նյութապես խրախուսելու միջոցառումների հստակ սիստեմ։

Առաջնահերթ կարևորություն ունեցող գործ է յուրաքանչյուր կոլտնտեսությունում և պետական տնտեսությունում հուսալի կերապահեստների, սենաժային և սիլոսային խրամատների, խոտանոցների և ծածկերի, հատուկ կերաբակերի կառուցումը։ Շրջանային կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինները պարտավոր են այդ աշխատանքները մշտական հսկողության տակ առնել, հասնել այնպիսի դրության, որ արդեն մոտակա տարիներին ապահովվի բոլոր կուտակվող կերի պահպանումը հատուկ կառուցվածքներում։ Դա թույլ կտա խիստ նվազեցնել դրանց կորուստները և բարձրացնել որակը։

Կուսակցական, սովետական և գյուղատնտեսական կազմակերպություններ պետք է բարձրացնեն բոլոր կադրերի պատասխանատվությունը անասնապահությունը կերով ապահովելու գործում։ Անասնապահության կերով ապահովվածության ցուցանիշը, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում, պետք է լինի գյուղատնտեսության մեջ կատարվող աշխատանքի գնահատության կարևորագույն չափանիշներից մեկը։ Սոցիալիստական մրցության արդյունքները ամփոփելիս և ղեկավարների ու մասնագետների խրախուսման միջոցներն ու չափերը որոշելիս մենք պետք է հատուկ ուշադրություն դարձնենք տնտեսությունների ապահովվածությանը սեփական կերով։



Անասնապահության մթերատվության, նրա արդյունավետության բարձրացման գործում կարևոր դեր է պատկանում համակցված կերերի արդյունաբերությանը։ Վերջին տարիներին հանրապետությունում մեծացել են թողարկվող խտացված կերերի ծավալները, սակայն այդ արտադրությունը դեռևս շատ թույլ է զարգացած։ Բավարար արտադրական կարողություններ չունենալու և արտադրության տեխնոլոգիան խախտվելու պատճառով համակցված կերերի արդյունաբերությունը դեռևս թողարկում է ցածրորակ, բոլոր բաղադրիչներով չհամակշռված խտացված կերեր, որը առաջ է բերում կոլտնտեսությունների, պետական տնտեսությունների, անասնապահական կոմպլեքսների և թռչնաֆաբրիկաների արդարացի դժգոհությունը։

Մթերումների մինիստրությունը պետք է վճռական միջոցներ ձեռնարկի՝ վերացնելու եղած թերությունները և հասնելու լիարժեք համակցված կերերի թողարկման։

Անասնապահության հետագա արագ զարգացման շահերը հրամայաբար պահանջում են խիստ ավելացնել համակցված կերերի արտադրության ծավալները։ Անհրաժեշտ է արագ տեմպերով մեծացնել արտադրական կարողությունները, կատարել համակցված կերերի գործարանների որոշակի մասնագիտացում, դրանցում կազմակերպել սպիտակուցավիտամինային և ամիդոկոնցենտրատային խառնուրդների, զանազան հավելուրդների արտադրությունը՝ տնտեսություններին վաճառելու համար։ Այդ հարցով պետք է հատուկ զբաղվի հանրապետության Մինիստրների խորհուրդը։

Գյուղատնտեսության մինիստրությունը, «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորումը, մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունը, անտառային տնտեսության պետական կոմիտեն, սննդարդյունաբերության մինիստրությունը պետք է, հաշվի առնելով անասնապահական մթերքների արտադրության ու մթերումների հետագա ավելացումը և անասունների նախատեսվող գլխաքանակը, յուրաքանչյուր տնտեսության համար մշակեն կերի բազայի զարգացման կազմակերպական-տեխնիկական պլաններ։

Ընկերնե՛ր։ Անասնապահության հարաճուն ինտենսիվացման, այն արդյունաբերական հիմքի վրա փոխադրելու պայմաններում, կերի կայուն բազայի հետ մեկտեղ, անչափ աճում է սելեկցիայի և հոտի վերարտադրության դերը։ Այդ գործում հատկապես վերջին տարիներին հանրապետությունում, իհարկե, քիչ բան չի արված, սակայն պետք է նշենք, որ գյուղատնտեսության մինիստրությունը, նրա գիտական հիմնարկներն ու տեղական գյուղատնտեսական մարմինները, կուսակցության առանձին շրջկոմներ ու շրջգործկոմներ առայժմ վատ են իրականացնում անասունների և թռչունների ցեղային և մթերատու հատկությունների կատարելագործման աշխատանքները։

Միայն ցեղաբուծական աշխատանքի անբավարար դրվածքով և հոտի վերարտադրության անբավարար կազմակերպմամբ է բացատրվում այն փաստը, որ կովերի կաթնատվությունը կազմում է 1.900 կիլոգրամ, մեկ ոչխարի բրդատվությունը՝ 2,3 կիլոգրամ, ածան հավերի ձվատվությունը՝ 142 ձվից ոչ ավելի։

Հանրապետության՝ կաթի արտադրությամբ զբաղվող 696 կոլտնտեսություններից ու պետական տնտեսություններից 258-ում, կամ տնտեսությունների 37 տոկոսում մեկ կովի միջին կաթնատվությունը կազմում է 900-ից մինչև 1.650 կիլոգրամ, տնտեսությունների միայն 3 տոկոսն են ստանում 3.000-ից մինչև 4.000 կիլոգրամ կաթ։ Եվ հանրապետության միայն 3 տնտեսություններ են ստանում 4.000 կիլոգրամից ավելի կաթ։

Դրությունը նույնն է նաև ոչխարների բրդատվության և հավերի ձվատվության ցուցանիշների հարցում։

Հանրապետության անասնապահության հետագա զարգացման շահերը

պահանջում են ցեղաբուծական աշխատանքների և գյուղատնտեսական կենդանիների արհեստական սերմնավորման գործի արմատական բարելավում։

Լուրջ թերություններ կան նաև հոտի վերարտադրության կազմակերպման մեջ։ 1977 թվականին հանրապետությունում կովերի ստերջությունը կազմեց 22 տոկոս, մաքիներինը՝ 19 տոկոս։ Դրա հետևանքով հանրապետության տնտեսությունները պակաս ստացան մոտավորապես 40 հազար հորթ և ավելի քան 150 հազար գառ։ Գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության շրջկոմները, շրջգործկոմները, կոլտնտեսությունների և պետական տնտեսությունների ղեկավարները պետք է ըստ յուրաքանչյուր տնտեսության, շրջանի, ինչպես և հանրապետության մշակեն և իրականացնեն ցեղաբուծական գործը և հոտի վերարտադրությունը բարելավելու կոնկրետ միջոցառումներ։

Անասնապահության բնագավառում մեր հանրապետության համար առաջնահերթ խնդիր է մսի արտադրության մաքսիմալ հնարավոր ավելացումը։ Այդ խնդրի հաջող լուծման համար անհրաժեշտ է լրիվ չափով օգտագործել մեր բոլոր ռեզերվներն ու հնարավորությունները, հասնել մսի բոլոր տեսակների արտադրության աճի։ Մսի արտադրությունը և պետությանը դրա վաճառքը ավելացնելու հիմնական աղբյուրը տավարի մսի արտադրության ավելացումն է։ 1977 թվականին պետությանը վաճառված մսի ընդհանուր հաշվեկշռի մեջ տավարի միսը կազմեց 48,4 տոկոս։ Դա պայմանավորվում է մի կողմից բնակչության՝ տավարի մսի նկատմամբ հարաճուն պահանջարկով, իսկ մյուս կողմից՝ մեր հանրապետության բնական պայմաններով։

Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո ընկած ժամանակաշրջանում հանրապետությունում պետությանը տավարի մսի վաճառքը ավելացել է գրեթե կրկնակի չափով և 1977 թվականին կազմեց 40,4 հազար տոննա։ Սակայն հանրապետության տնտեսություններում տավարի մսի արտադրությունն ավելացնելու ռեզերվները բացահայտորեն անբավարար են օգտագործվում։ Օրինակի համար ասենք, որ 1977 թվականին խոշոր եղջերավոր անասունների մեկ գլխի հաշվով հանրապետությունում արտադրվել է 82 կիլոգրամ միս, իսկ Լիտվական ՍՍՀ-ում՝ 158 կիլոգրամ։

Տավարի մսի արտադրությունն ավելացնելու նպատակով Հայաստանի կոմկուսի Կենտկոմը իր 1975 թվականի հունվարյան և հուլիսյան պլենումներում խնդիր դրեց հանրապետության բոլոր տնտեսություններում կազմակերպել խոշոր եղջերավոր անասունների մատղաշի ինտենսիվ բտում՝ յուրաքանչյուր անասունի միջին կենդանի քաշը հասցնելով 300 կիլոգրամի։

Իրականացնելով այս խնդիրը, հանրապետության կոլտնտեսություններն ու պետական տնտեսությունները նկատելի հաջողությունների հասան։ 1977 թվականին պետությանը վաճառվեց խոշոր եղջերավոր անասունների բարձր քաշային կոնդիցիաների հասցված 37 հազար գլուխ մատղաշներ՝ 317 կիլոգրամ միջին քաշով։ Դա ուրախալի է։ Սակայն ոչ բոլոր շրջաններն ու տնտեսություններն են կատարում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պահանջները։ Դատեցեք ինքներդ։ Չէ՞ որ անցյալ տարի հանրապետության կոլտնտեսություններն ու պետական տնտեսությունները պետությանը վաճառեցին խոշոր եղջերավոր անասունների 86 հազար գլուխ մատղաշ։ Դրանցից, ինչպես ասացինք, միայն 37 հազար գլուխը, կամ 50 տոկոսից պակաս, բտվել են ինտենսիվ մեթոդով։

Ինչպես տեսնում եք, մատղաշի զգալի մասը, ըստ էության, որպես մսացու հանձնվում է առանց ինտենսիվ բտման, ցածր քաշով և նվազ գիրությամբ։ 1977 թվականին Արթիկի շրջանի տնտեսությունների կողմից պետությանը վաճառված խոշոր եղջերավոր անասունների ընդհանուր քանակի 13 տոկոսը եղել է միջին գիրությունից ցածր, Գուգարքի շրջանում՝ 10 տոկոսը, Թումանյանի շրջանում՝ 11 տոկոսը։ Այս կապակցությամբ ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը քննադատեց տվյալ շրջանների կուսակցական, սովետական և գյուղատնտեսական կազմակերպությունների ղեկավարներին։

Է՛լ ավելի վատ են գործերը Եղվարդի խոշոր եղջերավոր անասունների բտման մասնագիտացված պետական կոմպլեքսում, որի կարողությունը նկատի է առնված տարեկան 10 հազար գլխի համար։ Կոմպլեքսը ըստ պլանի պե-



տությանը պետք է մատղաշ վաճառի առնվազն 360 կիլոգրամ միջին կենդանի քաշով։ Անասունների ինտենսիվ բտման կոմպլեքսը պետք է օրինակ դառնա հանրապետության մնացած տնտեսությունների համար։ Սակայն իրականում առայժմ այդպիսին չէ։ Ընթացիկ տարվա 6 ամսում կոմպլեքսը պետությանն է վաճառել 2.648 գլուխ մատղաշ, 302,2 կիլոգրամ միջին քաշով, որից 239 գլուխը՝ միջակից ցածր գիրությամբ։ Մինչդեռ նույն Նաիրիի շրջանի ուրիշ տնտեսություններում պետությանը հանձնված մսացու անասունների միջին քաշը կազմել է 347 կիլոգրամ, և բոլոր անասունները հանձնվել են միջակից բարձր ու միջակ գիրությամբ։

Կոմպլեքսի նորմալ գործունեությանը խանգարում են մի շարք չլուծված հարցեր, որոնց մասին խոսվեց դեռ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1977 թվականի ապրիլյան պլենումում։ Ըստ երևույթին, գյուղատնտեսության մինիստրության ղեկավարությունը և մասնավորապես մինիստրի տեղակալ ընկ. Վ. Սերոբյանը և «Հայանասնարդի» գլխավոր վարչության պետ ընկ. Ա. Էվոյանը պատշաճ հետևություններ չեն արել քննադատությունից։ Ժամանակն է, որ այդ ընկերները վերջ տան անպատասխանատվությանը և շատ կարճ ժամանակում ձեռնարկեն կոմպլեքսի նորմալ աշխատանքն ապահովող անհետաձգելի միջոցառումներ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը գյուղատնտեսության մինիստրությունից, կուսակցության շրջկոմներից, շրջգործկոմներից, տնտեսությունների ղեկավարներից պետք է պահանջի ամենուրեք արմատավորել անասունների աճեցման ինտենսիվ մեթոդը և ամբողջ մսացուն հանձնել միայն բտումից ու գիրացումից հետո, առնվազն 320—350 կիլոգրամ քաշով։ Դա ռեալ խնդիր է և մատչելի է մեր տնտեսությունների համար արդեն մոտակա ժամանակներում։

Տավարի մսի արտադրության պրոբլեմը արմատապես լուծելու համար անհրաժեշտ է հանրապետությունում աշխատանք կատարել մսատու անասնապահության զարգացման ուղղությամբ։

Մսի արտադրության ավելացման գործում պակաս կարևոր նշանակություն չունի խոզաբուծության ինտենսիվ զարգացումը։ 1965 թվականի մարտյան պլենումից հետո հանրապետությունում շատ բան է արվել կոլտնտեսություններում ու պետական տնտեսություններում և հատկապես խոզաբուծական խոշոր կոմպլեքսներում խոզի մսի արտադրության ավելացման գործում առաջադիմական տեխնոլոգիաներ արմատավորելու ուղղությամբ։ 1965 թվականի համեմատությամբ 1977 թվականին պետությանը խոզի մսի վաճառքը ավելացավ գրեթե 6 անգամ և կազմեց 18,7 հազար տոննա։ Մեր հնարավորությունների համեմատ այսուհետ ևս խոզաբուծությունը հետևողականորեն կփոխադրվի արդյունաբերական հիմքի վրա։

Սակայն, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում, զարգացնելով այդ ուղղությունը, սխալ կլիներ թուլացնել ուշադրությունը կոլտնտեսությունների և պետական տնտեսությունների ֆերմաներում խոզի մսի արտադրության նկատմամբ։ Նրանցից շատերը դրա համար լավ բազա ունեն։ Գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության շրջկոմներն ու շրջգործկոմները պետք է խելացիորեն օգտագործեն այդ տնտեսությունների հնարավորությունները ինչպես խոզի մսի արտադրությունն ավելացնելու, այնպես էլ բնակչությանը խոճկորներ վաճառելու նպատակով։

Վճռական նշանակություն ունի նաև մսատու թռչնաբուծության զարգացումը հանրապետությունում, որը մեծ հնարավորություններ է բացում մսի ռեսուրսները համալրելու համար։ Այդ բնագավառում քիչ բան չի արված։ Միայն անցյալ տարի պետությանը վաճառվեց 10,2 հազար տոննա թռչնի միս։ Սակայն հանրապետությունում թռչնաբուծության արտադրանքի ավելացման ասպարեզում լուրջ թերություններ կան։ Միայն 1977 թվականին «Հայթռչնարդի» ձեռնարկությունները պետությանը նախատեսվածից պակաս տվեցին 2,6 միլիոն ձու և 1.064 տոննա միս։ Ընթացիկ տարվա 6 ամսում ևս «Հայթռչնարդի» ձեռնարկությունները արդեն «հաջողացրել» են ձախողել պլանի կատարումը։ Դրա

հետևանքով պետությունը պակաս է ստացել 7,4 միլիոն ձու և մոտավորապես 165 տոննա միս։

Ըստ երևույթին, «Հայթռչնարդի» ղեկավարության համար (ընկ. Ս. Մելիքյան) պետական պլանի ձախողումը սովորություն է դառնում։

Հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է անդրադառնա այդ ճյուղում տիրող վիճակին և միջոցներ մշակի լիովին օգտագործելու թռչնաֆաբրիկաների արտադրական կարողությունները, արագացնելու նոր ֆաբրիկաների կառուցումը և վերակառուցելու եղածները։

Գյուղատնտեսության մինիստրությունը, շրջանային կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինները պետք է ավելի արդյունավետ օգտագործեն կոլտնտեսությունների և պետական տնտեսությունների թռչնաբուծական ֆերմաների հնարավորությունները։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը այնուհետև կանգ առավ ոչխարի մսի, կաթի և բրդի արտադրությունն ավելացնելու ռեզերվների ռացիոնալ օգտագործման հարցերի վրա։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը կաթի արտադրության հետագա ավելացման խնդիր դրեց։ Հանրապետությունում որոշակի աշխատանք է կատարվել կաթի արտադրությունը և պետությանը դրա վաճառքը ավելացնելու համար։ Բավական է ասել, որ 1971—1975 թվականների տարեկան միջին ծավալի համեմատությամբ 1977 թվականին կաթի մթերումները ավելացան 55,6 հազար տոննայով։ Սակայն կաթի արտադրության ավելացման հնարավորությունները բացահայտորեն անբավարար են օգտագործվում։

Կաթի արտադրության աճի մեծ ռեզերվ է կովերի գլխաքանակի ավելացումը և մթերատվության բարձրացումը։ Այս գործում մեզանում լուրջ թերություններ կան։ Բավական է ասել, որ վերջին տարիներին հանրապետության կոլտնտեսություններն ու պետական տնտեսությունները ամբողջությամբ վերցրած ոչ մի անգամ չեն կատարել կովերի գլխաքանակի պլանը։ Դրա հետ մեկտեղ առանձին տնտեսություններում անասունների մթերատվության աճը աննշան է։ Վերջին չորս տարում կովերի գլխաքանակը աճել է միայն 8.000-ով, կամ ընդամենը 5 տոկոսով։ Հարց է ծագում՝ գյուղատնտեսության մինիստրության և նրա շրջանային կազմակերպությունների, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարները ինչպե՞ս են մտադիր շեշտակիորեն ավելացնել կովերի գլխաքանակը, եթե 1977 թվականին խոտանվել է 33,6 հազար գլուխ կով, իսկ կովերի խումբն է մտցվել միայն 33,2 հազար գլուխ երինջ։ Ահա արդեն ավելի քան 10 տարի է, ինչ հանրապետության հանրային հոտում կովերի տեսակարար կշիռը մնում է գրեթե անփոփոխ՝ 32—33 տոկոս, իսկ Ղափանի, Անիի, Իջևանի, Արագածի և մի քանի այլ շրջանների շատ տնտեսություններում՝ դրանից էլ պակաս։ Եվ դա այն դեպքում, երբ տնտեսություններում հոտի համալրման մեծ հնարավորություններ կան։

Մոտ ապագայում, որպես առաջին էտապ, մեզ անհրաժեշտ է կովերի կաթնատվությունը հասցնել 2.500 կիլոգրամի, իսկ ավելի ուշ հեռանկարում՝ 3.000—3.500-ի և ավելիի։ Դրան հասնելու համար անհրաժեշտ է հետևողականորեն վերացնել եղած թերությունները, լրիվ չափով օգտագործել կաթի արտադրության ռեզերվները, գիտական հիմունքներով իրականացնել ցեղաբուծական աշխատանքը, ապահովել կովերի լիարժեք կերակրումը, արմատապես բարելավել հոտի վերարտադրությունը այն հաշվով, որ հոտում կովերի տեսակարար կշիռը հասցվի մինչև 40 և ավելի տոկոսի։ Ահա այն խնդիրները, որոնք կանգնած են կաթնային անասնապահության առջև։

Մի քանի խոսք կաթի ու կաթնամթերքների որակի մասին։ Այստեղ մենք շատ թերություններ ունենք։ Ահա արդեն մի քանի տարի է, ինչ հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում կաթի յուղայնությունը 3,6 տոկոսից չի անցնում, որի հետևանքով տնտեսությունները կորցնում են 7—8 հազար տոննա կաթ՝ բազիսային յուղայնության վերածած։ Անասնաբուծական-անասնաբուժական կանոնները և կովերի խնամքը, պահվածքի ու կթի կազմակերպման սանիտարական կանոնները կոպիտ կերպով խախտելու պատճառով



վաճառվում է ոչ քիչ քանակությամբ ոչ տեսակավոր կաթ։ Մյուս կողմից մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության առանձին ձեռնարկություններ խախտում են կաթի որակի որոշման, նրա ընդունման սահմանված կանոնները, երբեմն կաթնամթերքները թողարկում են սահմանված ստանդարտներից կատարվող շեղումներով, որը առաջ է բերում գնորդների արդարացի կշտամբանքները։

Գյուղատնտեսության, մթերումների, մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության մինիստրությունները պետք է արմատական միջոցներ ձեռնարկեն բարձրացնելու արտադրվող կաթի և կաթնամթերքների որակը։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը կանգ առավ հիմնականում տեղական ջրավազանները արդյունավետ օգտագործելու հաշվին ձկան արտադրությամբ ավելի կոնկրետ զբաղվելու հարցերի վրա։

Հանրապետության համապատասխան կազմակերպությունները պետք է կոնկրետ միջոցառումներ մշակեն ձկնաբուծությունը զարգացնելու և բնակչությանը թարմ ձկան վաճառքը ավելացնելու համար։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը հողագործության բնագավառում որպես կարևորագույն խնդիր առաջադրեց գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվության բարձրացման համար համաժողովրդական պայքարի կազմակերպումը և հացահատիկի, բանջարեղենի, կարտոֆիլի, մրգերի և մյուս մթերքների արտադրության անշեղ աճի ապահովումը։

Թույլ տվեք կանգ առնել այն հիմնական խնդիրների վրա, որ մեր առջև ծառացած են բուսաբուծության բնագավառում։

Վերջին տարիներին ինչպես երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում որոշակի աշխատանք է կատարվել հացահատիկի արտադրությունն ավելացնելու ուղղությամբ։ 1977 թվականին հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում արտադրվեց ռեկորդային քանակությամբ հացահատիկ՝ ավելի քան 306 հազար տոննա, ընդ որում, հեկտարի միջին բերքատվությունը կազմեց 18,9 ցենտներ։ Սակայն հացահատիկային տնտեսության անբավարար ինտենսիվացման հետևանքով հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը տնտեսությունների մեծ մասում մնում է ցածր։

Նախատեսվում է ապագայում հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը հանրապետությունում միջին հաշվով հասցնել հեկտարից 21—23 ցենտների։ Անհրաժեշտ է այդ խնդրի կատարմանը ի սպաս դնել ագրոտեխնիկական եղանակների ամբողջ զինանոցը և ավելի եռանդուն կերպով զբաղվել հողերի բերքատվության և հողագործության կուլտուրայի բարձրացման հարցերով։

Ընկերնե՛ր։ Խաղողագործությունն ու պտղաբուծությունը մեր հանրապետության գյուղատնտեսության կարևորագույն ճյուղերն են։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հունվարյան և հուլիսյան պլենումներից հետո կուսակցության շրջանային կոմիտեները, գյուղատնտեսության մինիստրությունը, շրջգործկոմները որոշակի աշխատանք կատարեցին խաղողի և պտղատու նոր այգիներ գցելու, բազմամյա տնկարկների նոսրությունը վերացնելու, դրանց մշակության ագրոտեխնիկական միջոցառումների կիրառման մակարդակը բարձրացնելու ուղղությամբ։ Այս ամենը թույլ տվեց 1977 թվականին աճեցնել լավ բերք, պետությանը վաճառել 217,4 հազար տոննա խաղող։ Տասներորդ հնգամյակի երկու տարում հանրապետությունում, անցյալ հնգամյակի տարեկան միջին ցուցանիշների համեմատությամբ, խաղողի միջին բերքատվությունը ավելացավ հեկտարից 14 ցենտներով, իսկ մթերումներինը՝ 42 հազար տոննայով։ Դրա հետ մեկտեղ խաղողագործության զարգացման ժամանակակից մակարդակը դեռևս չի բավարարում բնակչության և արդյունաբերության հարաճուն պահանջմունքները, իսկ խաղողի այգիների վիճակը շարունակում է մնալ անբավարար։ Ընթացիկ հնգամյակի առաջին երկու տարում հանրապետությունը պետությանը պակաս է վաճառել մոտավորապես 12 հազար տոննա խաղող։

Իջևանի, Եղեգնաձորի, Աշտարակի և այլ շրջանների մի շարք տնտեսություններում խաղողի այգիները բարձիթողի վիճակում են։ Հենց դրանով պետք է բացատրել, որ այդ շրջաններում խաղողի միջին բերքատվությունը կազմում

է հեկտարից ընդամենը 16—30 ցենտներ, կամ հանրապետության միջին ցուցանիշից 2-ից 4 անգամ պակաս։

Հանրապետությունում դեռևս անբավարար է իրականացվում խաղողի այգիների նորոգության վերացման գործը, որի հետևանքով հանրապետությունը ամեն տարի պակաս է հավաքում ավելի քան 40 հազար տոննա խաղող։ Ինչպես այգիների նորոգության, այնպես էլ բերքատվության տեսակետից դրությունը բավարար չէ նաև պտղաբուծության բնագավառում։ Այս ամենի մասին մեկ անգամ ևս ասվում է նրա համար, որ մենք պետք է խաղողագործության և պտղաբուծության բնագավառում դժվարին խնդիրներ լուծենք։

Նախատեսվում է ապագայում խաղողի համախառն արտադրության ծավալը հասցնել 340 հազար տոննայի, պտուղների համախառն արտադրությունը՝ 265 հազար տոննայի։

Այս բավական բարդ խնդիրը լուծելու համար մենք պետք է արդեն այսօր ունենանք դրա իրականացման պարզ ծրագիր։ Պետք է անհապաղ ձեռնամուխ լինենք խաղողագործության և պտղաբուծության զարգացման գլխավոր սխեմայի կազմմանը՝ նշելով շրջանները, տնտեսությունները, տարածությունները, արտադրության ծավալները, նոր տնկարկների տեսականին, խաղողի և պտղատու նվազ արդյունավետ այգիների վերակառուցումը և ճյուղերի կոմպլեքսային զարգացման այլ հարցեր։

Խաղողագործության և պտղաբուծության զարգացման հողային ռեսուրսների սահմանափակությունը մեզ թելադրում է հետագայում կայունացնել դրանց պտղաբերող տարածությունները օպտիմալ մակարդակով և խաղողի ու պտուղների արտադրության հետագա ավելացումը ապահովել հիմնականում բերքատվության բարձրացման հաշվին, բարձր բերքատու հեռանկարային սորտերի արմատավորման և ինտենսիվ այգիների գցման միջոցով։

Այդ ուղղությամբ արդեն որոշակի աշխատանք է իրականացվում առանձին շրջաններում։ Հատկապես հարկ է նշել Աշտարակի շրջանում պտղատու ինտենսիվ այգիների հիմնադրման աշխատանքի դրական փորձը։

Անհրաժեշտ է գործնական միջոցներ ձեռնարկել նաև բարձրացնելու բազմամյա տնկարկների մշակության մեքենայացման մակարդակը, արդյունավետ կիրառելու տնկարկների պաշտպանության միջոցները և օգտագործելու հերբիցիդները։ Մի խոսքով, ընկերներ, մենք պետք է այսուհետև ևս հետևողականորեն իրագործենք Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հուլիսյան պլենումի առաջ քաշած եռմիասնական խնդիրը՝ խաղողի և պտղատու ինտենսիվ այգիների հիմնում, նոսրության վերացում և ագրոտեխնիկայի մակարդակի բարձրացում։

Խաղողագործության և պտղաբուծության հետագա ինտենսիվացումը հիմնականում կախված է տնկանյութի արդյունաբերական արտադրության կազմակերպումից։ Գյուղատնտեսության մինիստրությունը արդեն որոշակի գործ է կատարել այս ուղղությամբ, սակայն դեռևս շատ տնտեսություններ իրենք են իրենց համար տնկանյութ աճեցնում, դրա հետևանքով էլ հիմնվում են ոչ մաքրասորտ այգիներ։

Խաղողի և պտղատու նոր այգիների գցման և գոյություն ունեցողների վերակառուցման տեմպերը, տնկարկների ինտենսիվ աճեցումը և դրանց ձևավորումը մեծապես կասեցվում է կիրառվող միջոցառումների նյութատեխնիկական անբավարար ապահովության և մասնավորապես երկաթ-բետոնե բարձրորակ հենակների սուր պակասի հետևանքով։

Այս հարցերի լուծումը պահանջում է հանրապետության կառավարության միջամտությունը։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը հատուկ ուշադրություն դարձրեց բանջարեղենի և կարտոֆիլի արտադրության ավելացման հարցերին։

Հանրապետության հողագործները հետևողականորեն բարձրացնում են այդ կարևոր ճյուղերի արդյունավետությունը։ Քիչ բան չի արվում բանջարեղենի և կարտոֆիլի արտադրության հետագա ավելացման, դրանք արդյունաբերական հիմքի վրա փոխադրելու համար։



1977 թվականին պետությանը վաճառվեց 54 հազար տոննայով ավելի բանջարեղեն, քան միջին հաշվով իններորդ հնգամյակում։ Դա ձեռք բերվեց հիմնականում բանջարանոցային կուլտուրաների բերքատվության բարձրացման հաշվին։ Դրա հետ մեկտեղ բանջարաբուծության մեջ, ինչպես և հանրապետության կարտոֆիլաբուծության մեջ, կան մի շարք լուրջ թերություններ և չլուծված պրոբլեմներ։

Մի շարք շրջանների, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարներ անբավարար են զբաղվում անհրաժեշտ քանակությամբ, պահանջված տեսականու և բարձր որակի բանջարեղենի ու կարտոֆիլի արտադրության կազմակերպմամբ։

Հանրապետության պետպլանը, գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության մի շարք շրջկոմներ և շրջգործկոմներ դեռևս լրիվ չեն իրագործում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1977 թվականի ապրիլյան պլենումի որոշումը՝ բանջարեղենի ու կարտոֆիլի արտադրությունը մասնագիտացնելու և համակենտրոնացնելու ուղղությամբ։

Հանրապետությունում դեռևս դանդաղ են արմատավորվում բանջարեղենի և կարտոֆիլի բարձր բերքատվության սորտերը, ցածր է դրանց մշակման մեքենայացման մակարդակը, քիմիացման աստիճանը, բանջարանոցային կուլտուրաներին և կարտոֆիլին քիչ են տրվում հանքային և օրգանական պարարտանյութեր, թույլ պայքար է մղվում բույսերի վնասատուների և հիվանդությունների դեմ։ Այդ ամենի հետևանքով բանջարեղենի և կարտոֆիլի բերքատվությունը մի շարք տնտեսություններում մնում է ցածր, արտադրանքի ապրանքային տեսքը և որակը հաճախ չեն բավարարում ներկայացվող պահանջներին, և այդ կուլտուրաների մշակությունը մնում է վնասաբեր։

Հանրապետության առևտրական և մթերող կազմակերպությունները, ինչպես նաև պլանային մարմինները վատ են ուսումնասիրում բնակչության պահանջարկը և լուրջ թերություններ թույլ տալիս բանջարեղենի և կարտոֆիլի մթերումների, վերամշակման և իրացման պլանավորման գործում։

Գյուղատնտեսության, մթերումների, առևտրի, սննդարդյունաբերության մինիստրությունների և Հայկոոպի վարչության մեղքով նսեմացված են կոնտրակտրացիոն պայմանագրերի դերը և դրանց կատարման համար պատասխանատվությունը ինչպես տնտեսությունների կողմից, այնպես էլ մթերող կազմակերպությունների կողմից։

Հիշյալ մինիստրությունները, կուսակցության առանձին շրջկոմներ և շրջգործկոմներ հաշտվում են բանջարեղենի և կարտոֆիլի արտադրության, մթերումների և առևտրի ասպարեզում առկա լուրջ թերությունների հետ, այն անպատասխանատու վերաբերմունքի հետ, որ կոլտնտեսությունների և սովխոզների, մթերող և առևտրական կազմակերպությունների առանձին ղեկավարներ ցուցաբերում են բնակչությանը բանջարեղենով և կարտոֆիլով ապահովելու գործի նկատմամբ։

Բանջարեղենի և կարտոֆիլի արտադրությունը պետք է անընդհատ ավելացվի՝ մինչև հանրապետության բնակչության հարաճուն պահանջմունքների լրիվ բավարարումը։ Բացի դրանից, բանջարեղենով պետք է ապահովվեն պահածոյի արդյունաբերության և թարմ վիճակում երկրի արդյունաբերական կենտրոններ ուղարկելու աճող պահանջմունքները։

Ձմռան ժամանակաշրջանում հանրապետության և երկրի արդյունաբերական կենտրոնների բնակչությանը թարմ բանջարեղենով ապահովելու համար նախատեսվում է ստեղծել ջերմատնային խոշոր կոմբինատներ։

Պետպլանը, գյուղատնտեսության, մթերումների, առևտրի, սննդարդյունաբերության մինիստրությունները, Հայկոոպի վարչությունը պետք է կոնկրետ միջոցներ ձեռնարկեն բանջարեղենի, կարտոֆիլի արտադրության հետագա ավելացման, դրանց մթերումները և առևտուրը բարելավելու, ընդհանուր միութենական ֆոնդի համար բանջարեղենի ու կարտոֆիլի սահմանված մատակարարումներն ապահովելու և այդ մթերքները բնակչությանն անխափան մատա-







կարարելու, բանջարեղենի և կարտոֆիլի պահեստարանների ցանցը ընդլայնելու ուղղությամբ։

Հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է քննարկի և լուծի նրանց բարձրացրած հարցերը, միաժամանակ ի կատարումն ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի պահանջի, մոտ ժամանակներս պետք է ուսումնասիրի և առաջարկություն մտցնի նոր կազմակերպական ձևեր՝ տնտհաշվարկային միավորումներ ստեղծելու մասին, որոնք ընդգրկեն բանջարեղենի և կարտոֆիլի արտադրության մասնագիտացված տնտեսությունները և դրանց պահպանման ու վերամշակման ձեռնարկությունները։

Մենք պետք է այսուհետև էլ հետևողականորեն աշխատենք՝ մեծացնելու տեխնիկական կուլտուրաների՝ ծխախոտի, շաքարի ճակնդեղի և խորդենու արտադրության ծավալները, բերքատվությունը՝ միշտ պես բարձրացնելով դրանց մշակության մեքենայացման մակարդակը։

Ընկերնե՛ր։

Հանրապետության գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման միջոցառումների կոմպլեքսում վճռական նշանակություն ունի հողային և ջրային ռեսուրսների արդյունավետ օգտագործումը։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության Մինիստրների խորհուրդը վերջին երկու տարում համգամանորեն ուսումնասիրեցին եղած ջրային ու հողային ռեսուրսների օգտագործման վիճակը։ Ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ գյուղատնտեսական մթերքների արտադրության աճի տեմպերը հանրապետությունում հիմնականում կասեցվում են հիշյալ ռեսուրսների ոչ լրիվ օգտագործման, ինչպես նաև ոռոգելի հողերի մելիորատիվ անբավարար վիճակի պատճառով։

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի նախաձեռնությամբ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ընդունեցին մեր հանրապետության համար պատմական որոշում՝ «Հայկական ՍՍՀ-ում ոռոգելի հողագործության հետագա զարգացման և նրա արդյունավետության բարձրացման մասին»։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը թույլ է տալիս լուծել հանրապետության գյուղատնտեսության զարգացման մի շարք հանգուցային հարցեր, ժամանակակից գիտության ու տեխնիկայի մակարդակով, ապատհոսքի կանոնավորման միջոցով, ջրի կուտակման ճանապարհով ջրի աղբյուրների հուսալի բազա ստեղծելու, ոռոգելի նոր հողեր շահագործման հանձնելու և ոռոգելի հողատարածության կուլտուրան բարձրացնելու միջոցով։

Ընդունված որոշման մեջ սահմանված են գյուղատնտեսության հետագա վերելքի խնդիրները և նախատեսված են դրանց կատարման նյութատեխնիկական նախադրյալները։

Թույլ տվեք, ընկերնե՛ր, պլենումի մասնակիցների անունից, հանրապետության բոլոր կոմունիստների, աշխատավորների անունից մեկ անգամ ևս ամենաջերմ շնորհակալությունը հայտնել ՍՄԿԿ Կենտկոմին, նրա քաղբյուրոյին, սովետական կառավարությանը և անձամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևին հայ ժողովրդի բարօրության և մեր հանրապետության ծաղկման նկատմամբ ցուցաբերած հոգատարության համար։

Ընկերնե՛ր։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը հանրապետության կուսակցական կազմակերպության, սովետական և տնտեսական մարմինների առջև դնում է մասշտաբային և բարդ խնդիրներ։ Մենք պետք է առավելագույն ջանքեր գործադրենք, ցուցաբերենք պետական պատշաճ մոտեցում, կազմակերպենք հստակ, հետևողական և փոխհամաձայնեցված աշխատանք որոշմամբ նախատեսված միջոցառումների ամբողջ կոմպլեքսը ժամանակին և որակով կատարելու համար։

Հանրապետության կուսակցական և սովետական մարմինների հատուկ ուշադրության առարկան պետք է լինի հողային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը, դրանց նկատմամբ հոգատար վերաբերմունքը, հողերի բերրիության



մշտական բարձրացումը, ինչպես այդ պահանջեց ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը։

Հանրապետությունում որոշ աշխատանք է կատարվել հողային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ուղղությամբ։ Հացահատիկային կուլտուրաների, շաքարի ճակնդեղի և պտուղների միջին բերքատվությունը 1977 թվականին, 1974 թվականի համեմատությամբ, ավելացավ 30—50 տոկոսով, բանջարեղենինը և խաղողինը՝ 5—12 տոկոսով։ Այդ նույն ժամանակ գյուղատնտեսական հողատարածությունների յուրաքանչյուր 100 հեկտարի հաշվով մսի արտադրությունը ավելացավ 21 տոկոսով, կաթինը՝ 17 տոկոսով։

Հանրապետության սակավահողության պայմաններում հողի վատ օգտագործման պատճառով զգալի տարածություններ հողագործության համար ոչ պիտանի էին դառնում և անցնում անօգտագործելի հողերի շարքը։ Անհրաժեշտ է նշել, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հունվարյան և հունիսյան պլենումների ձեռնարկած միջոցառումների շնորհիվ հանրապետության հողօգտագործման վիճակը որոշ չափով շտկվել է։ Եթե մինչև 1975 թվականը գյուղատնտեսական հողատեսքերը միջին հաշվով տարեկան կրճատվում էին 18 հազար հեկտարով, այդ թվում վարելահողերը՝ 3.000 հեկտարով, ապա 1977 թվականին հողատեսքերը կրճատվեցին միայն 1,2 հազար հեկտարով, իսկ վարելահողերի տարածությունը, ընդհակառակը, ավելացավ 1.200 հեկտարով։ Սակայն մենք ինքնաքննադատաբար պետք է նշենք, որ հանրապետությունում հողային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման վիճակը դեռևս մնում է անբավարար և լուրջ մտահոգություն է պատճառում։

Չի կարելի այս կապակցությամբ լուրջ պահանջներ չներկայացնել գյուղատնտեսության, մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրություններին, կուսակցության շրջանային կոմիտեներին, ժողովրդական դեպուտատների շրջսովետների գործադիր կոմիտեներին, կոլտնտեսություններին ու պետական տնտեսություններին։ Այդ կազմակերպությունների ղեկավարները, մասնագետները, աշխատողները իրավունք չունեն թույլ տալու անտնտեսվարության նման փաստեր։ Ժամանակն է նրանցից պատասխան պահանջել հողի ոչ ռացիոնալ օգտագործման համար։

Հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է ուսումնասիրի և վերջնականապես ճշտի գյուղատնտեսական շրջանառությունից դուրս մնացած, ինչպես նաև դուրս գրված հողատարածությունների չափը, մշակի դրանց հետագա օգտագործման գիտականորեն հիմնավորված միջոցառումներ։ Անհրաժեշտ է նաև մշակել հողերի տրանսֆորմացիայի (փոխակերպման) գլխավոր ծրագիրը, նշելով, թե որ հողատարածությունները, որ շրջաններում և տնտեսություններում, ինչպիսի ժամկետներում պետք է նվազ արդյունավետ կատեգորիաներից փոխակերպվեն ավելի որակյալ կատեգորիաների։

Արդարացի վրդովմունք է առաջացնում, որ դեռևս կան ոռոգելի հողերի՝ հանրապետության այդ հիրավի ոսկե ֆոնդի, ոչ ռացիոնալ օգտագործման փաստեր։

Ինչպես հայտնի է, հանրապետության ոռոգելի հողերի ֆոնդը կազմում է գյուղատնտեսական բոլոր հողատեսքերի միայն 21 տոկոսը, և այդ տարածությունից ամեն տարի արտադրվում է հողագործության ամբողջ համախառն արտադրանքի մոտավորապես 80 տոկոսը։ Եթե հաշվի առնենք, որ մելիորացված հողերում ներդրված են զգալի պետական միջոցներ և որ դրանց հետագա ընդլայնումը հանրապետության բնական պայմանների բերումով սահմանափակ է, հողերի մելիորատիվ ֆոնդի պահպանության և բարձր արդյունավետ օգտագործման հարցերը բացառիկ կարևոր ժողովրդատնտեսական նշանակություն են ստանում։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հուլիսյան պլենումում եղած քննադատությունից հետո գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցական, սովետական շատ կազմակերպություններ համապատասխան հետևություններ արեցին և մի շարք կազմակերպական-տնտեսական միջոցներ

ձեռնարկեցին ոռոգելի գյուղատնտեսական հողատարածությունների ինտենսիվ, առավել ռացիոնալ օգտագործման ուղղությամբ։

Դրա շնորհիվ 1976 և 1977 թվականներին հանրապետությունում չօգտագործված ոռոգելի հողերի տարածությունը կրճատվեց և կազմեց միջին հաշվով 5,4 հազար հեկտար՝ անցած իններորդ հնգամյակի տարիներին եղած 9 հազար հեկտարի դիմաց։ Ինչպես տեսնում եք, դրական տեղաշարժ կա այդ պրոբլեմի լուծման գործում, սակայն դա էլ մեզ չի կարող բավարարել։ Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ ոռոգելի հողագործության պրակտիկայից առհասարակ վերացվեն հողերը չօգտագործելու փաստերը։

Ընկերնե՛ր։ Ոչ պակաս կարևոր, կարելի է համարձակորեն ասել, կարևորագույն հարց է գյուղատնտեսական շրջանառության մեջ գտնվող հողերի, հատկապես ոռոգելի հողերի ոչ միայն լրիվ, այլև ինտենսիվ օգտագործումը։ Չէ՛ որ ոռոգելի հողերի լրիվ օգտագործումը ինքնանպատակ բան չէ։ Այն պետք է ուղեկցվի այդ հողերում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության անպայման բարձրացմամբ։ Այդ գործում, անկասկած, հանրապետությունում որոշակի հաջողություններ կան։ 1977 թվականին հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները ապահովեցին հեկտարից միջին հաշվով 66,4 ցենտներ խաղողի, 240 ցենտներ բանջարեղենի և 416 ցենտներ շաքարի ճակընդեղի ստացումը։ Առանձին շրջաններում ավելի բարձր բերք են ստանում։

Չնայած այդ հաջողություններին, ոռոգելի հողագործության ինտենսիվացման մակարդակը չի համապատասխանում ժամանակակից պահանջներին։ Ոչ մի կերպ չի կարելի համաձայնել այն դրությանը, երբ ոռոգելի հողերի յուրաքանչյուր հեկտարից ստացվում է 750—780 ռուբլի գումարի համախառն արտադրանք։ Ինչպես նաև չի կարելի նորմալ համարել, որ հանրապետությունում ոռոգելի հողերի յուրաքանչյուր հեկտարից ստացվում է 22—24 ցենտներ հացահատիկ, 100—126 ցենտներ կարտոֆիլ, 90—95 ցենտներ սիլոսային զանգված, 36—40 ցենտներ պտուղ։ Ավելին, առանձին շրջաններում բանն այնտեղ է հասնում, որ ջրովի հեկտարից դրանից էլ քիչ են ստանում։

Ոռոգելի հողերի օգտագործման նկատմամբ անպատասխանատու վերաբերմունքը մեծապես դրսևորվում է նաև այն բանում, որ մինչև օրս հանրապետության պետպլանը, գյուղատնտեսության մինիստրությունը և շրջգործկոմները պատշաճ ուշադրություն չեն նվիրում ոռոգելի հողերից արտադրանքի արտադրության պլանային ցուցանիշներին։ Այդ պլանները մեծ մասամբ կազմվում են ձևականորեն՝ անջրդի հողերի համեմատությամբ բերքատվության աննշան գերազանցումով։

Ոռոգելի հողերի յուրաքանչյուր հեկտարից առավելագույն արտադրանք ստանալու հիմնավորված, լարված պլանների բացակայությունը հասցնում է անպատասխանատվության, ոռոգելի ֆոնդի դիմազրկության։ Այնպիսի դրություն է ստեղծվել, որ հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում առանց պատշաճ ոռոգում կազմակերպելու և լրացուցիչ ծախսեր անելու կարելի է վերադիրով ապահովել անհիմն կերպով սահմանված ցածր պլանային ցուցանիշների կատարումը։ Իսկ մեր տնտեսությունների որոշ վայ ղեկավարներ այսպես են մտածում. քանի որ պլանները լարված չեն, կարելի է ոռոգելի հողատարածությունները չջրել։ Դրա հետևանքով մենք պակաս ենք ստանում 30—40 տոկոսի և ավելի չափով գյուղատնտեսական արտադրանք, քան դա առկա է ոռոգելի հեկտարի պոտենցիալ հնարավորություններում։

Իսկ հետևությունը մեկն է՝ ոռոգելի հողերի յուրաքանչյուր հեկտարը պետք է ապահովի առավելագույն փոխհատուցում։

Հարկավոր է օրինակելի կարգ ու կանոն հաստատել ոչ միայն ոռոգելի, այլև հանրապետության կոլտնտեսությունների ու սովխոզների բոլոր հողերի օգտագործման հարցում։ Չի կարելի հաշտվել այն բանի հետ, որ մի շարք տնտեսություններում ոչ քիչ քանակությամբ հողեր չեն մշակվում, հաճախ դրանց բարելավման ոչ մեծ աշխատանքներ կատարելու փոխարեն առանձին հողամասեր հեշտությամբ լքվում, դառնում են ամայի տարածություններ։

Մեծ անհանգստություն է առաջացնում անտարբերությունը հակաէրոզիոն



պայքար կազմակերպելու գործում։ Տնտեսական այդ կարևոր պրոբլեմի լուծման հարցում տիրող անբավարար վիճակի մասին նշվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1977 թվականի ապրիլյան պլենումում, սակայն, ինչպես ցույց են տալիս 1977 թվականի հակաէրոզիոն աշխատանքների տարեկան պլանի կատարման արդյունքները, մի շարք շրջաններում՝ Արագածի, Եղեգնաձորի, Սիսիանի, Նոյեմբերյանի և այլն, դեռևս պատշաճ հետևություններ չեն արել և գործնական միջոցներ չեն ձեռնարկել ժամանակին ու որակով իրագործելու հակաէրոզիոն միջոցառումների կոմպլեքսը։

Հողերը հողմնային և հատկապես ջրային էրոզիայից կոմպլեքսային ձևով պաշտպանելու միջոցառումները բացառիկ կարևոր նշանակություն ունեն հանրապետության սակավահողության պայմաններում։ Այդ պրոբլեմի լուծման հրատապությունը թելադրվում է գյուղատնտեսական հողատեսքերի տագնապալի վիճակով։

Վերջերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության Մինիստրների խորհուրդը ընդունեցին հատուկ որոշում, որի մեջ մշակվել են հակաէրոզիոն և կուլտուր-տեխնիկական աշխատանքների ասպարեզում եղած թերությունները վերացնելու և այդ գործի կազմակերպումը բարելավելու միջոցառումներ։ Համապատասխան մինիստրություններն ու գերատեսչությունները, շրջանային կուսակցական, սովետական և գյուղատնտեսական կազմակերպությունները պետք է ապահովեն մշակված միջոցառումների լրիվ կատարումը։ Դրա համար առկա են բոլոր անհրաժեշտ պայմանները։

Հողային ռեսուրսների նկատմամբ անհոգատար վերաբերմունքի վկայություն է նաև այն, որ հանրապետությունում խրոնիկական կերպով չեն կատարվում հողերի վերակուլտիվացման պլանները։ Հողին ոչ ոքի կողմից չհաշվարկված մեծ վնաս է հասցվում, երբ դաշտերում անխտեմ կերպով գցվում են զուգահեռ ընթացող էլեկտրահաղորդման գծեր և այլ կոմունիկացիաներ։

Նման վիճակը անհանդուրժելի է, և Կենտկոմը ամենայն խստությամբ պատասխան կպահանջի հողատարածությունների պահպանման ծրագրի անշեղ կատարման համար։

Մենք բոլորս պետք է հանրապետության յուրաքանչյուր բնակչի մեջ հոգատար և պատշաճ վերաբերմունք դաստիարակենք հողի նկատմամբ, հիրավի, համաժողովրդական արշավ ծավալենք այն բանի համար, որ հողի յուրաքանչյուր հեկտարը, յուրաքանչյուր կտորը արտադրողաբար օգտագործվի՝ ի շահ աշխատավորների կյանքի բարելավման։

Ընկերնե՛ր։

Ինչպես ձեզ հայտնի է, գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու խոշոր ռեզերվ է Արարատյան հարթավայրի աղուտների և գերխոնավ հողերի ներգրավումը գյուղատնտեսական ակտիվ շրջանառության մեջ։ Հիշյալ պրոբլեմի լրիվ լուծումը հնարավորություն կստեղծի, նախնական հաշվարկներով, հանրապետության գյուղատնտեսության համախառն արտադրանքը ավելացնել 12—15 տոկոսով։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ նախատեսվում է մոտակա ժամանակամիջոցում բարելավել 23 հազար հեկտար գերխոնավ հողերի մելիորատիվ վիճակը և աղուտների քիմիական մելիորացում կատարել 12 հազար հեկտար տարածության վրա։

Մինիստրների խորհուրդը պետք է ապահովի այդ նպատակների համար հատկացվող նյութատեխնիկական միջոցների բարձրարդյունավետ օգտագործումն ու պահպանումը, Արարատյան հարթավայրի աղուտների յուրացման և գերխոնավ հողերի մելիորատիվ բարելավման զգալի արագացումը։

Ոռոգելի հողատարածության հետագա զարգացման և արդյունավետության բարձրացման շահերը հրամայաբար պահանջում են կոմպլեքսային մոտեցում ջրատնտեսական օբյեկտների նախագծման, շինարարության և դրանց ենթակա հողերի գյուղատնտեսական յուրացման ժամանակ։ Սակայն մինչև վերջին ժամանակներս մեղանում անտեսվում էին հողերի կոմպլեքսային յուրացման սկզբունքները։ Կուլտուր-տեխնիկական միջոցառումների համար հանրապե-

տության հատկացված կապիտալ ներդրումները իրացվել են ոչ լրիվ և ցածր արդյունավետությամբ, որի հետևանքով այդ աշխատանքները խիստ ետ են մնացել ջրաշինարարական աշխատանքներից։ Այդ պատճառով էլ շահագործման հանձնված տասնյակ հազարավոր հեկտարի ոռոգելի հողեր ներկայումս գյուղատնտեսության մեջ չեն օգտագործվում, որովհետև իր ժամանակին այդ հողերում չեն կատարվել կուլտուր-տեխնիկական աշխատանքներ և հիմնական համահարթում։

Պետք է նշել, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հուլիսյան պլենումից հետո այդ ասպարեզում դրությունը փոքր ինչ շտկվեց, հատկապես՝ նախագծման գործում։ Սակայն կուլտուր-տեխնիկական աշխատանքների կատարման գոյություն ունեցող տեմպերը և դրանց որակը դարձյալ անբավարար են։

Կուլտուր-տեխնիկական աշխատանքների կատարման գոյություն ունեցող տեմպերը բացահայտորեն անբավարար են նաև Ախուրյանի ջրամբարին ենթակա հողերի գյուղատնտեսական յուրացման համար, մինչդեռ ջրամբարը պետք է շահագործման հանձնվի 1980 թվականին։

Եվս մի էական թերության մասին։ Տարօրինակ է, բայց փաստ, որ մեր ջրատնտեսական ու գյուղատնտեսական մարմինները չեն ըմբռնել այնպիսի մի տարրական ճշմարտություն, որ ոռոգման ցանցերի շինարարությունը պետք է կատարել կուլտուր-տեխնիկական աշխատանքների ավարտումից և տարածությունների հիմնական համահարթումից հետո և ոչ թե հակառակը։ Ինչի՞ է հասցրել դա։

Թալինի, Արգնի—Շամիրամի և Որոտանի ոռոգման սիստեմներին ենթակա հողերում, մոտավորապես 35 հազար հեկտար ընդհանուր տարածությամբ, իր ժամանակին ոռոգման ցանցը կառուցվել է առանց կուլտուր-տեխնիկական միջոցառումների անցկացման և առանց հիմնական համահարթման։ Ավելի վաղ կառուցված ցանցերի զգալի մասը շարքից դուրս է գալիս, որոնց վերականգնման ու վերակառուցման համար լրացուցիչ նյութական և աշխատանքային միջոցներ կպահանջվեն։ Ահա ձեզ անպատասխանատվության և անտնտեսվարության ևս մի աղաղակող փաստ։

Այս ամենի մասին մենք մեկ անգամ ևս ասում ենք, որովհետև ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ հանրապետության առջև խիստ բարդ ու մասշտաբային խնդիրներ են դրված, ուստի մենք իրավունք չունենք կրկնել հին սխալները, հակառակ դեպքում կվիժեցնենք մեր հանրապետության համար այնքան կենսականորեն կարևոր ծրագրի իրականացումը։

Որոշմամբ նախատեսված է մոտակա տարիներին կուլտուր-տեխնիկական աշխատանքներ կատարել 220 հազար հեկտարի վրա, որոնցից 35 հազար հեկտարը՝ նոր ոռոգվող հողերում, և հիմնական համահարթում կատարել 45 հազար հեկտար տարածության վրա։

Հաշվի առնելով այդ միջոցառումների կարևորությունը, մենք պետք է գործն այնպես կազմակերպենք, որ կուլտուր-տեխնիկական աշխատանքների տեմպերը առաջ անցնեն ջրատնտեսական շինարարության տեմպերից։ Դրա համար մելիորացիայի և ջրային տնտեսության, գյուղատնտեսության մինիստրությունները, «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորումը, «Հայգլխջրշին» գլխավոր վարչությունը, շրջանային կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինները պետք է անհապաղ մշակեն և իրագործեն կուլտուր-տեխնիկական աշխատանքները ըստ ամենայնի բարելավելու, անհրաժեշտ արտադրական բազա ստեղծելու, բոլոր տեխնիկական միջոցները առավելագույն չափով օգտագործելու կազմակերպական-տեխնիկական միջոցառումներ։

Հանրապետության Մինիստրների խորհուրդը ՍՍՀՄ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության հետ համատեղ պետք է կարճ ժամկետում լուծի «Հայգլխջրշինի» սիստեմում մասնագիտացված ստորաբաժանում կազմակերպելու հարցը, որն զբաղվի բացառապես նոր ոռոգվող հողերում կուլտուր-տեխնիկական և հիմնական համահարթման հարցերով, նկատի ունենալով, որ



մի կողմից՝ «Հայգյուղտեխնիկայի» հանրապետական միավորման սիստեմում եղած կարողությունները բացահայտորեն անբավարար են այդպիսի ծավալի աշխատանքներ կատարելու համար, մյուս կողմից էլ՝ «Հայգյուղտեխնիկայի» հանրապետական միավորումը մեծապես ծանրաբեռնված է կոլտնտեսությունների և սովխոզների գոյություն ունեցող ոռոգելի հողերում համանման աշխատանքների կատարումով։

Մելիորացված հողերի կոմպլեքսային յուրացումը աներևակայելի է, առանց նոր կազմակերպվող սովխոզներում արտադրական և ոչ արտադրական օբյեկտները ժամանակին նախագծելու, կառուցելու և գործարկելու։ Մինչդեռ գյուղատնտեսության և գյուղական շինարարության մինիստրությունները բացահայտորեն անբավարար են զբաղվել այդ կարևոր հարցով։ Ազատի ջրամբարին ենթակա ոռոգելի հողերում երկու նոր սովխոզների շինարարությունը և գոյություն ունեցող հինգ սովխոզների ընդլայնումը դեռ չի սկսվել, իսկ Արգնի—Շամիրամի ջրանցքին ենթակա ոռոգելի հողերում սովխոզների շինարարությունը խիստ ձգձգվում է։ Որոշմամբ այդ վիճակը շտկվում է։ «Հայգլխջրշինին» հանձնարարվում է իրագործել պատվիրատուի ֆունկցիաներ ոռոգման սիստեմին ենթակա հողերում և Արարատյան հարթավայրի աղուտներում նոր կազմակերպված սովխոզներում արտադրական և ոչ արտադրական օբյեկտների կառուցման համար, իսկ գյուղատնտեսության մինիստրությանը՝ պատվիրատուի ֆունկցիաներ Ազատի ջրամբարին ենթակա սովխոզների շինարարության ասպարեզում։

Հիշյալ սովխոզների շինարարությունը դրված է գյուղական շինարարության մինիստրության վրա։ Հանրապետության համապատասխան մինիստրություններին ու գերատեսչություններին հանձնարարված է հիշյալ նոր կազմակերպվող սովխոզներում լուծել ջրամատակարարման, կոյուղու, էներգամատակարարման, ճանապարհային շինարարության, հեռախոսային կապի անցկացման, ռադիոֆիկացման, աշխատանքային ռեսուրսների հայթայթման հարցերը։

Հանրապետության գյուղատնտեսության և մեր էկոնոմիկայի մյուս ճյուղերի հետագա զարգացումը աներևակայելի է, առանց լայն մասշտաբների ջրատնտեսական շինարարության անցկացման և սահմանափակ ջրային ռեսուրսների արդյունավետ օգտագործման։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ լուծվում են մեր հանրապետության համար կենսականորեն կարևոր հենց այդ հարցերը։

Հայտնի է, որ ներկայումս, ամռան շրջանում, հանրապետության տարածքով հոսող բոլոր գետերի ջուրը լրիվ օգտագործվում է։ Ուստի առանց գետերի ազատ հոսքը լրիվ կարգավորելու անհնարին է անհրաժեշտ քանակությամբ ջուր կուտակել ոռոգելի հողագործության հետագա զարգացման համար։ Հանրապետությունում ոռոգման նպատակներով մինչև օրս կառուցվել է ընդամենը մի քանի ջրամբար՝ 6-ից մինչև 100 միլիոն խորանարդ մետր տարողությամբ և 40 փոքր ջրամբար՝ լեռնային շրջաններում։ Հանրապետության գետերի հոսքի կարգավորմամբ ջրամբարներում կուտակվող ջրի ընդհանուր ծավալը ներկայումս կազմում է մոտավորապես 340 միլիոն խորանարդ մետր կամ հնարավոր կարգավորվող ընդհանուր ծավալի 14,8 տոկոսը։ Ուստի խոշոր ջրամբարների հետագա լայն շինարարությունը բացառիկ կարևոր խնդիր է։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ նախատեսվում է մինչև 1990 թվականը հանրապետությունում կառուցել 16 ջրամբար՝ մոտավորապես մեկ միլիարդ խորանարդ մետր ընդհանուր ծավալով։ Դա մեր հանրապետության էկոնոմիկայի համար, իրավի, պատմական նշանակություն ունի։ Ինչպես տեսնում եք, ընկերնե՛ր, մենք մոտակա երկու հնգամյակում պետք է կառուցենք ջրամբարներ՝ մոտ երեք անգամ ավելի մեծ ծավալով, քան բոլոր նախորդ տարիներին կամ, պատկերավոր ասած, մենք պետք է ստեղծենք ծավալներ տարեկան այնքան ջուր կուտակելու համար, որքան Սևանա լճից ոռոգման նպատակներով բաց ենք թողնում երկուսուկես տարում։

Այդ խոշոր ծրագրի իրականացումը պահանջում է մելիորացիայի և ջրային տնտեսության, գյուղատնտեսության մինիստրություններից, համապատաս-

խան նախագծային և գիտահետազոտական ինստիտուտներից, «Հայգլխջրշինից», «Հայհիդրոէներգաշինից» և մնացած շինարարական ու մոնտաժային կազմակերպություններից արմատապես բարելավել ջրամբարների նախագծային-հետախուզական աշխատանքների և շինարարության որակը, շեշտակի բարձրացնել շահագործման կուլտուրան։ Դրա անհրաժեշտությունը թելադրվում է ինչպես այն հանգամանքով, որ ջրամբարների մեծ մասի շինարարությունը իրականացվելու է բացառիկ ծանր երկրաբանական և ռելիեֆային պայմաններում, այնպես էլ նախորդ ջրամբարների կառուցման ու շահագործման ժամանակ թույլ տված սխալներից քաղած դասը փորձից։

Ջրամբարներում մեծ են ջրի կորուստները ֆիլտրացման հետևանքով, անհրաժեշտ պայմաններ չեն ստեղծված արդյունավետ շահագործման համար, ցածր է այդ ջրամբարների օգտակար գործողության գործակիցը։ Դրանց մի մասը տեխնիկապես վատ վիճակում է։ Նման դրությունը հիմնականում հետևանք է նախագծային-հետախուզական և շինարարական աշխատանքների իրականացման ցածր որակի և անբարեխիղճ շահագործման։

Հանրապետությունում գոյություն ունեցող ոռոգիչ սիստեմների զգալի մասը չի համապատասխանում ժամանակակից տեխնիկական պահանջներին։ Ներտնտեսային ջրանցքների մոտավորապես 67 տոկոսը և միջտնտեսային ջրանցքների 32 տոկոսը առայժմ դեռ չունեն հակաֆիլտրացիոն ծածկույթներ։ Հանրապետության սակավաջրության պայմաններում դեռևս ցածր է ոռոգման սիստեմների օգտակար գործողության գործակիցը։

Միայն Արարատյան հարթավայրի գոտում ոռոգիչ ցանցի, հատկապես ներտնտեսային ցանցի բարձիթողի վիճակի հետևանքով, որտեղ ընդհանուր մակերեսից երեսպատված է միայն 10 տոկոսը, ոռոգման ջրի գերածախսը ամբողջությամբ վերցրած 1977 թվականին կազմել է ավելի քան 200 միլիոն խորանարդ մետր։ Արարատյան հարթավայրի ջրատնտեսական օբյեկտներում ոռոգման ջրի մեծ կորուստները, որոնք առաջանում են գերազանցապես ոռոգման ցանցից ֆիլտրացիոն զգալի պրոցեսների և ջրման տեխնոլոգիայի կոպիտ խախտումների պատճառով, հատկապես գիշերային ջրման ժամանակ, հանգեցնում են երկու էական անցանկալի հետևանքների։ Նախ, ամեն տարի ապարդյուն կորչում է Սևանա լճից ելնող ջրի որոշակի հոսքը, այն դեպքում, երբ լճի պահպանման պրոբլեմը հրատապ նշանակություն է ստացել, և երկրորդ, ոռոգման ջրերի ինտենսիվ ֆիլտրացիոն կորուստների հետևանքով գրունտային ջրերի մակարդակի բարձրացումը ճահճացնում և աղակալում է շրջակա գյուղատնտեսական հողատարածությունները, որոնց վերականգնման համար պահանջվում են լրացուցիչ միջոցներ։

Ի՞նչ է ստացվում. մի կողմից պետությունը զգալի միջոցներ է ծախսում գերխոնավ հողերի չորացման վրա, մյուս կողմից՝ մեր առանձին տնտեսությունների վայ-ղեկավարներ՝ շրջկոմների, շրջգործկոմների, գյուղատնտեսության, մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունների լուռ համաձայնությամբ նպաստում են գրունտային ջրերի մակարդակի բարձրացմանը։ Այդպիսի անտնտեսվար, կարելի է ասել, հանցավոր վերաբերմունքին հարկավոր է վճռականորեն վերջ տալ։

Կուսակցության շրջանային կոմիտեները, շրջանային սովետների գործկոմները պետք է բարձրացնեն գյուղատնտեսական և ջրատնտեսական կազմակերպությունների, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարների պատասխանատվությունը ոռոգման ջրի խնայողաբար և ռացիոնալ օգտագործման համար, բոլոր տնտեսություններում ապահովելով շուրջօրյա արդյունավետ ոռոգումը։

Հանրապետության սահմանափակ ջրային ռեսուրսների հետագա ռացիոնալ և արդյունավետ օգտագործման միջոցառումների սիստեմում բացառիկ կարևոր դեր է պատկանում ոռոգման ռեալ պահանջմունքների սահմանմանը։

Ագրոմելիորատիվ պահանջների համաձայն, յուրաքանչյուր գյուղատնտեսական կուլտուրայի համար ոռոգման նորմաներն ու պարբերականությունը հարկավոր է սահմանել մանրակրկիտ փորձառական հետազոտությունների հի-



ման վրա՝ հաշվի առնելով բույսերի կենսաբանական առանձնահատկությունները զարգացման յուրաքանչյուր փուլում, դրանց մշակության ագրոտեխնիկան, յուրաքանչյուր առանձին ոռոգելի զանգվածի հողային և կլիմայական առանձնահատկությունները։ Դա, անկասկած, աշխատատար և բարդ գործ է, բայց այլ մոտեցում չկա, և այդ պահանջներից ամեն մի շեղում չի տա հիմնավորված, ռեալ լուծումներ։

Ցավոք, մեր հանրապետությունում այդ պրոբլեմի լուծման գործում էական բացեր կան։ Մինչև օրս հանրապետությունում չկան գիտական տվյալներ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության մասին՝ ելնելով ջրապահովվածությունից, հաշվի առնելով մնացած գործոնները հողային տարբեր պայմաններում։

Ջրելու ավելի վաղ մշակված նորմաներն ու ժամկետները բացահայտորեն հնացել են։

Ելնելով ստեղծված դրությունից, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը մելիորացիայի և ջրային տնտեսության, գյուղատնտեսության մինիստրություններից պետք է պահանջի վճռական միջոցներ ձեռնարկել նշված թերությունները վերացնելու համար։

Անհրաժեշտ է համապատասխան գիտահետազոտական ինստիտուտների աշխատանքների պլանների մեջ մտցնել փորձնական բազային տնտեսություններում գյուղատնտեսական կուլտուրաների ոռոգման օպտիմալ ռեժիմները և ջրի սպառումից բերքատվության կախումը որոշելու առաջադրանքները։ Բոլոր դաշտային ուսումնասիրությունները կատարել միասնական մեթոդիկայի և ծրագրի հիման վրա, պահպանելով աշխատանքների խիստ կոորդինացումը։

Հանրապետության մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունը առաջիկայում պետք է ստեղծի ջրային հաշվեկշռի կայան՝ համապատասխան շրջանային լաբորատորիաներով, որոնք ելնելով հողերի խոնավության ռեալ աստիճաններից, անհրաժեշտ հանձնարարականներ պետք է տան ջրօգտագործող տնտեսություններին ոռոգման ժամկետների և նորմաների վերաբերյալ։

Հանրապետության ոռոգելի հողագործության արդյունավետության բարձրացմանը նպաստող հիմնական հարցերից մեկը ոռոգման առաջավոր եղանակների և ջրելու տեխնիկայի արմատավորումն է։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը պետք է պահանջի «Հայգլխջրշինից», գյուղատնտեսության մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրություններից, նրանց տեղական կազմակերպություններից, վճռական միջոցներ ձեռնարկել իրականացնելու ոռոգման սիստեմների վերակառուցման և դրանց տեխնիկական վիճակի բարելավման աշխատանքների ծրագիրը, արմատավորել ջրելու առաջավոր մեթոդները, ինչպես նաև լուծել գործող ջրամբարների վերակառուցման հետ կապված հարցերի կոմպլեքսը՝ նպատակ ունենալով բարելավել դրանց տեխնիկական վիճակը և կրճատել ջրի ֆիլտրացիոն կորուստները։

Կոլտնտեսությունների և պետական տնտեսությունների ղեկավարների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների խնդիրն է կոնկրետ և հետևողական աշխատանք տանել հանուն ջրային ռեսուրսների արդյունավետ օգտագործման, որպեսզի լրիվ և իր նպատակին օգտագործվի յուրաքանչյուր խորանարդ մետր ջուրը։

Հանրապետությունում ոռոգելի հողագործության արդյունավետության հետագա բարձրացման ասպարեզում առաջադրված խնդիրների իրականացման գործում վճռական դերը տրվում է կադրերին։ Խնդիրն այն է, որպեսզի կոնկրետ միջոցներ ձեռնարկվեն յուրաքանչյուր տնտեսություն ապահովելու համար ջրվորների, անձրևող մեքենաների և ագրեգատների մեքենավարների բարձրորակ մասնագիտական կադրերով։

Մակերեսային ջրերի օգտագործման հետ մեկտեղ ոռոգելի հողագործության և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի հետագա զարգացման գործում կարևոր նշանակություն ունի հանրապետության ստորերկրյա ջրերի օգ-

տագործումը, որոնց նշանակալի մասը ներկայումս չի օգտագործվում հատկապես Արարատյան հարթավայրում։

Մինչև օրս չի մշակվել հանրապետության ժողովրդական տնտեսության համար ստորերկրյա ջրերի և հատկապես Արարատյան հարթավայրի ու Սևանի ավազանի ստորերկրյա ջրերի օգտագործման ընդհանուր սխեման։ Այս կարևոր գործին անհրաժեշտ է ձեռնամուխ լինել։

Հանրապետության պետպլանը, համապատասխան մինիստրությունների և գերատեսչությունների հետ համատեղ, մոտ ժամանակներս պետք է որոշի և ճշգրտի ստորերկրյա ջրերի շահագործական պաշարները, մշակի ժողովրդական տնտեսության կարիքների համար դրանց օգտագործման ընդհանուր սխեմա, մշակված սխեմային համապատասխան ապահովի նախագծային-նախահաշվային փաստաթղթերի կազմումը և գյուղատնտեսական արտադրության ու ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի կարիքների համար ստորերկրյա ջրերի առավելագույն օգտագործման աշխատանքների կատարումը։

Միաժամանակ անհրաժեշտ է ձեռնարկել անհետաձգելի միջոցներ գոյություն ունեցող խորքային հորերի շահագործումը բարելավելու, ջուրն արդյունավետ օգտագործելու նպատակով։

Ընկերնե՛ր։ ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը հատուկ ուշադրություն դարձրեց կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկայի հետագա ամրապնդման հարցի վրա և մշակեց անհրաժեշտ միջոցառումներ, որոնք նպատակամղված են կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկայի ամրապնդմանը և նոր հնարավորություններ են ստեղծում գյուղատնտեսական արտադրության առավել արագ աճի համար։ Այդ միջոցառումներին դուք լավ ծանոթ եք։

Լիովին հավանություն տալով ՍՄԿԿ Կենտկոմի նախատեսած միջոցառումներին, ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը նշում է, որ հանրապետական և շրջանային կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինները, կոլտնտեսությունների և սովխոզների կուսկազմակերպություններն ու ղեկավարները պարտավոր են ավելի եռանդուն կերպով զբաղվել կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկայի ամրապնդման հարցերով, բոլոր միջոցները ձեռնարկել՝ վերացնելու այդ գործում եղած թերությունները։ Իսկ թերություններ, ցավոք, մեզանում դեռևս շատ կան։

Գյուղատնտեսության մինիստրությունը, նրա շրջանային կազմակերպությունները, կուսակցության շրջկոմները և շրջգործկոմները առայժմ անբավարար են զբաղվում սովխոզների և կոլտնտեսությունների էկոնոմիկայի ամրապնդման, նրանց կողմից նյութական և ֆինանսական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման, գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման հարցերով։ Հանրապետության ոչ բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում է հաստատակամ պայքար մղվում խնայողության և տնտեսման համար, արտադրանքի ինքնարժեքի իջեցման համար, շռայլության և անտնտեսվարության փաստերի դեմ։

Հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է ավելի խստապահանջ լինի համապատասխան մինիստրությունների նկատմամբ, որպեսզի ժամանակին մշակվեն և հետևողականորեն իրականացվեն ետ մնացող կոլտնտեսությունների և վնասով աշխատող սովխոզների էկոնոմիկայի ամրապնդման միջոցառումներ։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը ընդգծեց միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրությունը մասնագիտացնելու և համակենտրոնացնելու՝ կուսակցության վերցրած կուրսի բացառիկ կարևոր նշանակությունը նրա հետագա վերելքի համար։

1977 թվականի ապրիլին Հայաստանի կոմկուսի Կենտկոմը իր պլենումում քննարկեց «Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը է՛լ ավելի զարգացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի



որոշման կատարման միջոցառումների հարցը և ընդունեց համապատասխան որոշում։

Պլենումից հետո շրջաններում որոշ դրական աշխատանք կատարվել է։ Ներկայումս հանրապետությունում արդեն գործում են 56 միջտնտեսային ձեռնարկություններ։ Դրա հետ մեկտեղ Գուգարքի, Նոյեմբերյանի, Թալինի, Ամասիայի, Մասիսի, Մեղրու, Մարտունու և շատ ուրիշ շրջանների կուսակցական, սովետական և գյուղատնտեսական կազմակերպություններ պատշաճ հետևություններ չեն արել և ձեռնամուխ չեն եղել միջտնտեսային միավորումների կազմակերպմանը։ Որոշ շրջաններում անասնապահական միջտնտեսային ձեռնարկություններ ստեղծելիս թույլ է տրվել անասունների գլխաքանակի և նույնիսկ արտադրության մակարդակի կրճատում շրջանի մասշտաբով ամբողջությամբ վերցրած։

Միջտնտեսային կոոպերացումը մեծ, բարդ օբյեկտիվ պրոցես է։ Այդ աշխատանքը պետք է կատարվի պլանաչափորեն, գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման մյուս միջոցառումների հետ փոխշաղկապված։

Հանրապետության պետպլանը, գյուղատնտեսության մինիստրությունը պետք է ապահովեն միջտնտեսային կոոպերացման և արդյունաբերական ինտեգրացման ամբողջ աշխատանքի հստակ կոորդինացումը։ Միաժամանակ հանրապետության միջտնտեսային ձեռնարկությունների աշխատանքի կուտակված փորձի մանրակրկիտ ընդհանրացման հիման վրա անհրաժեշտ է որոշել կազմակերպական այն ձևերը, որոնք կիրառելի լինեն գյուղատնտեսության տարբեր ճյուղերի և ուղղությունների համար և հանձնարարել այնպիսի միջտնտեսային ձեռնարկությունների ու միավորումների ստեղծումը, որոնք նվազագույն ծախսումներով տալիս են առավելագույն արտադրանք։

Ընկերնե՛ր։ ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը նշեց, որ գյուղատնտեսության հետագա զարգացման խնդիրների լուծման գործում մեծ ավանդ պետք է մուծի գիտությունը։

Սակայն, գյուղատնտեսական գիտության զարգացումը մեր հանրապետությունում դեռևս չի համապատասխանում գյուղատնտեսական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու աճած պահանջներին։ Պատշաճ զարգացում չեն ստացել արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման, միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման, կառավարման կազմակերպման ձևերի կատարելագործման ասպարեզում կատարվող և այլ հետազոտությունները։

Ետ են մնում գյուղատնտեսական կուլտուրաների նոր, բարձր մեքենայացված ինտենսիվ արտադրության պահանջներին համապատասխանող սորտերի, հատկապես խաղողի դիմացկուն տեխնիկական և սեղանի սորտերի, հացահատիկային կուլտուրաների գարնանացան և աշնանացան բարձր բերքատու, չպառկող և հիվանդությունների հանդեպ կայուն սորտերի, սպիտակուցի բարձր պարունակությամբ հատիկալոբազգի և կերային կուլտուրաների, ինչպես նաև ոռոգելի հողերի համար նախատեսված գյուղատնտեսական կուլտուրաների ինտենսիվ սորտերի ստացման աշխատանքները։ Դանդաղ են մշակվում անասնապահությունը արդյունաբերական հիմքի վրա փոխադրելու, նրա արդյունավետությունը բարձրացնելու, կերի կայուն բազա ստեղծելու պրոբլեմները։ Բավարար չափով չեն կատարվում բարձր արտադրողական գյուղատնտեսական տեխնիկայի ու սարքավորումների, հողագործության և անասնապահության մթերքների արտադրության առավել արդյունավետ տեխնոլոգիաների ստեղծման աշխատանքները։

Թերություններ կան գիտահետազոտական աշխատանքների պլանավորման և կոորդինացման գործում։

Մենք պետք է բարելավենք գյուղատնտեսական գիտական հիմնարկների և բարձրագույն ուսումնական հաստատությունների գիտական ստորաբաժանումների գործունեության ղեկավարումը, բարձրացնենք գիտության դերը գյուղատնտեսության հիմնական խնդրի՝ հողագործական և անասնապահական մթերքների արտադրության հետագա աճն ու մեծ կայունությունը, գյուղատնտեսական

արտադրության արդյունավետության և արտադրանքի որակի ըստ ամենայնի բարձրացումն ապահովելու խնդրի լուծման գործում։

Հետազոտությունների կոմպլեքսայնությունն ապահովելու, գիտության նվաճումները արտադրության մեջ արմատավորելու, արտադրության հետ գիտության ինտեգրացումը ապահովելու նպատակով մենք պետք է շարունակենք միջոցառումներ իրագործել գիտաարտադրական միավորումներ կազմակերպելու ուղղությամբ։

Ընկերնե՛ր։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը հատուկ ուշադրություն հրավիրեց գյուղական շինարարության ընդլայնման և նրա մակարդակի բարձրացման վրա, որպես կուսակցության ագրարային քաղաքականության կարևորագույն բաղկացուցիչ մասի, որպես գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի հետագա ամրապնդման և գյուղի սոցիալական պրոբլեմների լուծման հիմնական օղակի։ Մարտյան պլենումից հետո անցած տարիներին հանրապետությունում որոշակի աշխատանք է կատարվել պետական խոշոր անասնապահական կոմպլեքսների, թռչնաֆաբրիկաների, ջերմատնային կոմբինատների շինարարության ասպարեզում։ Կառուցվել են նաև սոցիալական, կուլտուրական և կենցաղային նշանակության օբյեկտներ, արտադրական ու ոչ արտադրական ուրիշ շինություններ։ Միայն տասներորդ հնգամյակի անցած երկուսուկես տարում հանրապետության գյուղատնտեսության մեջ բոլոր աղբյուրների գծով իրացվել են մոտավորապես հինգ հարյուր միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ։

Սակայն գյուղական շինարարության գործում դեռևս գոյություն ունեն շատ թերություններ։ Այդ նպատակի համար հատկացվող կապիտալ ներդրումները ամեն տարի լրիվ չեն իրացվում, թույլ են տրվում դրանց փոշիացման փաստեր, մեծ թվով օբյեկտների գործարկման ժամկետները վիժեցվում են, որով զգալի վնաս է հասցվում գյուղատնտեսության զարգացմանը։ Բավական է ասել, որ ութերորդ հնգամյակում գյուղատնտեսության մինիստրության օբյեկտների գծով հիմնական ֆոնդերի գործարկման պլանը կատարվեց 70 տոկոսով, իններորդ հնգամյակում՝ 59 տոկոսով, ընթացիկ հնգամյակի առաջին երկու տարում՝ 60 տոկոսով։ Գյուղատնտեսության բնագավառում ընթացիկ հնգամյակի երկու տարում չեն իրացվել 67 միլիոն ռուբլու պետական կապիտալ ներդրումներ, որոնցից 47 միլիոն ռուբլին՝ գյուղատնտեսության մինիստրության գծով։ Դրա հետևանքով հանրապետության գյուղատնտեսությունը պակաս է ստացել 10 հազար գլուխ խոշոր եղջերավոր անասունների համար նախատեսված շինություններ, 6 հազար գլխի համար նախատեսված ոչխարանոցներ և արտադրական ուրիշ շատ օբյեկտներ։

Կոլտնտեսություններում և սովխոզներում անբավարար է կատարվում նաև բնակարանների, դպրոցների, մանկապարտեզների և մանկամսուրների, այլ կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարությունը։

Գյուղական շինարարության մինիստրությունը (ընկ. Գ. Թադևոսյան) ամբողջությամբ վերցրած կատարելով կապալային աշխատանքների պլանները, սիստեմատիկաբար թերակատարում է գյուղում կատարվող շինարարության ծրագիրը։

Գյուղական շինարարության պլանները է՛լ ավելի վատ է կատարում արդյունաբերական շինարարության մինիստրությունը (ընկ. Կ. Հակոբյան), որը գյուղատնտեսության մինիստրության կառույցների գծով տասներորդ հնգամյակի երկուսուկես տարվա պլանները կատարել է 77,6 տոկոսով, այդ թվում կոմունալ օբյեկտներինը՝ 67,4, կուլտուրայի օբյեկտներինը՝ 62 տոկոսով։

Գյուղատնտեսության մինիստրությունը, նրա շրջանային կազմակերպությունները դեռևս վատ են կատարում պատվիրատուի պարտականությունները։

Սահմանված ժամկետներում շինարարներին չեն ապահովում նախագծային-նախահաշվային փաստաթղթերով և կառուցապատման համար իրացված հողամասերով։ Թույլ են տրվում տեխնոլոգիական սարքավորումների առաքման ժամկետների խախտման բազմաթիվ փաստեր։

Գյուղատնտեսության մինիստրությունը և նրա համապատասխան ստորա-



բաժանումները նույնպես անպատասխանատվություն են ցուցաբերում դեպի գյուղական շինարարությունը։ Այլապես ինչո՞վ բացատրել, որ տնտեսական եղանակով իրականացվող շինարարության պլանները տարեցտարի չեն կատարվում։

Գյուղական օբյեկտների շինարարությանը անբավարար ուշադրություն են դարձնում նաև «Հայգյուղտեխնիկան», հանրապետության՝ «Գլխմոնտաժհատուկշինը», ավտոմոբիլային ճանապարհների շինարարության և շահագործման մինիստրությունը, «Գլխգազը» և այլ կազմակերպություններ, որոնք խրոնիկաբար ձգձգում են համեմատաբար ոչ մեծ ծավալի աշխատանքների կատարումը։

Այսօր ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի պահանջներից բխող մեր գլխավոր հետևությունը և խնդիրը հետևյալն է՝ արմատապես բարելավել գյուղական շինարարության գործը՝ հատկացված կապիտալ ներդրումները իրացնել լրիվ և արդյունավետ, մշտապես հիշելով այն մասին, որ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը որոշել է հաստատ կիրառել գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումները սիստեմատիկաբար ավելացնելու կուսակցության մշակած գիծը։

Հանրապետությունում բավարար ուշադրություն չի նվիրվում գյուղական բնակչության միջոցների ներգրավմամբ անհատական և կոոպերատիվ շինարարության զարգացմանը։ Անհատական շինարարությունը հաճախ կատարվում է առանց հատակագծման, պատշաճ ուշադրություն չի դարձվում գյուղերի բարեկարգմանը։ Լուրջ թերություններ կան նաև գյուղատնտեսական օբյեկտների և շինությունների նախագծման գործում։ Դրանց նախագծերում անբավարար են կիրառվում ժամանակակից առաջադիմական լուծումներն ու կոնստրուկցիաները։

Անհրաժեշտ է, որ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը հատկապես քննության առնի գյուղում կատարվող շինարարության վիճակի հարցը և անհրաժեշտ միջոցներ ձեռնարկի՝ մեծացնելու նրա ինդուստրիալ բազայի կարողությունները, ինչպես նաև ապահովի ամբողջությամբ վերցրած գյուղատնտեսության մեջ կապիտալ շինարարության հնգամյա ծրագրի կատարումը։

Ինչպես գիտեք, վերջերս ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը մի ամբողջ շարք որոշումներ ընդունեցին գյուղատնտեսության հետագա զարգացման և դրա հետ կապված ժողովրդական տնտեսության ճյուղերի կարևորագույն հարցերի վերաբերյալ։ Որոշումներին միահամուռ հավանություն տվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը պետք է մշակեն և իրականացնեն այդ որոշումներով մեր հանրապետության առջև դրված խնդիրների կատարումն ապահովող միջոցառումներ։ Կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, համապատասխան մինիստրություններն ու գերատեսչությունները ամբողջ կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը պետք է այնպես կազմակերպեն, որ այդ որոշումները հասցնեն յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր աշխատավորի, ամենուրեք ստեղծեն դրանց կատարումն ապահովելու բարենպաստ պայմաններ։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումների լույսի ներքո ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը նշեց հանրապետության գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման, ընթացիկ տարվա պլանները և ամբողջությամբ վերցրած տասներորդ հնգամյակի պլանները կատարելու և գերակատարելու գործում հանրապետության կուսակցական կազմակերպության հիմնական խնդիրները։

Հարկ է նշել, որ դաշտերի ու ֆերմաների աշխատավորները, կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ, որոշակի հաջողությունների են հասել գյուղատնտեսական արտադրության զարգացման գործում։ Կուսակցական-կազմակերպչական աշխատանքի խելացի դրվածքի, կոլտնտեսականների և սովխոզների աշխատողների անձնվեր ջանքերի շնորհիվ, պլանային և պետական կարգապահության բարձրացման, արտադրության ներքին ռեզերվների մոբիլիզացման շնորհիվ հանրապետությունը հաջողությամբ կատարեց ընթացիկ հնգամյակի առաջին երկու տարիների պետական պլանների և գյու-

ղատնտեսական մթերքների հիմնական տեսակների արտադրության ու մթերման առաջադրանքները։

Այնուամենայնիվ, չնայած հողագործական և անասնապահական մթերքների արտադրության ձեռք բերած աճին, հանրապետության մի շարք շրջաններ չեն կատարել հնգամյակի առաջին և երկրորդ տարիների պլանը՝ ինչպես համախառն արտադրանքի ընդհանուր ծավալի, այնպես էլ նրա մի քանի տեսակների գծով։

Աշտարակի, Իջևանի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Նոյեմբերյանի շրջանների կոլտնտեսություններն ու պետական տնտեսությունները չեն կատարել պետությանը խաղողի վաճառքի, Ղափանի, Մարտունու և Սիսիանի շրջանների տնտեսությունները՝ պտղի վաճառքի, Ապարանի, Արթիկի, Գորիսի, Թումանյանի և Մարտունու շրջանների կոլտնտեսություններն ու սովխոզները՝ բանջարեղենի վաճառքի հնգամյակի առաջին երկու տարվա պլանը։

Մի շարք շրջաններում վիժեցվել է պետությանը անասնապահական մթերքներ վաճառելու հնգամյակի առաջին երկու տարիների պլանների կատարումը։ Այսպես, Շահումյանի և Մարտունու շրջանները չեն կատարել պետությանը մսի վաճառքի, իսկ Ազիզբեկովի շրջանը՝ ձու վաճառելու երկու տարվա պլանը։

Կուսակցական, սովետական, գյուղատնտեսական կազմակերպությունների, կոլտնտեսությունների և պետական տնտեսությունների ղեկավարները և կուսկազմակերպությունները պետք է քննադատաբար վերլուծեն գյուղատնտեսական արտադրության ասպարեզում տիրող իրավիճակը, անեն անհրաժեշտ հետևություններ, կոնկրետ միջոցներ ձեռնարկեն լրացնելու արտադրանքի այն պակասը, որը գոյացել է հնգամյակի առաջին երկու տարում պլանների թերակատարման հետևանքով։ Դրա համար շրջաններում կան բոլոր հնարավորությունները։

Առաջին կիսամյակի աշխատանքի արդյունքները ցույց են տալիս, որ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում լավ մեկնարկ են վերցրել։ Հանրապետության արդյունաբերությունը զգալիորեն գերակատարել է արտադրանքի արտադրության և իրացման պլանները, ապահովելով արտադրության ծավալների 8,2 տոկոսի աճ, որը պլանից զգալիորեն ավելի է։

Իրենց խնդիրները հաջողությամբ են կատարել նաև կապի, առևտրի և կենցաղային սպասարկման աշխատողները։ Որոշ դրական տեղաշարժեր կան կապիտալ շինարարության մեջ։ Ծանրակշիռ հաջողությունների են հասել հանրապետության գիտության և կուլտուրայի աշխատողները։

Պետք է ասել նաև, որ որոշ հաջողություններ ունեն հանրապետության գյուղատնտեսության աշխատողները։ Կոլտնտեսություններում և պետական տնտեսություններում զգալիորեն ավելացել է անասունների և թռչունների գլխաքանակը։ Կատարվել է պետությանը միս, կաթ և բուրդ վաճառելու կիսամյա պլանը։ Հանրապետության տնտեսությունները կազմակերպված անցկացրին գարնան դաշտային աշխատանքները։

Ընթացիկ տարում գյուղի աշխատավորների առջև մեծ ու պատասխանատու խնդիրներ են կանգնած։ Դրանց հաջող կատարումը մեծապես կախված կլինի այն բանից, թե կուսակցական կոմիտեններն ու սկզբնական կուսկազմակերպությունները ինչպես կկարողանան կոլտնտեսականներին և սովխոզների աշխատողներին, գյուղատնտեսության մասնագետներին պայքարի մոբիլիզացնել դաշտերի բերքատվությունը և անասնապահության մթերատվությունը բարձրացնելու, աճեցված բերքը անկորուստ հավաքելու և ամբարելու, յուրաքանչյուր տնտեսության ռեզերվները ավելի լավ օգտագործելու համար։

Շրջանային կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինների աշխատանքում կան ոչ քիչ թերություններ։ Որոշ շրջաններում դանդաղել են կաթի, ձվի և բրդի արտադրությունն ավելացնելու տեմպերը, նվազել է անասնապահության մթերատվությունը, կրճատվել են պետությանը վաճառվող անասնապահական մթերքների ծավալները։

Ընկերնե՛ր։ Հայտնի է, որ ընթացիկ տարին գյուղատնտեսության համար չափից դուրս դժվարին և անբարենպաստ տարի է։ Կլիմայական խիստ ան-



նպաստ եղանակները զգալիորեն բարդացրին գյուղատնտեսական աշխատանքների կատարումը։ Հսկայական վնաս հասցվեց գյուղատնտեսական կուլտուրաներին և անասնապահությանը։ Այդ դժվարությունները հրամայաբար պահանջում են ըստ ամենայնի ուժեղացնել կազմակերպվածությունն ու հստակությունը աշխատանքում, ապահովել բարձր կարգապահություն, դաշտերի ու ֆերմաների բոլոր աշխատավորների ջանքերի մոբիլիզացում, գյուղական բոլոր կուսակցական կազմակերպությունների, սովետական, արհմիութենական և կոմերիտական մարմինների աշխատանքի առավել ակտիվացում։

Այժմ մեր բոլոր ջանքերը պետք է կենտրոնացվեն մի բանի վրա՝ օրինակելիորեն կատարել ցանքերի խնամքը, կազմակերպել արդյունավետ պայքար գյուղատնտեսական կուլտուրաների հիվանդությունների դեմ։

Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն համապատասխան մինիստրությունների և գերատեսչությունների, կուսակցական, սովետական, գյուղատնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, կոլտնտեսությունների, սովխոզների, մթերող և տրանսպորտային կազմակերպությունների, վերամշակող արդյունաբերական ձեռնարկությունների առաջնահերթ խնդիրն է համարում բերքահավաքի հաջող անցկացումը սեղմ ժամկետներում և անկորուստ, հողագործական մթերքների գնումների պլանի կատարումն ու գերակատարումը, դրանց փոխադրման, մշակման և պահպանության ապահովումը, բարձրորակ կոշտ և հյութալի կերի կուտակումների զգալի ավելացումը, յուրաքանչյուր տնտեսությունում կերի ապահովագրական պաշարների ստեղծումը, անասունների ձմեռումը հաջողությամբ անցկացնելու նախապատրաստության կազմակերպումը, ինչպես նաև կոլտնտեսություններին և սովխոզներին բերքահավաքի տեխնիկա, տրակտորներ, ավտոմոբիլներ, պահեստամասեր, նավթամթերքներ և բերքահավաքի ու կերի կուտակման համար անհրաժեշտ նյութատեխնիկական այլ միջոցներ մատակարարելու առաջադրանքները սահմանված ժամկետներում կատարելը։

Անցած տարիների պրակտիկան ցույց է տալիս, որ մեծ դժվարություններ են առաջ գալիս բանջարեղենի կոնվեյերը կազմակերպելու ասպարեզում։ Գործի հաջողությունը մեծապես որոշում են բանջարեղենի ժամանակին հավաքումն ու փոխադրումը։

Հաշվարկված է, որ միայն դրա հաշվին կարելի է խույս տալ բանջարեղենի այդ կորուստներից, որոնք ամեն տարի կազմում են 15—20 տոկոս։ Հետևաբար, խոսքը վերաբերում է այն բանին, որ հիմնական մթերողները, սննդարդյունաբերության, առևտրի մինիստրության ձեռնարկությունները, «Հայկոոպի» վարչությունը, մատակարարող և տրանսպորտային կազմակերպությունների հետ համատեղ, կազմեն բանջարեղենի ընդունման և այն սպառողներին առաքելու հստակ գրաֆիկ և անշեղորեն կիրառեն այն։

Մեծ լարվածություն է ստեղծվել նաև կերի կուտակման գործում։ Բայց դա չպետք է առիթ ծառայի կերի կուտակման սահմանված առաջադրանքները չկատարելու համար և բնավ չի նշանակում, թե մենք չունենք նախատեսված քանակի և որակի կոշտ ու հյութալի կեր կուտակելու ռեզերվներ և հնարավորություններ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը գտնում է, որ ոչ միայն բոլոր շրջանները, այլև բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզները, միջտնտեսային ձեռնարկությունները պետք է անպայման կատարեն կերի կուտակման սահմանված առաջադրանքները։

Անհրաժեշտ է այս տարի մաքսիմալ չափով ընդլայնել խողանացան կուլտուրաների ցանքատարածությունները և ապահովել բազմամյա խոտաբույսերի լրացուցիչ հար։

Գյուղատնտեսության, սննդարդյունաբերության մինիստրությունները, անտառային տնտեսության պետական կոմիտեն, «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորումը պետք է անհրաժեշտ միջոցներ ձեռնարկեն ժամկետից շուտ գործարկելու կերի արտադրամասերը, վիտամինային խոտալյուրի պատ-

րասաման ագրեգատները, ապահովելու կերի արտադրության և կերի պատրաստման ամբողջ տեխնիկայի անխափան աշխատանքը։

Առաջին կիսամյակի արդյունքները վկայում են, որ անասնապահական մթերքների արտադրության ու մթերումների աճի տեմպերը շատ ցածր են և ընավ մեզ չեն բավարարում։ Ոչ բոլոր շրջաններն ու տնտեսություններն են լավ օգտագործում անասնապահության վերելքի իրենց ունեցած ռեզերվները։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը կոլտնտեսությունների և սովխոզների աշխատավորներին, կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին կոչ է անում 1978 թվականը նշանավորել հանրապետության գյուղատնտեսության բոլոր ճյուղերի զարգացման նոր նվաճումներով։ Դա կլինի մեր առաջին կոնկրետ պատասխանը երկրի գյուղատնտեսության ըստ ամենայնի զարգացման նկատմամբ կուսակցության հոգատարությանը։

Ընկերնե՛ր։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը նշեց, որ գյուղատնտեսության հետագա վերելքի համար մղվող պայքարի նոր փուլին պետք է համապատասխանեն նաև կուսակցական ղեկավարման բարձր մակարդակը, մասսաների շրջանում կատարվող կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի առավել կատարյալ մեթոդները։

Հանրապետության գյուղատնտեսության զարգացման ասպարեզում վերջին տարիներին ձեռք բերված հաջողությունները մեծապես պայմանավորված են նրանով, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և շրջանային կուսակցական կազմակերպությունները հաստատակամորեն կենսագործում են կուսակցության ագրարային քաղաքականությունը, մշտապես կատարելագործում գյուղում կատարվող կազմակերպական-կուսակցական և մասսայական-քաղաքական աշխատանքը։

Նրանց ամբողջ գործունեության վրա բարերար ազդեցություն գործեցին ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, որոնք մեծապես նպաստեցին տնտեսական-քաղաքական խնդիրների հաջող լուծման գործում կուսակցական կազմակերպությունների աշխատանքի նշանակալի ակտիվացմանը, կոմունիստների, բոլոր աշխատավորների մոբիլիզացմանը, հանրապետության գյուղատնտեսության վերելքի՝ կուսակցության նախատեսած միջոցառումների կատարման համար։

Կենսագործելով ՍՄԿԿ XXV համագումարի, Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի որոշումները, ՍՄԿԿ Կենտկոմի և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումների որոշումները, կուսակցության շրջկոմները և սկզբնական կուսկազմակերպություններն սկսել են ավելի խոր ու նպատակասլաց զբաղվել գյուղատնտեսության զարգացման հարցերով, հմտորեն ուղղություն տալ գյուղի բոլոր կազմակերպությունների գործունեությանը, կոորդինացնել այն՝ ենթարկելով դա միասնական նպատակին, ավելի մեծ ուշադրություն նվիրել այն պրոբլեմներին, որոնց լուծումից է կախված կոլտնտեսային և սովխոզային արտադրության հետագա զարգացումը։

Կուսկազմակերպությունների մեծամասնությունը անհրաժեշտ ուշադրություն է նվիրում կուսակցական որոշումների կատարման վերահսկողության և ստուգման բարելավմանը, դրանց իրականացման ուղղությամբ կենդանի կազմակերպչական աշխատանքի ուժեղացմանը։

Վերջին տարիներին մշտապես աճում և ամրապնդվում է գյուղի կուսակցական կազմակերպությունների հեղինակությունը, զգալիորեն աճել են կուսակցական ուժերը։ Ներկայումս գյուղում կա ավելի քան 69 հազար կոմունիստ, որը 25 հազարով ավելի է, քան եղել է 1965 թվականին։

Գյուղական կոմունիստների 39 տոկոսը աշխատում է անմիջականորեն գյուղատնտեսական արտադրության մեջ, գերազանցապես նրա հիմնական տեղամասերում։

Դրա հետ մեկտեղ կուսակցության մեր գյուղական շատ շրջկոմների աշխատանքը գյուղատնտեսության ղեկավարման ասպարեզում դեռևս չի համա-



պատասխանում ժամանակակից պահանջներին։ Պլենումում ընկ. Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ պարունակված այն դիտողությունները, որ որոշ կուսակցական կոմիտեներ բավարար չափով խորամուխ չեն լինում գյուղում տեղի ունեցող տնտեսական և սոցիալական պրոցեսներին, չեն տեսնում այն բոլոր նոր հնարավորությունները, որ ստեղծվել են գյուղատնտեսական արտադրության առավել արագ աճի համար, միշտ չէ, որ օբյեկտիվորեն են գնահատում գործերի վիճակը, լիովին վերաբերում են նաև մեր հանրապետության կուսակցության շատ շրջկոմների։

Գյուղատնտեսության զարգացումն արագացնելու կարևոր պայմանը մեծագույն կազմակերպվածությունը, կարգուկանոնը և կարգապահությունն է գյուղատնտեսական արտադրության բոլոր օղակներում։ Ցավոք, մի շարք շրջաններում կուսակցական, սովետական, գյուղատնտեսական կազմակերպությունները պատշաճ ուշադրություն չեն նվիրում հանձնարարված աշխատանքի բնագավառում գործերի վիճակի համար կադրերի պատասխանատվությունը բարձրացնելու, նրանց նախաձեռնությունը զարգացնելու, թերությունների նկատմամբ անհանդուրժողականության զգացում դաստիարակելու, պետական և պլանային կարգապահությունը ըստ ամենայնի ամրապնդելու հարցերին։ Հենց դրանով է հիմնականում բացատրվում այն իրողությունը, որ միայն 1977 թվականին հանրապետության տնտեսությունների 14 տոկոսը չկատարեց պետությանը միս վաճառելու, 8 տոկոսը՝ կաթ, 45 տոկոսը՝ ձու և 28 տոկոսը՝ բուրդ վաճառելու պլանը։

Շրջանային կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինների խնդիրն է ապահովել ամբողջությամբ վերցրած շրջանի, յուրաքանչյուր կոլտնտեսության և սովխոզի, ֆերմայի, բրիգադի և օղակի համար սահմանված պլանների կատարումը և նշանակալի գերակատարումը։ Հարկավոր է ամենուրեք հաստատել աշխատանքի իսկական կուսակցական, ստեղծագործական ոճ, մի ոճ, որը անհամատեղելի է ինքնաապահովագրման ու քաշքշուկի, վերադաս մարմիններին անհարկի դիմելու հետ, պատասխանատվությունը ուրիշների վրա բարդելու ձգտման հետ։ Մենք պետք է այսուհետ ևս ուժեղացնենք պայքարը նման երևույթների դեմ, վճռաբար արմատախիլ անենք դրանք ծնող պատճառները, բարելավենք վերահսկողությունը կադրերի գործունեության նկատմամբ։ Ընդ որում, վերահսկողությունը պետք է իրականացվի ոչ միայն Կենտկոմի, կուսակցության շրջկոմների կողմից, այլև ներքևում՝ սկզբնական կուսակցական կազմակերպությունների, աշխատավորների կոլեկտիվների կողմից։

Կադրերի դաստիարակության գործում այսուհետ ևս առաջնահերթ նշանակություն պետք է տրվի քննադատության և ինքնաքննադատության ըստ ամենայնի ծավալմանը, հարկավոր է հասնել այն բանին, որ յուրաքանչյուր ղեկավար ցույց տա իր աշխատանքի արդյունքների նկատմամբ ինքնաքննադատական մոտեցման, սեփական սխալներն ու թերությունները համարձակորեն ընդունելու և վճռաբար շտկելու օրինակ, ներքևից եկող քննադատության նկատմամբ զգայուն և ուշադիր վերաբերմունքի, ձեռք բերված արդյունքների քննադատական վերլուծության օրինակ։ Այդ ամենը կնպաստի կուսակցական և պետական կարգապահության ամրապնդմանը, մեր կադրերի ստեղծագործական ակտիվության և նախաձեռնության զարգացմանը։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը մեծ նշանակություն տվեց գյուղատնտեսական արտադրության վճռական օղակները մասնագետ կադրերով ամրապնդելուն։ Վերջին տարիներին մեր հանրապետությունում այդ ասպարեզում դրական տեղաշարժեր կան։ Բավական է ասել, որ ներկայումս կոլտնտեսությունների և սովխոզների սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների 44 տոկոսն ունի բարձրագույն կրթություն, համարյա յուրաքանչյուր երրորդը գյուղատնտեսության մասնագետ է։ Կոլտնտեսությունների նախագահների և սովխոզների դիրեկտորների 83 տոկոսը դիպլոմավոր մասնագետներ են։

Սակայն այդ գործում մենք շատ անելիքներ ունենք, հատկապես միջին օղակը՝ բրիգադներն ու ֆերմաները մասնագետներով ամրապնդելու իմաստով։

Կուսակցական կազմակերպությունները պետք է մշակեն հանրապետության կոլտնտեսությունների և սովխոզների արտադրության միջին օղակը գյուղատնտեսության մասնագետներով ամրապնդելու միջոցառումների լայն կոմպլեքս, վճռական միջոցներ ձեռնարկեն գյուղատնտեսության այն մասնագետների բարոյական ու նյութական խթանման նպատակով, որոնք աշխատանքի են անցել որպես կոլտնտեսությունների և սովխոզների արտադրական ստորաբաժանումների ղեկավարներ, բարելավեն նրանց աշխատանքի ու կենցաղի պայմանները, բարձրացնեն նրանց դերն ու պատասխանատվությունը հողագործության և անասնապահության կուլտուրայի բարձրացման, հողերի, տեխնիկայի, պարարտանյութերի և մյուս նյութական միջոցների արդյունավետ օգտագործման համար, գյուղատնտեսության մեջ աշխատանքի առավելագույն արտադրողականության հասնելու համար։

Մեր առջև կանգնած խնդիրների հաջող կատարման վճռական պայմաններից մեկը մեր կուսակցությունը միշտ համարել և համարում է աշխատավորական զանգվածների ստեղծագործական եռանդի, նրանց քաղաքական ու աշխատանքային ակտիվության զարգացումը։ Մասսաների նախաձեռնության զարգացման հզոր միջոց է սոցիալիստական մրցությունը։ Հանրապետության կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները մշտապես հոգ են տանում, որպեսզի է՛լ ավելի բարձրացնեն սոցիալիստական մրցության նշանակությունը և դերը, կատարելագործեն մրցության ձևերն ու մեթոդները, հասնելով նրա բարձր արդյունավետության, այդ նպատակներով օգտագործելով գաղափարադաստիարակչական և կազմակերպչական աշխատանքի բոլոր միջոցները։

Դրա հետ մեկտեղ գյուղում մրցության կազմակերպման գործում էական թերություններ կան։ Մի շարք շրջաններում և տնտեսություններում ցուցաբերվում է ձևական մոտեցում այդ կարևոր գործի նկատմամբ։ Դա արտահայտվում է, նախ և առաջ, այն բանում, որ առանձին կոլտնտեսություններ ու սովխոզներ, երբեմն նաև շրջաններ, ստանձնում են պլանային ցուցանիշները չգերազանցող և նույնիսկ արդեն ձեռք բերված արդյունքներից ցածր սոցիալիստական պարտավորություններ, այդ պարտավորությունների կատարումը հաճախ չի ամրապնդվում կազմակերպչական աշխատանքով։

Հանրապետության կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները պետք է է՛լ ավելի բարձրացնեն սոցիալիստական մրցության դերն ու նշանակությունը, հասնեն այն բանին, որ սոցիալիստական պարտավորությունները համակողմանիորեն հիմնավորվեն ու լինեն աշխատավորական կոլեկտիվների և առանձին աշխատողների նախաձեռնության ու փորձի իսկական դրսևորումը, գյուղի բոլոր աշխատավորներին մղեն դեպի ստեղծագործություն, դեպի ռեզերվների և հնարավորությունների առավել ռացիոնալ օգտագործում, դեպի մեր կուսակցության ստրատեգիական գծի՝ արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման ըստ ամենայնի իրականացումը։

Գյուղատնտեսության հետագա վերելքի կոմպլեքսային ծրագրի իրականացման ասպարեզում կոչված են մեծ դեր խաղալու ժողովրդական դեպուտատների տեղական սովետները և նրանց գործադիր կոմիտեները, ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները գործունեության նոր լայն ասպարեզ են բացում տեղական սովետների առջև։ Անհրաժեշտ է ժողովրդական դեպուտատների տեղական սովետների առաջիկա նստաշրջաններում լայնորեն քննարկել պլենումի արդյունքները և նախատեսել այն կոնկրետ խնդիրները, որոնք բխում են պլենումի որոշումներից, ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման դրույթներից։

Կուսակցության շրջկոմներն ու քաղկոմները պարտավոր են ուժեղացնել տեղական սովետների և նրանց մարմինների ղեկավարումը, այն հաշվով, որ



նրանք իրենց իրավունքներն ու լիազորությունները լրիվին ուղղեն գյուղատնտեսության զարգացման, նրա նյութատեխնիկական բազայի համակողմանի ամրապնդման, հողատարածությունների բարելավման ու պահպանման, կոլտնտեսությունների ու սովխոզների հանրային արտադրության արդյունավետության բարձրացման նպատակին, գյուղում բնակարանային-կոմունալ, սոցիալ-կենցաղային օբյեկտների շինարարության իրականացման գործին։

Ընկերնե՛ր։

Գյուղատնտեսության վերելքը մեր կուսակցությունը դիտում է որպես համապետական, համաժողովրդական գործ։ Միայն բոլոր կուսակցական, սովետական և հասարակական կազմակերպությունների, միայն բոլոր աշխատավորների համատեղ ջանքերով կարելի է կենսագործել կուսակցության ագրարային քաղաքականությունը, ապահովել գյուղատնտեսական արտադրության նկատմամբ զարգացած սոցիալիստական հասարակության հարաճուն պահանջմունքները։

Այդ գործում մեծ դեր է պատկանում մեր երկրի պանծալի բանվոր դասակարգին, արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվներին։ Հանրապետության արդյունաբերությունը ամբողջությամբ վերցրած հաջող է կատարում գյուղի նյութատեխնիկական միջոցների մատակարարման առաջադրանքները։

Վերջին տարիներս հանրապետության շատ գործարանների ու ֆաբրիկաների կուսկազմակերպություններ ու կոլեկտիվներ բարելավել են գյուղին շեֆական օգնություն ցույց տալու աշխատանքները։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեների, արդյունաբերական և տրանսպորտային ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունների ու ղեկավարների առջև խնդիր պետք է դնի՝ այսուհետ ևս ժամանակին և որակով կատարել գյուղատնտեսությանը մեքենաներ, պահեստամասեր, հանքային պարարտանյութեր, շինանյութեր և այլ նյութատեխնիկական միջոցներ մատակարարելու գործը, ուժեղացնել շեֆական օգնությունը կոլտնտեսություններին և սովխոզներին։ Անհրաժեշտ է, որպեսզի կուսակցական կոմիտեները, ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի պահանջներից, արդյունաբերական, տրանսպորտային և շինարարական ձեռնարկությունների կոլեկտիվների և կուսակցական կազմակերպությունների հետ միասին մշակեն և առաջիկայում միջոցառումների կոմպլեքսային պլաններ իրականացնեն գյուղին ցույց տրվող շեֆական օգնության աշխատանքների ծավալների մեծացման և առավել ակտիվացման ուղղությամբ։

Ընկերնե՛ր։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի կողմից առաջ քաշված խնդիրների պրակտիկ իրականացումը պահանջում է է՛լ ավելի բարելավել հանրապետության աշխատավորության շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը։

Կուսակցական կոմիտեներն ու սկզբնական կուսկազմակերպությունները պետք է կոլեկտիվներում լայնորեն ծավալեն նպատակասլաց գաղափարական-դաստիարակչական աշխատանք, բանավոր և գրավոր պրոպագանդայի, ագիտացիայի բոլոր ձևերի գործունեությունը ի սպաս դնեն ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումների գաղափարական ապահովմանը։

Այդ գործում պետք է ավելի արդյունավետ և հմտորեն օգտագործել հանրապետության մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի բոլոր միջոցները։

Հանրապետական և տեղական մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի, պրոպագանդիստների, ինֆորմատորների, դասախոսների, ագիտատորների գլխավոր խնդիրն է յուրաքանչյուր կոլտնտեսականի, սովխոզի աշխատողի, հանրապետության բոլոր աշխատավորներին հասցնել ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումները, խորապես և համակողմանիորեն, մատչելի ու վառ կերպով բացահայտել կուսակցական որոշումների իմաստը, ցույց տալ գյուղատնտե-

ության հետագա վերելքի համար ժողովրդի աշխատանքի ու պայքարի վեհությունը, ակտիվորեն պաշտպանել ստեղծագործական նախաձեռնությունները, տարածել առաջավոր փորձը, սուր կերպով քննադատել թերությունները և նպաստել դրանց վերացմանը։

Գործունեության լայն ասպարեզ է բացվում հանրապետության ստեղծագործական աշխատողների՝ գրողների, նկարիչների, արվեստի գործիչների համար, որոնք պետք է մասսաներին հաղորդեն կուսակցության խոսքը, կերտեն մեր մեծ դարաշրջանին արժանի ստեղծագործություններ։ Ստեղծագործական միությունները պետք է նախատեսեն և իրագործեն գյուղում դաստիարակչական և կուլտուր-մասսայական աշխատանքին իրենց ակտիվ մասնակցությունն ապահովելու կոնկրետ միջոցառումներ։

Արմատապես պետք է բարելավել գյուղական ակումբների, գրադարանների, կուլտուրայի տների և օջախների աշխատանքը, այն նպատակամղելով պլենումի որոշումների լայն ու մատչելի պրոպագանդային։ Գաղափարական-դաստիարակչական աշխատանքի բոլոր միջոցների գործունեությունը պետք է համապատասխանի ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի առաջադրած խնդիրների մակարդակին։

Թույլ տվեք, ընկերնե՛ր, հավաստիացնել ՍՄԿԿ Կենտկոմին, նրա քաղբյուրոյին և անձամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևին, որ հանրապետության կուսակցական կազմակերպությունները, կոմունիստները, աշխատավորները կանեն ամեն ինչ ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները կատարելու համար, իրենց բոլոր ջանքերը կգործադրեն ՍՄԿԿ XXV համագումարի վիթխարի կանխագծումները հաջողությամբ իրագործելու համար, հանրապետության գյուղատնտեսությունը կհասցնեն զարգացման նոր, ավելի բարձր աստիճանի։

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԿԱԴՐԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ՝ ԱՐԴԻ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

**Լ. Ն. ՆԵՐՍԻՍՅԱՆ**
ՀԿԿ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ կոմունիստական կուսակցությունն իր զարգացման բոլոր փուլերում հետևողականորեն իրականացրել է լենինյան կադրային քաղաքականությունը, որը, հսկողության և կատարման կազմակերպման հետ միասին, կուսակցական աշխատանքի հիմնական առանցքն է։ Կուսակցության կադրային քաղաքականության սկզբունքները մշակել է Վ. Ի. Լենինը։ Նա բազմիցս շեշտել է, որ ճիշտ քաղաքական գծի մշակումից, հասունացած խնդիրների լուծման նյութական հնարավորությունների բացահայտումից հետո կուսակցական և պետական ղեկավարման մեջ գլխավորը կադրերի հետ տարվող աշխատանքն է, որ կադրերի ճիշտ ընտրությամբ ու տեղաբաշխմամբ, նրանց քաղաքական հասունությամբ, մասսաներին կազմակերպելու ունակությամբ, նրանց գործիմացության խորությամբ է մեծապես պայմանավորված կուսակցության քաղաքականության իրականացումը կյանքում։

Կյանքը բազմիցս հաստատել է անառարկելի այն ճշմարտությունը, որ ինչքան էլ ճշգրիտ մշակված լինեն մեր պլանները, հեռանկարները, ինչքան էլ մանրակրկիտ հաշվի առնվեն տեղական ռեզերվներն ու հնարավորությունները, կանխագծումների իրականացման ուղիներն ու միջոցները, գործի հաջողությունը, վերջին հաշվով, որոշում են կադրերը։ Այդ ասպարեզում վճռական դեր են խաղում նրանց գործնական ու քաղաքական հասունությունը, ունակությունն ու անձնական լավագույն հատկանիշները։ Եվ իզուր չէր, որ Վ. Ի. Լենինը կադրերի ճիշտ ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության գործը համարում էր կուսակցության կազմակերպական ու քաղաքական կարևորագույն ֆունկցիան։

Կադրային քաղաքականության վերաբերյալ լենինյան սկզբունքների հետագա զարգացումը ՍՄԿԿ Կենտկոմի գործունեության բնորոշ առանձնահատկություններից է։ ՍՄԿԿ XXV համագումարը կադրային քաղաքականությունը համարեց մի հզոր լծակ, որով կուսակցությունը ներգործում է հասարակական զարգացման ընթացքի վրա։ Կուսակցությունը հետևողականորեն ձգտում է այն բանին, որպեսզի յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր աշխատող, որը գլխավորում է հաստատություն, ձեռնարկություն, կուսակցական կոմիտե, լավ իմանա արտադրության կազմակերպման ու ղեկավարման գիտական հիմունքները, լիովին տիրապետի ղեկավարման վարչատնտեսական մեթոդներին, հանդիսանա գիտատեխնիկական առաջընթացի ակտիվ ջատագով, մասսաների հմուտ կազմակերպիչ ու դաստիարակ։ «Ժամանակակից ղեկավարը,— նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— պետք է իր մեջ կուսակցա-

կանությունն օրգանապես զուգորդի խոր բանիմացության հետ, կարգապահությունը՝ նախաձեռնության հետ և գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցման հետ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 105)։

Ղեկավարվելով կադրային քաղաքականության լենինյան դրույթներով, այդ թվում ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների ծրագրային ցուցումներով, տնտեսական, կազմակերպական ու գաղափարական գործունեության տարբեր ոլորտների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներով՝ ՀԿԿ Երևանի քաղկոմը և շրջանային կոմիտեները էականորեն բարելավել են կադրերի հետ տարվող աշխատանքը։ Պրակտիկա է դարձել պլենումների, բյուրոների նիստերում այդ ասպարեզում հիմնարկ-ձեռնարկությունների, մինիստրությունների և գերատեսչությունների կուսակցական կոմիտեների և բյուրոների ծավալած գործունեության հարցերի պարբերաբար քննարկումը։ Կադրերի հետ տարվող աշխատանքի բարելավման առումով որակապես նոր փուլ նշանավորեց ՀԿԿ Կենտկոմի հունվարյան (1975 թ.) պլենումը, որն էական թերություններ բացահայտեց ինչպես հանրապետությունում, այնպես էլ Երևանի կուսակցական կազմակերպությունում։

Կուսակցական, սովետական և տնտեսական բոլոր օղակներում կադրային քաղաքականության լենինյան սկզբունքների անշեղ պահպանման նպատակով քաղաքային կուսկազմակերպության ծավալած պայքարն զգալիորեն նպաստել է կադրերի նկատմամբ պահանջկոտության, հանձնարարված գործի համար նրանց պատասխանատվության բարձրացմանը, կուսակցական և պետական կարգապահության ամրապնդմանը, թերությունների, աշխատանքի սխալ մեթոդների հանդեպ անհաշտվողականության մթնոլորտի ստեղծմանը։ Ընդսմին, մենք հաշվի ենք առնում, որ գործի շահերը պահանջում են, կադրային քաղաքականություն վարելիս, հոգալ ղեկավար կադրերի կայունության մասին այն հաշվով, որ գործիմաց, աշխատանքային հարուստ փորձ ունեցող և քաղաքականապես կոփված ղեկավարները, որքան հնարավոր է, երկար աշխատեն, ապահովեն իրենց գլխավորած հիմնարկ-ձեռնարկությունների հետագա վերելքը։

Սակայն մենք չպետք է մոռանանք, որ չի կարելի հանդուրժել այնպիսի վիճակ, երբ երկար ժամանակ ղեկավար պոստեր են գրավում անճարակ, անսկզբունքային, գործերի նկատմամբ անտարբեր վերաբերմունք ցուցաբերող, քաղաքականապես և բարոյապես անկայուն անձինք, և որ նման վիճակը կարող է լրջորեն խոչընդոտել կուսակցության մշակած քաղաքականության իրականացմանը։ Այդ կապակցությամբ Լ. Ի. Բրեժնևն ասել է. «Շատ վատ է, եթե կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար կադրերը կայուն չեն, հաճախակի փոխվում են։ Պետք է աշխատել այդ բանը թույլ չտալ։ Սակայն է՛լ ավելի վատ է, եթե իրենց պոստում չափից դուրս երկար են մնում մարդիկ, որոնք վատ են աշխատում, չեն կատարում իրենց պարտականությունները» (Լենինյան կուրսով, հ. 4, էջ 279)։

Երևան քաղաքը տնտեսական, կուլտուրական և գիտական խոշոր կենտրոն է։ Այստեղ են տեղաբաշխված հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների կեսից ավելին, գիտահետազոտական ինստիտուտների, կուլտուրայի, առողջապահական հիմնարկությունների, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական հաստատությունների ճնշող մեծամասնությունը։ Նրանց աշխատանքը լուրջ նշանակություն ունի ինչպես քաղաքի, այնպես էլ ամբողջ հանրապետության ժողովրդական տնտեսության համար։ Հետևաբար, մայրաքաղաքի կուսկազմակերպությունը պետք է ամենայն լրջությամբ զբաղվի կադրերի հետ տարվող աշխատանքի բարելավման հարցերով։

Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ աշխատանքի յուրաքանչյուր կոնկրետ բնագավառում գործի հաջողությունը մեծապես պայմանավորված է այդ գործը գլխավորող միանձնյա ղեկավարի արդյունավետ աշխատանքով և նրանով, թե որքան մեզ կհաջողվի բարձրացնել տնտեսական ղեկավար կադրերի անձնական պատասխանատվությունը հանձնարարված գործի կատարման համար։ Առաջնորդը միաժամանակ լուրջ նշանակություն էր տալիս ղեկավար կադրերին այնպիսի հատկություններով օժտելուն, որպիսիք են՝ մարդամոտությունը, նրբա-



նկատությունը, անկեղծությունը, գործարարությունը։ Սովետական հիմնարկության ղեկավարը պետք է ունենա բարձր պատասխանատվություն, հաստատակամություն, հետևողականություն, հակված լինի իր կատարած աշխատանքի կարևորությունն ըմբռնելու ունակությամբ։

Կոլեկտիվի հետ հոգևոր սերտ կապ հաստատելու, մարդկանց գաղափարապես ոգեշնչելու և դաստիարակելու ղեկավարի ունակությունը նպաստում է կոլեկտիվում առողջ բարոյական մթնոլորտի, ստեղծագործական մշտական որոնման և բարձր կազմակերպվածության իրադրության ստեղծմանը։ Հենց այդպիսին է ալյումինի գործարանի դիրեկտոր Լ. Ղազարյանի աշխատանքի ոճը։ Արտադրական հարցերը լավ պատկերացնելու հետ մեկտեղ, նա բնավ չի փոխարինում մասնագետներին, չի անտեսում նրանց իրավունքները։

Կարգապահություն և կուսակցական սկզբունքայնություն, պրոֆեսիոնալ բանիմացություն, պահանջկոտություն իր և այլոց նկատմամբ, հոգատարություն մարդկանց հանդեպ — սրանք են դիրեկտորի բնորոշ հատկանիշները, որոնք որոշակի դեր են խաղում ձեռնարկության աշխատանքի բարելավման գործում։ Եվ պատահական չէ, որ գործարանը նրա ղեկավարության տարիներին ձեռք է բերել լուրջ հաջողություններ. 23 անգամ անընդմեջ արժանացել է ՍՍՀՄ գունավոր մետալուրգիայի մինիստրության և ճյուղային արհմիության կենտրոնական խորհրդի փոխանցիկ կարմիր դրոշին։ Ալյումինագործները հեղինակ են նաև հայրենասիրական բազմաթիվ նախաձեռնությունների։

Ուրախությամբ պետք է նշել, որ նման օրինակները քիչ չեն։ Այսօր քաղաքի ձեռնարկությունները ղեկավարում են մարդիկ, որոնք խոր գիտելիքները համատեղում են գործնական լավ աշխատանքի, արտադրության վաղվա օրը տեսնելու, առաջավոր փորձի և գիտության նվաճումների վրա հենվելու ունակության հետ։ Նրանցից շատերը խորապես գիտակցում են դաստիարակի իրենց դերը, վարչական և դաստիարակչական միջոցները հմտորեն համատեղելու կուսակցության պահանջը։

Ակնհայտ է, որ գործունեության ցանկացած տեղամասում հաջողության անհրաժեշտ պայմանը ղեկավարի գործիմացությունն է, մարդկանց համախմբելու, կոլեկտիվում գործարար և ստեղծագործական մթնոլորտ ստեղծելու նրա ունակությունը, որոնցով և պայմանավորված է նրա հեղինակությունը։ Եթե ղեկավարն իր նկատմամբ խստապահանջ է, եռանդուն է, աշխատասեր ու համեստ, ապա այդ դեպքում միայն նա կարող է նույնը պահանջել իր ենթականերից։ Եվ հակառակը, ղեկավարի գոռոզությունը, անտակտությունը, վարչարարությունը, անսկզբունքայնությունը, ընչաքաղցությունը նրան հեղինակազրկում են, խիստ բացասաբար ազդում ողջ կոլեկտիվի վրա։ Եվ երբ որևէ մեկը չի փորձում զգուշացնել, սթափեցնել և ուղղել այդպիսի ղեկավարին, ապա նա շարունակում է առավել ակներև սխալներ կատարել։ Այդպես պատահեց գարեջրի և ոչ-ալկոհոլային խմիչքների արտադրական միավորման նախկին գլխավոր դիրեկտոր Ռ. Հունանյանի հետ։ Նա հոգում էր միայն սեփական բարեկեցության, անձնական շահի մասին, հանուն որի ընտրեց պետությանը խաբելու և շահամոլության ճանապարհը, որի համար և վտարվեց կուսակցության շարքերից։

Քաղաքի սկզբնական կուսկազմակերպությունները և կուսակցական մարմինները վերջին տարիներին լրջորեն բարելավել են տնտեսական աշխատողների նկատմամբ իրականացվող հսկողությունը, կուսակցական սկզբունքայնության դիրքերից են գնահատում յուրաքանչյուր ղեկավարի գործունեությունը։ Միայն այդպիսի մոտեցմամբ է հնարավոր ժամանակին կանխել ու շտկել ղեկավար կադրերի սխալները, բարձրացնել նրանց պատասխանատվությունը։

Ուսանելի է Լ. Ի. Բրեժնևի՝ Վերածնունդ գրքում արտահայտած հետևյալ միտքը. «Եթե մարդ գիտե գործը, նվիրված է գործին, եթե ձգտում է հասնել ընդհանուր բարօրության, ապա հարկավոր է նրան պաշտպանել։ Այստեղ նպատակը մեկն է՝ շտկել, ուղղել, դաստիարակել աշխատողին, այլ ոչ թե ջարդել նրան» (էջ 109)։

Հաճախ, երբ խոսք է լինում հանձնարարված գործից գլուխ չհանող աշխատողին պատասխանատվության կանչելու կամ զբաղեցրած պաշտոնից ազատելու մասին, լսվում են առարկություններ, թե կադրերին հարկավոր է պահպանել՝ վերաբերվել նրանց հոգատարությամբ։ Կադրերին, իրոք, անհրաժեշտ է ուշադիր վերաբերվել։ Սակայն իրեն չարդարացնող աշխատողից հաշիվ պահանջելը չպետք է շփոթել մարդու նկատմամբ անտարբերության հետ։ Հետևաբար, կուսակցական աշխատանքում շատ կարևոր է անհատական մոտեցումը։ Հոգատարությունը պետք է զուգակցել պահանջկոտությանը։

Ղեկավար կադրերի կարգապահության ամրապնդման փորձված մեթոդ է անհատական զրույցների կազմակերպումը։ Կուսակցական կոմիտեում կամ բյուրոյում անցկացված անկեղծ, անկաշկանդ զրույցն օգնում է ղեկավարին՝ համակողմանի ու քննադատաբար գնահատելու իր գործունեությունը։ Անժխտելի է, որ կոմունիստ ղեկավարների հաշվետվությունների ունկնդրումը, նրանց հետ զրույցների անցկացումը նպաստում են կադրերի դաստիարակությանը։ Սակայն աշխատանքի այս ոճը կուսակցական կազմակերպություններում, կուսշրջկոմներում խիստ անբավարար է կիրառվում։ ՀԿԿ Երևանի քաղկոմը միջոցներ է ձեռնարկում այդ բացը վերացնելու, այդ գործում կուսշրջկոմների ու սկզբնական կուսկազմակերպությունների ակտիվությունն ու նախաձեռնությունը զարգացնելու համար։

ՍՄԿԿ Կենտկոմը «Տամբովի մարզային կուսակցական կազմակերպությունում քննադատության և ինքնաքննադատության վիճակի մասին» իր հայտնի որոշմամբ պահանջեց լայնորեն ծավալել քննադատությունը և ինքնաքննադատությունը, մշտապես կատարելագործել ղեկավարման ոճն ու մեթոդները։ Մեզ համար գործողության ուղեցույց է Վերածնունդ գրքում ընկ. Բրեժնևի արած հետևությունը. «Եթե մենք այսօր ձգտում ենք հասնել բարձր, ես կասեի՝ բարձրագույն կազմակերպվածության, ցանկանում ենք ամրապնդել կարգապահությունը բոլոր մակարդակներով՝ աշխատանքային կարգապահությունը, տեխնոլոգիական կարգապահությունը, պլանային կարգապահությունը, ապա մեզ հարկավոր է շահագրգռված, սեփական քննադատական հայացք գործերի վիճակի նկատմամբ» (էջ 110)։

Հենց այդպիսի ոճն է բնորոշ քաղաքի կուսակցական, սովետական և տնտեսական շատ ղեկավարների, որոնք իրենց գործունեության ընթացքում ո՛չ միայն կիրառում են քննադատության և ինքնաքննադատության մեթոդը, այլև սովորեցնում ուրիշներին։ Այդպիսի աշխատողների մոտ քննադատությունն ու ինքնաքննադատությունը վարքագծի նորմ է։ Այս իրողության ցայտուն ապացույցը մանկաբարձության և գինեկոլոգիայի գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտոր Գ. Օկոևի գործելակերպն է։ Կոլեկտիվի անդամների հետ ունեցած իր փոխհարաբերություններում նա ձգտում է, որպեսզի ամեն մի աշխատող ցուցաբերի ինքնուրույնություն, կարողանա քննադատաբար գնահատել ինչպես իր, այնպես և այլոց աշխատանքը։

Քննադատության ու ինքնաքննադատության ծավալումը ո՛չ միայն թերությունների վերացման, գործերի վիճակի բարելավման, այլև կադրերի դաստիարակության կարևոր միջոց է։ Այն վճռական դեր է խաղում մեր կենսագործունեության բոլոր բնագավառներում։ Հետևաբար, այդ միջոցի թերագնահատումն ու անտեսումը կարող են միայն վնասել գործին, խորացնել սխալներն ու թերությունները, ստեղծել ցածր պահանջկոտության, թույլ կարգապահության, քծնանքի ու շողոքորթության, պետական ու հասարակական շահերի նկատմամբ անտարբերության, կադրերի ոչ ճիշտ դաստիարակության անցանկալի մթնոլորտ։ Ցավոք, քաղաքի առանձին կազմակերպություններում նկատվում են այդպիսի երևույթներ։ Հետևանքը՝ որոշ կադրերի ոչ արդյունավետ աշխատանքը, նրանց կողմից պետական ու կուսակցական կարգապահության խախտումները։

Լենինյան շրջանի սկզբնական կուսկազմակերպություններում «Տամբովի մարզի կուսկազմակերպությունում քննադատության և ինքնաքննադատության վիճակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կատարման ընթացքի վերաբերյալ



ուսումնասիրությունների ժամանակ պարզվեց, որ մի շարք կազմակերպություններում ղեկավար աշխատողների զեկուցումներն ու ելույթները կրել են չափից ավելի ընդհանուր բնույթ։ Դրանցում մարդկանց ուշադրությունը կենտրոնացվել է ոչ թե կոլեկտիվի գործունեությունում եղած թերությունների, այլ ձեռք բերած հաջողությունների վրա։ Քննադատությունը, եթե այն անգամ առկա էր, վերաբերել է միայն առանձին փաստերի, շրջանցվել են թերությունների համար մեղավոր անձինք, իսկ ինքնաքննադատությունը գործնականում բացակայում է։ Քաղկոմը շրջանային կոմիտեին և սկզբնական կուսկազմակերպություններին պարտավորեցրեց կադրերին դաստիարակել քննադատության ու ինքնաքննադատության, թերությունների նկատմամբ անհանդուրժողականության ոգով։

Գործունեության կարևոր ասպարեզ է բնակչության սպասարկմանն առնչվող ծառայությունների՝ առևտրի, հասարակական սննդի, կենցաղսպասարկման, տրանսպորտի կադրերի հետ տարվող աշխատանքը։ Սակայն մեզ դեռևս չի հաջողվել արմատապես լուծելու սպասարկման ոլորտի կադրերի ճիշտ ընտրության ու տեղաբաշխման խնդիրը։ Հաճախ այդ բնագավառներում տեղի է ունենում ղեկավար կադրերի անընդհատ շրջապտույտ, որը, բնականաբար, չի կարող նպաստել բացասական առկա երևույթների դեմ մեր մղած պայքարի հաջողությանը։ Ըստ երևույթին, մենք պատշաճ համարձակությամբ չենք գործում ձախողված և վարկաբեկված կադրերը երիտասարդ, առաջավոր և բանիմաց մարդկանցով փոխարինելու խնդրում, մեզ կաշկանդում ենք այնպիսի «արդարացուցիչ» նկատառումներով, ինչպիսիք են նոր կադրերի անբավարար փորձը, մասնագիտական որոշ նկատառումները և այլն։

Անբավարար է նաև վարչական մարմինների կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության գործը։ Թերևս դա է պատճառը, որ նրանց գործունեության մեջ լուրջ տեղաշարժեր չեն կատարվել։

Ճիշտ է, կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեները, հանրապետության վերադաս վարչական մարմինները բարձրացրել են պահանջկոտությունն այդ բնագավառի պատասխանատու աշխատողների նկատմամբ, նրանց գործունեության գնահատման ժամանակ ավելի խստապահանջ մոտեցում են ցուցաբերում, սակայն դեռևս չեն կարողանում իրենց չարդարացնող կադրերին ժամանակին փոխարինել նորերով։ Այստեղ նույնպես ֆետիշացվում է պրակտիկ փորձը, ավելորդ զգուշություն ցուցաբերվում երիտասարդ, եռանդուն աշխատողներով այդ բնագավառները համալրելու նկատմամբ։ Դրանով պետք է բացատրել այն իրողությունը, որ թեև քաղաքի դատախազություններում վերջին տարիներին կադրերի զգալի տեղաշարժեր են կատարվել, ամբողջությամբ վերցրած՝ այդ բնագավառում նոր կադրեր գրեթե ասպարեզ չեն եկել։

Կուսքաղկոմը միջոցներ է մշակում ինչպես վարչական մարմինների, այնպես և սպասարկման ոլորտի հիմնարկությունների կադրերի ընտրության և տեղաբաշխման գործում կտրուկ շրջադարձ կատարելու համար։ Մենք ջանում ենք այդ բնագավառներում ավելի համարձակորեն ղեկավար աշխատանքի առաջ քաշել երիտասարդ, բարոյաքաղաքական լավագույն հատկանիշներով օժտված մարդկանց։

Կադրային քաղաքականության համակարգում չափազանց կարևոր խնդիր է սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարների հետ տարվող աշխատանքը։ Նրանց կազմակերպական ունակությունները, մարդկանց հետ գործելու կարողությունը որոշակիորեն նպաստում են աշխատավորական կոլեկտիվում առողջ մթնոլորտի ստեղծմանը, թե՛ կուսակցական, թե՛ հասարակական կազմակերպությունների մարտունակության բարձրացմանը։

Արդի պայմաններում սկզբնական կուսկազմակերպության քարտուղարին ներկայացվում են բարձր պահանջներ։ Նա պետք է լավ ըմբռնի կուսակցական շինարարության տեսության ու պրակտիկայի հարցերը, ձեռք բերի կուսակցական աշխատանքի փորձ, խոր ու կայուն մասնագիտական գիտելիքներ։

Երևանում վերջին տասնամյակում զարգացել են արտադրության այնպիսի ճյուղեր, որպիսիք են՝ մեքենաշինությունը, էլեկտրոնային արդյունաբերու-

թյունը, սարքաշինությունը։ Այդ ձեռնարկություններում կուսկազմակերպությունները կարող են գլխավորել այնպիսի կոմունիստներ, որոնք, գաղափարաքաղաքական պատրաստականության հետ մեկտեղ, ունեն և տեխնիկական ու տնտեսական խոր գիտելիքներ։ Միայն այդպիսի կադրերն են ի վիճակի տեսնելու ո՛չ միայն ձեռնարկության այսօրը, այլև նրա զարգացման հեռանկարները։ Մարդկանց հետ աշխատելը, դաստիարակ լինելը, շեշտել է Լ. Ի. Բրեժնևը, «բարդ և, պետք է ասել, նուրբ գործ է, որը պահանջում է մասնագիտական հիմնավոր գիտելիքներ, կուլտուրական լայն մտահորիզոն, մանկավարժական տակտ, չխոսելով արդեն կենսափորձի մասին» (Աշխատավորների կոմունիստական դաստիարակության մասին, 1974 թ., «Հայաստան» հրատ., էջ 255)։

Քաղաքային, շրջանային կոմիտեների հետևողական աշխատանքի շնորհիվ այսօր մայրաքաղաքի ձեռնարկությունների, կառույցների, հիմնարկությունների, բուհերի մեծ մասի կուսակցական կազմակերպությունները գլխավորում են այնպիսի մարդիկ, որոնք իրենց գործիմացությամբ, բարոյաքաղաքական բարձր հատկանիշներով համապատասխանում են արդի պահանջներին։ Էականորեն բարելավվել է քարտուղարների որակական կազմը։ Նրանց շարքերում կան մեծ թվով ակտիվ ու հեղինակավոր կոմունիստներ, արտադրության առաջավորներ ու նորարարներ, ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների առաջատար մասնագետներ։ 1977 թ. հաշվետու-ընտրական ժողովների ընթացքում ընտրված քարտուղարների 71 տոկոսն ունի բարձրագույն և թերի բարձրագույն, 25,4 տոկոսը՝ միջնակարգ և միջնակարգ-մասնագիտական կրթություն։ Ուսումնական հաստատությունների, առողջապահական հիմնարկությունների, գիտահետազոտական ինստիտուտների կուսակցական կազմակերպությունների քարտուղարների 95—98 տոկոսն այդ բնագավառների մասնագետներ են։ Բարելավվել է նաև արտադրամասային կուսկազմակերպությունների ղեկավար կազմը։ Օրինաչափ է, որ շատ սկզբնական և արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարներ, իրոք, գիտակ են իրենց գործին, հստակորեն պատկերացնում են կուսակցության քաղաքականությունը, իրենց կոլեկտիվների առջև ծառացած պրոբլեմները, ճշտորեն մշակում են թերությունների վերացման և հրատապ խնդիրների լուծման մեթոդները։

«Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման կուսկոմիտեի քարտուղար Մ. Ջատիկյանը նախքան քարտուղար ընտրվելը շուրջ 10 տարի աշխատել է Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի տարբեր արտադրամասերում՝ արտադրամասի վարպետի, պետի պաշտոններում, ղեկավարել է գործարանի արտադրաբաժինը, եղել միավորման գլխավոր դիրեկտորի տեղակալ։ Անմիջապես արտադրությունում ծավալած երկարամյա գործունեությունը նրան հնարավորություն է ընձեռել խորությամբ ուսումնասիրելու տեխնոլոգիական պրոցեսները, ինչպես հարկն է՝ իրազեկ լինելու ձեռնարկության առանձնահատկություններին, ճանաչելու աշխատավորների զգալի մասին, հասկանալու արտադրության մարդու հոգեբանությունը։ Նա անցել է նաև կուսակցական-քաղաքական աշխատանքի անհրաժեշտ դպրոց. բազմիցս ընտրվել է արտադրամասի կուսբյուրոյի և ձեռնարկության կուսկոմիտեի կազմում, կուսկոմիտեի քարտուղարի տեղակալ։ Իր ձեռք բերած քաղաքական-կազմակերպական և արտադրական աշխատանքի հարուստ փորձը նա հաջողությամբ է օգտագործում միավորման կուսակցական կազմակերպության ղեկավարման ոլորտում։

Կուսկոմիտեն և նրա քարտուղարը ժամանակին նկատում են արտադրության նեղ տեղերը, կոլեկտիվի ջանքերն ուղղում ձեռնարկության առջև ծառացած խնդիրների լուծմանը, հմտորեն կատարում աշխատավորների քաղաքական ղեկավարի իրենց դերը։ Եվ զարմանալի չէ, որ մեր հանրապետության ամենախոշոր արտադրական կոլեկտիվն աշխատում է համաչափ, բոլոր ցուցանիշներով կատարում արտադրական պլանները։ Նման քարտուղարներ մայրաքաղաքի կուսկազմակերպությունը շատ ունի։

Լավն այն է, որ կոմունիստներն իրենք են զգում սկզբունքային, ազնիվ ու գաղափարային, բազմակողմանի զարգացած ընկերներին քարտուղար ընտրելու անհրաժեշտությունը, և սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղար-



ների որակական կազմի բարելավման ասպարեզում քաղաքային և շրջանային կոմիտեների վարած գիծն ամբողջությամբ համընկնում է նրանց ձգտումներին ու ցանկություններին։

Սակայն, ցավոք, կան և սկզբնական կուսկազմակերպությունների այնպիսի քարտուղարներ, որոնք իրենց գործելակերպով անջրպետվում են կուսակցական մասսաներից, չեն կարողանում ներգործել նրանց վրա, չեն ջանում և ուղիներ չեն որոնում այդ թերացումն ու անջրպետը վերացնելու համար։

Գաղտնիք չէ, որ կան կուսակցական աշխատողներ, որոնք վատ են զբաղվում իրենց գաղափարական մակարդակի բարձրացմամբ, հանդես չեն բերում մարքս-լենինյան տեսության խոր իմացություն, չեն հետաքրքրվում գիտության, գրականության ու արվեստի պրոբլեմներով։ Մեզ չի կարող չանհանգստացնել այն, որ կուսակցական աշխատողը, զբաղված լինելով առօրյա գործերով, սիստեմատիկաբար չի հարստացնում իր գիտելիքները և դրա պատճառով անխուսափելիորեն ետ է մնում կյանքի պահանջներից, դժգունում է մասսաների կազմակերպչի նրա կերպարը։

Կուսակցական ապարատի աշխատողի, սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարին լենինյան հատկանիշներով օժտելը, նրանց գաղափարական, քաղաքական, կուլտուրական մակարդակի սիստեմատիկ բարձրացումը մեր հիմնական խնդիրն է, որը պետք է լուծենք ամեն օր, տարբեր մեթոդներով։ Քաղկոմն այսպիսի պահանջներ է առաջադրում կուսշրջկոմներին, սկզբնական կուսկազմակերպություններին։

Մեր երկրի տնտեսական, քաղաքական ու մշակութային կյանքում վիթխարի դեր են խաղում ժողովրդական դեպուտատների սովետները, որոնց գործունեության բնույթով աշխատավորները դատում են սովետական պետության քաղաքականության մասին։ Այն ամենը, ինչ առնչվում է սովետների հետ, եղել և մնում է կուսակցության հարազատ գործը։ Ժողովրդական դեպուտատների սովետը, շեշտել է Լ. Ի. Բրեժնևը, գերագույն իշխանության մասնիկն է, նա ո՛չ միայն օժտված է իր իրավասությանը ենթակա բոլոր հարցերի լուծման լիազորություններով, այլև հանդես է գալիս որպես համապետական որոշումների տարածող։ ՍՍՀՄ նոր Սահմանադրությամբ սովետների առջև դրված խնդիրների լուծման, նրանց ֆունկցիաների ընդլայնման շահերը պահանջում են կուսակցական-պետական ամուր հիմքի վրա դնել սովետները կարող և ունակ ուժերով համալրելու գործը։ «...Ընտրեցե՛ք հարկավոր մարդկանց ու ստուգեցե՛ք գործնական կատարումը,— սովորեցնում էր Լենինը,— և ժողովուրդն այդ կգնահատի» (Երկեր, հ. 33, էջ 360)։ Առաջնորդը խորհուրդ էր տալիս՝ ըստ կարելվույն ավելի զգուշությամբ և համբերությամբ փորձել և ճանաչել իսկական կազմակերպիչներին, սթափ միտք ու գործնական ըմբռնողություն ունեցող մարդկանց, այնպիսի մարդկանց, որոնք սոցիալիզմին նվիրված լինելը միացնում են սովետական կազմակերպության շրջանակներում մեծ թվով մարդկանց ամրակուռ և համերաշխ, համատեղ աշխատանքն առանց աղմուկի (և հակառակ իրարանցման ու աղմուկի) կարգավորելու հետ։ Միայն այդպիսի մարդկանց, տասնապատիկ փորձելուց հետո, պետք է նրանց՝ ամենահասարակ խնդիրներից դեպի դժվարագույնները վարելով, առաջ քաշել ժողովրդական աշխատանքի ղեկավարների, կառավարման ղեկավարների պատասխանատու պոստերը։

Սովետներում ներգրավված կադրերի գործունեությունը գնահատելով այս չափանիշներով, անտարակույս, կարող ենք ասել, որ նրանց շարքերում կան նախաձեռնող, ակտիվ, գործիմաց շատ ընկերներ, որոնք արդարացնում են ընտրողների վստահությունը, լայն հեղինակություն վայելում նրանց շրջանում։

Հարկ է ընդունել, սակայն, որ սովետական ապարատի կադրերի ընտրության ու տեղաբաշխման գործում մենք դեռևս շատ անելիքներ ունենք։ Որոշ կադրեր չեն համապատասխանում իրենց զբաղեցրած պաշտոններին, ցածր է ոմանց տեսական-քաղաքական պատրաստականության մակարդակը, ոմանք էլ չունեն գործնական ու քաղաքական պահանջվող հատկանիշներ։ Շրջանային ու քաղաքային սովետների գործկոմների պրակտիկայից դեռևս արմատախիլ չեն արվել բյուրոկրատիզմի, քաշքշուկի երևույթները։ Այդ ապարատների ոչ բոլոր

աշխատողներն են հանդես գալիս կուսակցության և կառավարության որոշումների կատարման առաջամարտիկների դերում։ Նույնիսկ կան դեպքեր, երբ սովետներում աշխատանքի են խցկվում անաղնիվ անձինք։ Քաղաքային կոմիտեն հետևողականորեն զբաղվում է տեղական սովետների գործունեության բարելավման, այնտեղ աշխատող կադրերի պատասխանատվության և սովետների դերի հետագա բարձրացման հարցերով։

Կադրերի ընտրության և ճիշտ տեղաբաշխման կարևոր ու փորձված միջոց է նրանց ատեստավորումը։ Դա հնարավորություն է ընձեռում հստակ պատկերացում ունենալու այս կամ այն աշխատողի մասին, իմանալու նրա ուժեղ ու թույլ կողմերը, սկզբունքային, օբյեկտիվ մոտեցում ցուցաբերելու կադրերի տեղաբաշխման գործում։ Կադրերի ատեստավորման ուսանելի փորձ է կուտակված, օրինակ, «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումում։

Ատեստավորումը ո՛չ միայն արդյունաբերության, այլև շինարարության, տրանսպորտի, տնտեսության մյուս ճյուղերի խոստումնալից մասնագետների բացահայտման, գիտելիքների, պրոֆեսիոնալ մակարդակի որոշման միջոց է։ Այն մեծ հնարավորություններ է ընձեռում նաև սպասարկման բնագավառում գործերի վիճակը բարելավելու առումով։ Կուսակցական մարմինները ձգտում են, որպեսզի սպասարկման ոլորտում դրա կիրառումն իրոք բարձրացնի առևտրի, հասարակական սննդի,բնակչության կենցաղսպասարկման օբյեկտների և ձեռնարկությունների աշխատանքի մակարդակը։ Սակայն փաստերը ցույց են տալիս, որ մինիստրությունների կուսկազմակերպությունների ոչ բավարար ուշադրության հետևանքով որոշ դեպքերում ատեստավորումը չի նպաստում աշխատանքի արդյունավետությանը, հանձնարարված գործի նկատմամբ ղեկավարների և մասնագետների պատասխանատվության, որակավորման և հատկապես գաղափարաքաղաքական մակարդակի բարձրացմանը։ Այս ամենի կոնկրետ արտահայտությունը կարելի է տեսնել Երքաղսովետի գործկոմի հասարակական սննդի վարչությունում։ Հասարակական սննդի ասպարեզում առկա լուրջ թերությունների պայմաններում վարչության 120 օբյեկտների դիրեկտորներից ու նրանց տեղակալներից ատեստավորման ընթացքում միայն 3-ը, իսկ 1615 մասնագետներից ու նյութական պատասխանատու անձերից միայն 46-ն են ճանաչվել անհամապատասխան իրենց զբաղեցրած պաշտոններին։ Վարչության համակարգում աշխատում են սոցիալիստական ունեցվածքի հափշտակության, սովետական առևտրի կանոնների խախտման, հանցագործությունների համար նախկինում դատապարտված 31 մարդ։

Կուսքաղկոմը շրջկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրել է ատեստավորումն անաչառության, բարձր սկզբունքայնության և պատասխանատվության պայմաններում անցկացնելու վրա։ Խնդիրն այն է, որ դրանք ծառայեն իրենց նպատակին, ամեն կերպ նպաստեն աշխատողների ունակությունների բացահայտմանը, նրանց մասնագիտական և գաղափարական աճին, լուրջ կերպով օգնեն կադրային ռեզերվի ստեղծմանը։

Կադրերի մասնագիտական պատրաստականության բարձրացման, նրանց կոմունիստական աշխարհայացքի ձևավորման գործում վճռական դեր է խաղում մարքս-լենինյան կրթության սիստեմը։ Վերջին տարիներս էականորեն բարելավվել է ղեկավար կադրերի հետ տարվող գաղափարական աշխատանքը։ Առաջին հերթին նրանց ուսուցումը կազմակերպվում է ՀԿԿ Երքաղկոմի մարքսիզմ-լենինիզմի համալսարանում։ Այստեղ կուսակցական-տնտեսական ակտիվի, գաղափարական կադրերի ֆակուլտետներում սովորում են ավելի քան 1250 ղեկավար և ինժեներատեխնիկական աշխատողներ, ժողտնտեսության տարբեր բնագավառների առաջատար մասնագետներ։ Շրջկոմներին առընթեր գործում են կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոցներ, սեմինարներ։ Անհամեմատ բարելավվել է քաղաքական լուսավորության ցանցի գործունեությունը։

Այսօր, երբ առանձնապես կարևորվում են կուսակցության տնտեսական քաղաքականության հարցերը, մեծ նշանակություն է ստանում կադրերի տնտեսագիտական կրթությունը։ «Սխալ է կարծել,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,—



թե տնտեսական օրենքների հետ իբր գործ ունեն միայն մեծ գիտնականները և ղեկավարները։ Այդ օրենքները, եթե դրանք ճիշտ հասկանան, վարքագծի տրամաբանություն են թելադրում ո՛չ միայն ադմինիստրատորին, ինժեներին, գիտնականին, տեխնիկին, այլև յուրաքանչյուր շարքային բանվորին, կոլտնտեսականին» (Լենինյան կուրսով, հ. 1, էջ 521)։ Քաղաքի հիմնարկ-ձեռնարկություններում գործող տնտեսագիտական դպրոցներում ու սեմինարներում ունկնդիրները հարստացնում են իրենց տնտեսական գիտելիքները, քննարկում են արտադրության արդի պրոբլեմները։

Գաղափարաքաղաքական դաստիարակության արդյունավետության չափանիշը մարդկանց վրա թողած ազդեցությունն է, առաջադրված խնդիրներն ինքնուրույն և ճիշտ լուծելու նրանց կարողությունը։ Հետևաբար, կադրերի գաղափարաքաղաքական դաստիարակության կազմակերպման գործին գիտական, ստեղծագործական մոտեցումը հույժ անհրաժեշտություն է, սակայն միշտ չէ, որ այդ խնդիրը գտնվում է կուսշրջկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում։

Կադրային քաղաքականության ճիշտ իրականացման գործում չափազանց կարևոր է կադրերի հաստատուն ռեզերվի առկայությունը։ Նման ռեզերվի ստեղծումը հնարավորություն է ընձեռում պահպանելու ղեկավար կադրերի հաջորդականությունը։

Ռեզերվի ստեղծումը բնավ էլ առաջքաշման ենթակա անձանց ցուցակ կազմելը չէ, ինչպես մեզ մոտ հաճախ արվում է։ Իրական ռեզերվի ստեղծումը ենթադրում է կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ընտրովի ակտիվի, նշված կազմակերպություններում հասարակական հիմունքներով աշխատող ակտիվիստների հետ տարվող աշխատանքի արմատական բարելավում։ Ռեզերվում գտնվող ընկերների հետ անհրաժեշտ է մշտական աշխատանք տանել՝ նրանց ընդգրկել կուսժողովներում, կուսակցության քաղկոմի ու շրջկոմների բյուրոներում քննարկվելիք հարցերի նախապատրաստմանը, աշխատավորների դիմումների, գանգատների, նամակների ուսումնասիրմանը, դասախոսությունների և զեկուցումների ընթերցումներին։ Վերջապես, շատ կարևոր է, որպեսզի այդ ընկերները փորձ ձեռք բերեն այն պաշտոնական պարտականությունների հասարակական կարգով կատարման ասպարեզում, որոնց համար նրանք նախատեսվում են։

Ուսումնասիրությունները, սակայն, ցույց են տալիս, որ ռեզերվում ընդգրկված ոչ բոլոր կադրերի հետ է այդպիսի աշխատանք տարվում։ Ակտիվիստների որոշ մասը, որոնք ժամանակին և բարեխղճորեն կատարում են քաղկոմի, շրջանային կոմիտեների, քաղաքային և շրջանային սովետների գործկոմների հանձնարարությունները, մշտապես ծանրաբեռնված են, իսկ մեծ մասը տարվա ընթացքում ոչ մի հանձնարարություն չի ստանում։ Իբրև հետևանք այդ բանի, մենք միշտ չէ, որ հստակ պատկերացում ունենք, թե ինչպես են նրանք իրենց արտադրական գործունեությունը զուգակցում հասարակական-քաղաքական աշխատանքներին, որքանով են կապված աշխատավորական լայն զանգվածների հետ, կառավարման ինչպիսի հմտություններով են օժտված, ինչպես են դրսևորվում իրենց կազմակերպչական ունակությունները։ Այս կարգի թերությունների առումով բավական բնորոշ է ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրության օրինակը։ Այստեղ ցուցակներում չեն ընդգրկված բոլոր առաջատար մասնագետներն ու ղեկավար աշխատողները, ռեզերվի ցուցակի ստեղծման օրվանից (այսինքն՝ երեք տարվա ընթացքում) այն չի վերանայվել, թարմացվել, նրանում ընդգրկված ընկերների հետ համապատասխան աշխատանք չի տարվել, չի կիրառվել ապարատի աշխատողներին ժամանակավորապես արտադրության ղեկավարներ նշանակելու և նրանց գործունեությանը հետևելու պրակտիկան։ Հավանաբար այդ է պատճառը, որ մինիստրության ապարատից, «Հայուղևորտրանս» տրեստից ավտոձեռնարկությունների ղեկավարներ նշանակված ընկերները չկարողացան արդարացնել իրենց նկատմամբ ցուցաբերված վստահությունը։

Կուսքաղկոմի կողմից քաղսովետի գործկոմի հասարակական սննդի վար-

չության համակարգում կատարած ստուգումների ընթացքում աղաղակող թե-
րություններ հայտնաբերվեցին կադրերի ընտրության և տեղաբաշխման գոր-
ծում։ Այստեղ ևս ռեզերվի բացակայության պատճառով բավականին երկար
ժամանակ ղեկավար շատ պաշտոններ չեն կոմպլեկտավորվում։ Վարչության
համակարգում բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթություն ունե-
ցող 1149 աշխատողներից 306-ը աշխատում են ոչ ըստ մասնագիտության։
Վարչության ապարատում և նրա օրեստներում ղեկավար պաշտոններ զբա-
ղեցնում են մասնագիտական կրթություն չունեցող բազմաթիվ անձինք. գյու-
ղատնտես, ուսուցիչ, անասնաբույժ, անասնաբույծ, երկաթուղային տրանսպոր-
տի ինժեներ, իրավաբան— ո՞ւմ ասես որ չի կարելի հանդիպել հասարակական
սննդի ղեկավար և նյութական պատասխանատու աշխատողների շարքերում։
Միաժամանակ կան ոչ քիչ թվով համապատասխան կրթություն ունեցող մաս-
նագետներ, որոնք զբաղված են շարքային աշխատանքով։

Կայուն ռեզերվի ստեղծման գործում էական է ուսումնական հաստատու-
թյունների դերը։ Բուհերի և միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաս-
տատությունների շրջանավարտների գիտելիքների խորությամբ, քաղաքական-
գաղափարական կոփվածքով, մասնագիտական պատրաստության բարձր մա-
կարդակով են պայմանավորված նրանց հետագա գործունեության արգասաբե-
րությունը, ժողովրդական տնտեսության և մշակույթի բոլոր բնագավառներում
աշխատանքի ու հասարակական արտադրության արդյունավետության բարձ-
րացումը։ Կուսկազմակերպությունների պարտքն է այս խնդիրները մշտապես
պահել իրենց տեսադաշտում։

Հարկ է նշել, սակայն, որ ոչ բոլոր ուսումնական հաստատություններում է
ապահովվում դաստիարակության գործի նկատմամբ կոմպլեքսային մոտեցու-
մը։ Եվ բոլորովին պատահական չէ, որ այդ հաստատություններում ուսանո-
ղության մի մասը հանդես է բերում քաղաքական պասսիվություն, չի մասնակ-
ցում հասարակության առջև ծառացած խնդիրների լուծման համար մղվող
պայքարին, դրսևորում է քաղքենիական տրամադրություններ։ Նրանցից ոմանք
նույնիսկ խուսափում են նշանակված վայրում աշխատելուց. վերջին հինգ տա-
րում, օրինակ, Բրյուսովի անվան մանկավարժական ինստիտուտի 2098 շըր-
ջանավարտներից միայն 1232-ն են ներկայացել նշանակման վայրը։ Նման
փաստերը, ինչ խոսք, պետք է խորապես հուզեն բուհերի կուսակցական ու
կոմերիտական կազմակերպություններին։

Կադրային քաղաքականության առանցքային խնդիրներից մեկը ավագ և
երիտասարդ կադրերի ճիշտ զուգակցումն է։ Ղեկավար աշխատանքում երիտա-
սարդ թարմ ուժերի ներգրավումը հաջորդականության ապահովման համար
կուսակցության վարած քաղաքական կուրսի անհրաժեշտ պայմանն է։ Ավագ-
ների գիտելիքներին ու փորձին երիտասարդների ավյունի ու խանդավառության
զուգակցմամբ հնարավորություն է ընձեռվում բարձրացնելու հասարակական
կյանքի բոլոր կողմերի ղեկավարման մակարդակը։

Կադրերի ռեզերվի ստեղծման լավ բազա է կոմերիտմիությունը։ Այստեղ
թրծվել ու ղեկավարման հմտություններ են ձեռք բերել այսօրվա ղեկավար շատ
կադրեր։ Իրականացնելով կուսակցության ռեզերվի ֆունկցիան, կոմերիտմիու-
թյունն իր շարքերում նախապատրաստում է կուսակցության նոր համալրում։
Երևան քաղաքում 1976—1977 թթ. ՍՄԿԿ շարքերն ընդունվածների մեջ կոմե-
րիտականները կազմում են 72,1 տոկոսը, որը 1972—1975 թթ. համեմատու-
թյամբ 6,5 տոկոսով բարձր է։ Կուսակցության շարքերն ընդունված կոմերի-
տական ակտիվիստները երիտասարդ ղեկավար կադրերի պատրաստման հիմ-
նական աղբյուրն են։ Եվ այս հարցում շատ կարևոր է սկզբնական կուսկազմա-
կերպությունների դերը։

Քաղաքի շատ կուսկազմակերպություններում երիտասարդ կոմունիստներն
աստիճանաբար ընդգրկվում են կուսակցական աշխատանքի մեջ, կատարում
կուսակցական տարբեր հանձնարարություններ։ Շատերի համար նման հանձ-
նարարություն է կոմերիտմիության մեջ աշխատելը։ Քաղաքի կոմերիտական
կազմակերպությունների քարտուղարների 51,3 տոկոսը ՍՄԿԿ անդամներ կամ



թեկնածուներ են, կոմերիտական կազմակերպությունների ազատված քարտու-
ղարների մեջ այդ տոկոսը հասնում է 72-ի։

Սակայն ոչ բոլոր տեղերում է, որ երիտասարդ կոմունիստների հետ տար-
վող աշխատանքը բարեհաջող է կազմակերպված։ Առանձին կուսկազմակեր-
պություններում հաշվի չի առնվում այն կարևոր հանգամանքը, որ երիտասարդ
կոմունիստներին կոմերիտական աշխատանքի ուղարկելն ավելի է բարձրաց-
նում կուսակցության ազդեցությունը աճող սերնդի վրա, և որ դա միաժամանակ
երիտասարդ կադրերին պրակտիկ աշխատանքի մեջ ընդգրկելու նախապատ-
րաստական փուլ է։

ՍՄԿԿ XXV համագումարին Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ
Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Այն հզոր լծակը, որով կուսակցությունը ներգործում է
հասարակական զարգացման ընթացքի վրա, նրա կադրային քաղաքականու-
թյունն է» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 104)։ Այդ քաղաքականու-
թյունը հետևողականորեն վարել և վարում է կուսակցությունն իր պատմության
բոլոր փուլերում։ Այժմ, գիտատեխնիկական առաջընթացի պայմաններում, երբ
ավելի են բարդանում մեր ծրագրերը, երբ օրավուր ծագում են նոր պրոբլեմներ,
կադրերի հետ տարվող աշխատանքն է՛լ ավելի մեծ կարևորություն է ձեռք բե-
րում։ Վերջերս քաղկոմի պլենումը գործարար մթնոլորտում քննարկեց «Ղեկա-
վար կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության վիճակը և
քաղաքի կուսակցական կազմակերպությունների խնդիրները՝ ՍՄԿԿ XXV հա-
մագումարի որոշումների լույսի ներքո» հարցը։ Ընդհանրացնելով ու արժեքա-
վորելով այդ ասպարեզում կուտակած ուսանելի փորձը և ձեռք բերած հաջո-
ղությունները՝ պլենումը միաժամանակ բացահայտեց լուրջ թերություններ և
շրջկոմներից ու սկզբնական կուսկազմակերպություններից պահանջեց՝ կու-
սակցական սկզբունքայնությամբ ուսումնասիրել կատարած աշխատանքը, ար-
մատապես բարելավել կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարա-
կության գործը, ղեկավար և պատասխանատու պաշտոններում նշանակելիս
օբյեկտիվորեն հաշվի առնել յուրաքանչյուրի գործնական և քաղաքական հատ-
կանիշները, մարդկանց հետ աշխատելու նրանց ունակությունները։ Մեր խըն-
դիրն է՝ կադրային քաղաքականության մեջ վճռականորեն արմատախիլ անել
պրոտեկցիոնիզմը, բացառել անձնական նվիրվածության նկատառումները,
ամեն տեսակի շեղումները կադրերի ընտրության և տեղաբաշխման լենինյան
սկզբունքներից։

Կադրային ճիշտ քաղաքականության իրականացմամբ է մեծապես պայ-
մանավորված կուսակցության առաջադրած սոցիալ-տնտեսական և քաղաքա-
կան վիթխարի խնդիրների հաջող լուծումը, տասներորդ հնգամյակի պլանային
առաջադրանքների անթերի կատարումը։

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆԸ

**ՄԱՆՈՒԿ ՄԿՐՏՉՅԱՆ**
Տնտեսագիտության թեկնածու, դոցենտ

*ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ մեր երկրում հնարավորություն ընձեռեց իրականացնելու սոցիալ-տնտեսական, քաղաքական ու կուլտուրական մեծ վերափոխումներ։ Տնտեսական առաջընթացի, սոցիալիստական արտադրահարաբերությունների կատարելագործման, սովետական հասարակության գաղափարաքաղաքական միասնությունն ապահովելու հիման վրա ստեղծվեց մարդկային համակեցության նոր ձևը՝ սոցիալիստական ապրելակերպը։*

*Սոցիալիստական ապրելակերպը որակապես նոր երևույթ է, սոցիալիզմի հաստատման կարևոր պայմանը և կոմունիստական ապրելակերպին անցնելու անհրաժեշտ նախադրյալը։*

*Հասարակության անդամների ապրելակերպը որոշվում է ինչպես տվյալ երկրի արտադրահարաբերություններով, այնպես և բնական-աշխարհագրական պայմաններով ու սոցիալ-ազգային առանձնահատկություններով։ Այդ գործոններից վճռական դեր ունեն արտադրահարաբերությունները, որովհետև դրանց հիմքում ընկած արտադրամիջոցների սեփականության ձևը որոշում է անհատի, սոցիալական խմբի կամ ողջ հասարակության ապրելակերպի բովանդակությունը։ Կ. Մարքսն արտադրության եղանակը համարում է ոչ միայն նյութական բարիքների վերարտադրություն, այլ առավելապես անհատների գործունեության որոշ եղանակ, «նրանց կենսագործունեության որոշ տեսակ, նրանց որոշ* ապրելակերպ։ *Ինչպիսին անհատների կենսագործունեությունն է, այդպիսին էլ նրանք են» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս,* Ընտիր երկեր, *հ. 1, 1972 թ., էջ 11)։ Մարդկանց կենսագործունեությունը նրանց կենսական ակտիվության բոլոր այն ձևերի ընդհանրությունն է, որոնք, դրսևորվելով նյութական արտադրության մեջ կամ հոգևոր կյանքում, ուղղված են բնության ու հասարակության զարգացման օրինաչափությունները ճանաչելու և այն վերափոխելու նպատակներին։ Հակոտնյա հարաբերություններով օժտված հասարակությունում չի կարող լինել տարբեր դասակարգերի, սոցիալական խմբերի, ազգերի և ռասաների միասնական ապրելակերպ։ Կապիտալիզմի օրոք, օրինակ, բուրժուազիան, ապրելով շքեղության մեջ, տարեցտարի ավելի է մեծացնում իր հարստությունը, իսկ աշխատավորները հարկադրված են բավարարվել իրենց տքնաջան աշխատանքով ստեղծված սակավ միջոցներով՝ մշտապես ունենալով դրանից էլ զրկվելու վախի զգացում։ Բուրժուական ապրելակերպին բնորոշ գործազրկությունը, հանցագործությունների աճը, բարոյական սանձարձակությունը և բազմաթիվ այլ արատներ մասնավոր սեփականության վրա հիմնված հասարակական տնտեսական հարաբերությունների ծնունդ են։ Նման ապրելակերպի ձևավորումը և դրա հետագա գոյությունը համապատասխանում են տիրապետող դասակարգի՝ բուրժուազիայի շահերին և բխում են մարդու կողմից մարդուն շահագործելու բուրժուական բարոյականությունից։*



*Սոցիալիզմի ժամանակ բանվոր դասակարգը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, պայքարում է հասարակության բոլոր անդամների միասնական ապրելակերպի ստեղծման համար։ Առաջացած նյութական, սոցիալ-քաղաքական և հոգևոր նախադրյալներն արմատապես փոխում են աշխատավորների տնտեսական ու քաղաքական դրությունը։ Նրանք այլևս հին հասարակության ճնշվածներն ու շահագործվողները չեն, այլ արտադրամիջոցների սեփականատերերը, հասարակության սոցիալական այն հզոր ուժը, որը սահմանում է զարգացման հետագա ուղին։ Հասկանալի է, որ նոր իրավիճակում դրսևորվում է բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության և մտավորականության, հասարակության բոլոր անդամների կենսագործունեության նոր բովանդակությունը։*

*Սոցիալիզմի օրոք արտադրությունը զարգանում է ողջ հասարակության, նրա անդամների շահերին համապատասխան։ Այդ էական առանձնահատկությունը դրսևորվում է աշխատավորների կոլեկտիվիզմի և փոխադարձ օգնության վրա հիմնված ապրելակերպում։ Այստեղ շահերի ընդհանրությունն իր հերթին առաջացնում է առանձին անհատների, կոլեկտիվների և ողջ հասարակության գործողությունների միասնություն, սոցիալիստական կոլեկտիվիզմ։ Դա հասկանալի է, քանի որ, ինչպես Ֆ. Էնգելսն է ասում, այնտեղ, որտեղ չկա շահերի ընդհանրություն, չի կարող լինել նաև նպատակների ու գործողությունների միասնություն (տե՛ս* К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 8, стр. 14)։

*Վերարտադրելով սոցիալիստական ապրելակերպի հիմնական հատկանիշը՝ աշխատավորների գիտակցված համախմբվածությունը, ողջ հասարակության առջև կոլեկտիվի և առանձին անհատի բարձր պատասխանատվությունը, կոլեկտիվիզմը նոր բովանդակություն է հաղորդում արտադրահարաբերություններին, նպաստում արտադրաուժերի հետագա վերելքին, նյութական բարիքների արտադրության աճին։*

*Սոցիալիստական ապրելակերպում վճռական նշանակություն ունի մարդու աշխատանքային կենսագործունեությունը, որովհետև դրանով են պայմանավորված նրա ունեցած դերը և դիրքը հասարակության մեջ։ Այստեղ մարդու աշխատանքային կենսագործունեության առանձնահատկությունն առաջին հերթին պայմանավորված է աշխատանքի համընդհանուր բնույթով, նրանով, որ այն պարտադիր է հասարակության բոլոր անդամների համար։ Ընդ որում, հասարակական արտադրության պլանաչափ համամասնական վարումը հնարավորություն է ընձեռում, որպեսզի յուրաքանչյուր աշխատունակ քաղաքացի ապահովվի համապատասխան աշխատանքով, դրա շնորհիվ իսպառ վերացվում է կապիտալիզմին հատուկ մարդկային աշխատուժի զանգվածային կորուստը՝ գործազրկությունը։*

*Համընդհանուր զբաղվածությունը հասարակական արտադրության մեջ, մարդու լիակատար վստահությունն իր ընդունակությունների և մասնագիտությանը համապատասխան աշխատանք ստանալու գործում սոցիալիստական ապրելակերպն օժտում են բացառիկ կայունությամբ։ Դա միաժամանակ մեծապես ամրապնդում է մարդկանց հավատը վաղվա օրվա նկատմամբ և բարեբար ներգործում հասարակության բոլոր անդամների ներաշխարհի վրա։ Ուստի, սոցիալիզմի ժամանակ աշխատանքը դառնում է ո՛չ միայն կյանքի և մարդու անհատական ու սոցիալական բազմաթիվ այլ պահանջմունքների բավարարման, այլև նրան հոգեպես հարստացնելու, նրա ունակություններն իրացնելու միջոց։ Իր և հասարակության համար կատարվող աշխատանքի գիտակցումը խթանում է մարդու նախաձեռնությունը, մղում նրան նորանոր սխրանքների։ Պարզորոշ են դառնում Վ. Ի. Լենինի այն խոսքերը, թե «Ուրիշի համար հարյուրամյակներ աշխատելուց, շահագործողների համար հարկադրական աշխատանք կատարելուց հետո առաջին անգամն է հնարավորություն ստեղծվում* իր համար աշխատելու, *այն էլ այնպիսի աշխատանքի հնարավորություն, որը հենվում է նորագույն տեխնիկայի ու կուլտուրայի բոլոր նվաճումների վրա» (Վ. Ի. Լենին,* Երկեր, *հ. 26, էջ 495)։ Սոցիալիզմի ժամանակ հասարակության անդամների փոխադարձ օգնության ու համագործակցության հիմքի վրա ծա-*

րական ճամբարների ձրի կամ արտոնյալ գներով ուղեգրերի հատկացման և բազմաթիվ այլ նպատակներով։

Արտադրության աննախընթաց վերելքը մեր երկրում մեծացրեց նաև սպառման հասարակական ֆոնդերի չափը, որոնց ծավալը միայն վերջին երկու հնգամյակում աճեց 2,2 անգամ։ Ներկայումս սպառման հասարակական ֆոնդերի նշանակալի մասը ծառայում է բնակչության սոցիալական ապահովության նպատակներին։ Մեր երկրում այժմ մոտ 46 միլիոն մարդու վճարվում է կենսաթոշակ։ Սովետական մարդուն քաջ հայտնի է, որ ծերության կամ աշխատունակությունը կորցնելու դեպքում հասարակությունն իրեն կապահովի նյութական միջոցներով։ Դա սոցիալիստական ապրելակերպի կարևոր առանձնահատկությունն է, մարդու նկատմամբ հասարակության հոգատարության վառ դրսևորումը։

Մարդկության պատմության մեջ առաջին անգամ միայն սոցիալիզմը հնարավորություն ընձեռեց հասարակության անդամների առողջության պահպանումն իրականացնել ընդհանուր ուժերով, երբ հիվանդությունների բուժումը, դրանց կանխարգելումը, այսինքն ամբողջ բուժսպասարկումը կատարվում է հասարակության հաշվին՝ անվճար։ Դեռ ավելին, հասարակությունը հոգում է նաև աճող սերնդի ֆիզիկական դաստիարակության մասին, ձգտում, որպեսզի ամուր ու առողջ լինի ապագա կոմունիստական հասարակարգի յուրաքանչյուր քաղաքացի։ Միայն 1975 թ. ՍՍՀՄ-ում սպառման հասարակական ֆոնդերի հաշվին առողջապահությանն է հատկացվել մոտ 13 մլրդ ռուբլի, որը գրեթե երկու անգամ գերազանցում է 1965 թ. հատկացված միջոցներին։ Սանատորիաներում և հանգստյան տներում իններորդ հնգամյակում ձրի կամ արտոնյալ պայմաններով բուժվել կամ հանգստացել են ավելի քան 123 մլն մարդ, այսինքն երկրի բնակչության գրեթե կեսը։ Միայն 1977 թվականին 21 մլն երեխաներ և չափահասներ ամառային ամիսներին հանգստացել են պիոներական ու դպրոցական ճամբարներում։

Սոցիալիստական ապրելակերպի առանձնահատկությունը բնութագրվում է ո՛չ միայն հասարակության կողմից մարդկանց երաշխավորված նյութական ապահովությամբ և առողջության պահպանությամբ, այլև նրանց կուլտուր-կրթական մակարդակի բարձրացման անհրաժեշտությամբ։ Սովետական երկրի քաղաքացին իրավունք ունի հասարակության հաշվին ստանալու իր ձգտումներին ու հակումներին համապատասխան կրթություն։ Միայն 1976—77 ուստարում երկրի ուսումնական հաստատություններում սովորողների ընդհանուր թիվը հասնում էր 93,7 միլիոնի։ Հասարակության անդամների զանգվածային ձգտումը՝ լուսավորության և կրթության, հատուկ է սոցիալիստական ապրելակերպին և բխում է մարդու հոգևոր զարգացման նրա պահանջներից։

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը տարեցտարի ավելացնում են լուսավորությանն ու կրթությանը հատկացվող միջոցները։ Դրանք ծախսվում են ուսումնական հաստատությունների ցանցի ընդարձակման, դրանց նյութական բազայի հարստացման, ընդհանրապես ուսման պրոցեսի բարելավման նպատակով։

Սպառման հասարակական ֆոնդերի հաշվին իրականացվում է նաև երկրի բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկումը։ Մարդու կուլտուր-կենցաղային պահանջմունքների բավարարումը հիմնական դեր ունի ինչպես աշխատուժի վերարտադրության, այնպես և նրա բազմակողմանի զարգացման գործում։ Այստեղ հատկապես կարևոր նշանակություն ունի բնակելի ֆոնդի մեծացումը, որը հիմնականում կատարվում է պետության հաշվին։

Սովետական իշխանության տարիներին կոմունիստական կուսակցությունը մշտապես մեծ ուշադրություն է հատկացրել բնակարանային շինարարությանը։ Բավական է նշել, որ միայն իններորդ հնգամյակում շահագործման հանձնվեց ավելի քան 11,2 մլն բնակարան՝ մոտ 545 մլն քմ ընդհանուր տարածությամբ։ Իսկ ընթացիկ հնգամյակի ժողովրդատնտեսական պլանով նախատեսվում է կատարել 550 մլն քմ նոր բնակելի շինարարություն։ Դա մեծապես կբարելավի սովետական մարդկանց բնակարանային պայմանները և հնարավորություն



կընձեռի աստիճանաբար արմատավորելու սահմանված ռացիոնալ նորմաները։

Զարգացած սոցիալիստական հասարակության արդի ժամանակաշրջանում սպառման հասարակական ֆոնդերի աճը գերազանցում է ըստ աշխատանքի վարձատրության գումարների աճին։ Այսպես, տասներորդ հնգամյակում բանվոր-ծառայողների միջին աշխատավարձի 16—18, իսկ կոլտնտեսականների եկամուտների 24—27 տոկոս աճի պայմաններում, սպառման հասարակական ֆոնդերի հաշվին բնակչությանը տրվող վճարումներն ու արտոնությունները կաճեն 28—30 տոկոսով։ Նման քաղաքականությունը բացատրվում է կոմունիզմի կառուցման արդի փուլում սպառման հասարակական ֆոնդերի բացառիկ դերով։ Սպառման հասարակական ֆոնդերի հաշվին նյութական և հոգևոր բարիքների բաշխումն այժմ արդեն մասամբ կատարվում է ըստ պահանջմունքների։ Դրանով իսկ բնակչության լայն խավերը նախապատրաստվում են ըստ պահանջմունքների կոմունիստական բաշխման ձևին, նոր ապրելաձևին, ձեռք են բերում անհրաժեշտ համապատասխան սովորույթներ։

Սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի ազդեցությամբ մարդկանց անձնական պահանջմունքները ստանում են հասարակական ճանաչում և ձևավորվում պլանաչափորեն։ Ուստի, զարգացած սոցիալիզմի արդի փուլում հնարավորություն է ընձեռվում տարբեր ապրանքների արտադրությունը պլանավորելիս հաշվի առնել ինչպես դրանց նկատմամբ բնակչության պահանջմունքները, այնպես էլ մեկ անձի համար անհրաժեշտ ռացիոնալ սննդի կամ արդյունաբերական ապրանքների օպտիմալ նորմաները։ Ներկայումս արդեն հնարավոր է դառնում մարդու սպառողական կառուցվածքի ու չափի որոշումը հասարակության կողմից պլանաչափորեն՝ ռացիոնալ սպառման պահանջներին համապատասխան։ Դա, իհարկե, չի նշանակում բռնացում մարդու անհատական հակումների ու ճաշակի վրա։ Հասարակության անդամների անձնական սպառման գիտականորեն հիմնավորված նորմաները կզուգակցվեն նրանց անհատական հակումների, ճաշակի, ազգային սովորույթների հետ՝ հօգուտ այդ բոլորի ներդաշնակ զարգացման։

Կուսակցության սոցիալական ծրագիրը, որը սերտորեն միահյուսված է նրա տնտեսական ծրագրի հետ, հետապնդում է մի նպատակ՝ ստեղծել զարգացած սոցիալիզմին համապատասխան կենսագործունեություն, միասնական ապրելակերպ։

Սովետական էկոնոմիկան հասել է զարգացման այնպիսի աստիճանի, երբ մարդկանց պահանջմունքների բավարարումը դառնում է հետագա առաջընթացի պայմանը։ Սոցիալիզմի ժամանակ առավելագույնս է գործում պահանջմունքների մեծացման օրենքը, ըստ որի առաջին՝ նյութական բնույթի պահանջմունքների բավարարումից հետո մեծանում է սոցիալական և հոգևոր պահանջմունքների բավարարման դերը. հասարակական գործունեության ծավալումը, գիտելիքների համալրումը, բարձր կուլտուրան և այլն։ Այդ բոլորը վկայում է, որ ավելի է հարստանում ապրելակերպի բովանդակությունը։ Աստիճանաբար ավելի ու ավելի է մեծանում բազմակողմանիորեն զարգացած, ակտիվ աշխատանքային գործունեություն ծավալող մարդկանց թիվը։ Ուստի սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման գործում պետք է ելնել այն սկզբունքից, որ բնակչության բարեկեցությունը բարձրացնելու նպատակով հեռանկարային պլանավորումն այսուհետ բխի ոչ թե զարգացման միջին մակարդակ ունեցող հասարակության անդամի, այլ նրա առավել գիտակից ու կուլտուրական մասի պահանջմունքներից։ Զարգացած անհատի պահանջմունքների բավարարումը, նրա ապրելակերպը պետք է հանդիսանան այն ուղենիշը, որով և կսահմանվեն մեր հասարակության բոլոր անդամների ապագա պահանջմունքները։

Սոցիալիստական հասարակարգում բնակչության բարձր կենսամակարդակի ապահովումը, նրա աշխատանքի թեթևացումը բարենպաստ պայմաններ են ստեղծում անհատի ստեղծագործական ունակությունների դրսևորման համար։ Սակայն ապրելակերպն ամբողջությամբ սոսկ նյութական բարեկեցությամբ չի պայմանավորվում, և բարեկեցության ամենաբարձր մակարդակը դեռևս ամենակատարյալ ապրելակերպը չէ։ Ամենակատարյալ ապրելակերպը, այսինքն

հասարակության բոլոր անդամների շահերից բխող մարդկանց կենսագործունեությունը կարող է ծավալվել նույնիսկ նվազագույն կենսական բարիքների և հարմարությունների պայմաններում: Հիշենք սոցիալիզմի շինարարության առաջին տարիները, երբ տնտեսական ծանր պայմաններում մեր երկրի ողջ աշխատավորությունը ստեղծագործական եռանդով ու ավյունով ձեռնամուխ էր եղել ժողովրդական տնտեսության վերականգնմանը, նվիրումով կառուցում էր իր և գալիք սերունդների ապագան: Դա ոչ բարձր կենսամակարդակի պայմաններում նոր ապրելակերպի առաջին դրսևորումն էր և պայքար դրա ավելի բարձր մակարդակ նվաճելու համար: Այդ շրջանում սաղմնավորվեց, իսկ հետագայում ավելի հաստատվեց անհատական պահանջմունքների համեմատ հասարականի առաջնության ճանաչումը՝ որպես սոցիալիստական համակեցության ձև: Այստեղից հետևում է, որ սխալ է ապրելակերպը մարդու գոյության միայն նյութական պայմաններին հանգեցնելը: Հօգուտ դրա է խոսում նաև այն փաստը, որ սոցիալիստական և կապիտալիստական տարբեր երկրներում կարող են լինել նյութական բարեկեցության նույնանման պայմաններ, սակայն արմատապես տարբեր ապրելակերպեր: Ուրիշ են սոցիալիստական և կապիտալիստական երկրների քաղաքացիների ձգտումները, նրանց վարքագիծը, ապագայի մասին պատկերացումները:

Գիտական սոցիալիզմն անհատի համակողմանի ու ներդաշնակ զարգացումը զուգակցում է նրա նյութական բարձր ապահովվածության հետ, որը հասարակության մեծ մասի կողմից դիտվում է որպես գիտակցված անհրաժեշտություն: Եվ քանի որ աստիճանաբար լուծվում է նյութական բարեկեցության հարցը, ապա վճռական նշանակություն է ստանում մարդկային անհատի հոգևոր զարգացման խնդիրը: Այս դեպքում արդեն հասարակության ուշադրությունն ավելի մեծ չափով նվիրվում է մարդու հոգևոր պահանջմունքների առավելագույն չափով բավարարման նպատակին:

Զարգացած սոցիալիզմի արդի փուլում մարդկանց գերակշռող մասի կենսագործունեության բազմակողմանիությունն ու նրանց հոգևոր հարստության դրսևորումներն ավելի մեծ չափերով են դառնում հասարակության զարգացման չափանիշ: Անձնական պահանջմունքների բավարարումը աստիճանաբար կդադարի մարդկային ակտիվության, նրա աշխատանքային կենսագործունեության հիմնական շարժիչը լինելուց: Դա ազատության նոր՝ կոմունիստական բովանդակությունն է: Այստեղ տիրապետում է մարդու ազատ, ներդաշնակ ստեղծագործական գործունեությունը, իր հակումներին համապատասխան բազմակողմանի զարգանալու հնարավորությունը:

Հասարակության բոլոր անդամների հոգևոր պահանջմունքների բավարարումը, հասարակության շահերին համապատասխան նրանց համակողմանի զարգացումն իրականացվում են մի շարք պայմանների առկայությամբ, որոնցում կարևոր նշանակություն ունեն ազատ ժամանակի ավելացումը, ծառայությունների ոլորտի ընդարձակումը և բնակչության սպասարկման կուլտուրայի բարելավումը: Ազատ ժամանակի ավելացումը հնարավորություն է ընձեռում, որպեսզի մարդիկ ավելի շատ զբաղվեն գիտությամբ, արվեստով, աճող սերնդի դաստիարակության հարցերով, ավելի լավ ու հետաքրքրական կազմակերպեն իրենց հանգիստը: Իր հերթին այդ բոլորը պոտենցիալ հսկայական ուժ է դառնում հասարակական արտադրաուժերը զարգացնելու և նյութական բարիքների ավելի մեծ քանակություն ստեղծելու համար: Խորիմաստ է Կ. Մարքսի հանճարեղ միտքն այն մասին, որ հասարակության հարստությունը որոշվում է ոչ թե աշխատանքային, այլ ազատ ժամանակի մեծությամբ:

Սոցիալիզմի ժամանակ աստիճանաբար վերանում են ազատ և աշխատանքային ժամանակի սահմանները: Մի կողմից աշխատանքը թեթևանում և վերածվում է անմիջական կենսական պահանջի, դադարում է հակադրվել հանգստին, մյուս կողմից հանգստի նոր՝ ակտիվ ձևերի զարգացումը, ստեղծագործության մուտքը կենցաղ նպաստում են աշխատանքի պրոցեսի թեթևացմանն ու կատարելագործմանը, նրա արտադրողականության բարձրացմանը: Հետզհետե ծնվում է այն հասարակությունը, որտեղ տիրապետում է մարդու սոցիալական, ազատ, ներդաշնակ, ստեղծագործական աշխատանքը:

---

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԻ ԱՌԹԻՎ

**Ս. Ա. ՄԽԻԹԱՐՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

Մեր ՍԵՐՈՒՆԴԸ դարձել է գիտության և տեխնիկայի աներևակայելի նվաճումների ականատեսն ու անմիջական գործադրողը: Միլիոնավոր մարդիկ, իրենց տանը նստած, հետևում են մեր մոլորակի բոլոր ծայրերում տեղի ունեցող օլիմպիական խաղերի ընթացքին, տիեզերագնացների գործողություններին՝ լուսնի մակերևույթի վրա, սլանում գերձայնային մարդատար օդանավերով...: Նորանոր հայտնագործությունները հաջորդում են իրար— մարդու օրգանների փոխպատվաստում և կառավարվող ջերմամիջուկային ռեակցիա, արագագործ դյուրակիր հաշվիչ մեքենաներ, ստերեոֆոնիկ վերարտադրություն և այլն: Դրանք և շատ այլ հայտնագործություններ դառնում են մարդու սեփականությունը. մարդը քաղում է իր և նախնիների աշխատանքի պտուղները: Սակայն, բացի այդ օրինաչափ իրավունքից, մարդն ունի նաև պարտավորություններ: Արդյունաբերական արտադրության ծավալուն մասշտաբների և գիտատեխնիկական առաջընթացի արագացող տեմպերի պայմաններում մեր սերնդի նվիրական պարտականությունն է մտահոգությունը գալիք սերունդների համար:

«Ելնելով ներկա և ապագա սերունդների շահերից,— նշված է մեր երկրի Հիմնական օրենքում,— ՍՍՀՄ-ում անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկվում հողի ու դրա ընդերքի, ջրային ռեսուրսների, բուսական ու կենդանական աշխարհի պահպանման և գիտականորեն հիմնավորված, ռացիոնալ օգտագործման համար, օդի և ջրի մաքրության պահպանման, բնական հարստությունների վերարտադրության, ապահովման և մարդու շրջակա միջավայրի բարելավման համար»:

Մենք իրավունք չունենք թույլ տալու, որ մեր հետնորդները շնչահեղձ լինեն մեր վրիպումներից, անփութությունից, անհեռատեսությունից ու անպատասխանատվությունից, ծավալելու ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխություն՝ անտեսելով դրա բացասական հետևանքները:

Գիտնականները հիմնավորված երկյուղ են արտահայտում, որ ինքնաթիռի շարժիչի այրման արտանետուքների պարունակած ազոտի օքսիդը «կլանում է» կենսաբանական պրոցեսների համար հույժ անհրաժեշտ օզոնը: Խիտ բնակեցված շրջաններում, հատկապես ամպամած կամ սմոգային օրերին, մարդկությունը ենթարկվում է «թթվածնային սովի»: Պատճա՞ռը. հողագնդի վրա երթևեկող ավելի քան 260 մլն ավտոմեքենաները «կլանում են» այնքան թթվածին, որքան սպառում է մեր մոլորակի ողջ բնակչությունը: Իսկ որքա՞ն թթվածին է սպառում ջերմային էլեկտրակայանների և էներգետիկ այլ կայանների հզոր ցանցը:

Տարեցտարի առավել զգալի է դառնում խմելու ջրի անբավարարությունը: Այդ, անշուշտ, սոսկ սանիտարահիգիենիկ նորմայի բարձրացման հետևանք չէ, այլ, հիմնականում, տեխնիկական նպատակներով ջրի անխնա, ոչ ռացիո-

նալ օգտագործման: Բավական է ասել, որ մեկ տոննա նավթի վերամշակման համար, միջին հաշվով, ծախսվում է մի քանի տոննա քաղցրահամ ջուր, իսկ մեկ տոննա պողպատի հալման՝ 30 տոննայից ավելի: Իսկ որքա՞ն հող (նաև պտղաբեր) է «կլանվում», մնալով լեռնաարդյունաբերական, շինարարական և այլ ձեռնարկությունների մնացուկների ու թափոնների տակ: Միաժամանակ պարզամիտ կլինի տագնապել միայն կենսականորեն անհրաժեշտ բնության պարգևների սոսկ «կլանման» համար: Շատ կարևոր է նաև ժամանակի ամենատագնապահարույց հարցերից մեկը՝ կենսոլորտի աղտոտումը, որը սերտորեն կապված է գիտատեխնիկական հեղափոխության հետ: Բավական է ասել, որ ներքին այրման շարժիչներով բանող ավտոմեքենաները տարեկան արտամղում են կենդանի օրգանիզմի համար վնասակար մոտ 200 մլն տոննա ածխածնի օքսիդ, 50 մլն տոննա տարբեր ածխաջրածիններ: Պողպատի ձուլման պրոցեսում ողջ աշխարհում ամեն տարի մթնոլորտ են արտամղվում մոտ 85 միլիոն տոննա ապականիչներ:

Շրջապատի աղտոտումը թունավոր քիմիական բաղադրամասերով մեծ կորուստներ է պատճառում ո՛չ միայն մեր կենդանական ու բուսական աշխարհին, այլև մեծ չափով՝ ոչ կենդանականին: Շրջակա միջավայրի գոտիներում սահմանված նորմայից ավելի աղտոտվածության դեպքում մետաղները ժանգոտում են: Այդպիսի գոտիներում ժամանակից շուտ «ծերանում են» հնամյա հուշարձանները և այլ հազվագյուտ կառույցներ:

Ջրային և օդային ավազանների աղտոտումը բացասաբար է անդրադառնում բոլոր կենդանի օրգանիզմների սննդի ու կերային բազայի վրա՝ կեղտոտված գետերում և ջրավազաններում ոչնչանում են ձկների վտառները, նվազում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, դրանց սննդային և կերային արժեքը: Այդ ամենից զատ և ամենից ավելի մարդու առողջության վրա բացասաբար է անդրադառնում գիտատեխնիկական առաջընթացին հետևող էկոլոգիական հավասարակշռության խախտվածությունը:

Մասնագետների մոտավոր հաշվումներով ներկայումս ազգային եկամտի ամեն մի ռուբլու ստեղծման համար ծախսվում են մոտ մեկ տոննա բնական նյութեր, մոտ նույնքան էլ արտանետվում է մթնոլորտ (պատրաստի արտադրատեսակների կշիռն այժմ կազմում է վերամշակվող նյութերի կշռի միայն մեկ տոկոսը), իսկ մեր երկրագնդի միայն մթնոլորտի աղտոտման ամենամյա վնասը գնահատվում է մոտ 40 մլրդ դոլլար:

Միամտություն կլինի կարծել, թե արտադրության ու բնության միջև էկոլոգիական հավասարակշռությունը կհաղթահարվի ինքնաբերաբար, բնության կողմից: Ողջամիտ մարդիկ նույնիսկ չեն կասկածում, որ անհրաժեշտ է անհապաղ գործադրել առավելագույն ջանքեր տեխնիկական առաջընթացի անցանկալի, երբեմն անխուսափելի թվացող սոցիալական հետևանքների կանխման համար: Առանձին բուրժուական հեղինակներ, սքողելով իրենց սոցիալական պրոբլեմների անլուծելիության հիմնական պատճառները, չարիքի արմատը փնտրում են գիտատեխնիկական հեղափոխության մեջ, դրա «անխուսափելի վտանգի» կանխարգելման նպատակով առաջադրում և պրոպագանդում են արտադրության «զրոյական աճի» տեսությունը— տեխնիկական առաջընթացի տեմպերի սառեցում:

Անհրաժեշտ է պլանավորված կառավարել շրջակա միջավայրի պահպանման ու բնության օգտագործման պրոցեսները, սոցիալ-տնտեսական նպատակներին և սոցիալիստական հասարակության խնդիրներին համապատասխանեցնել գիտության ու տեխնիկայի զարգացման պահանջները, ժամանակին կանխել գիտատեխնիկական հեղափոխության հնարավոր բացասական հետևանքները:

«...Բնությունը կարելի է օգտագործել տարբեր կերպ:— ՍՄԿԿ XXV համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը:— Կարելի է, և մարդկության պատմությունը դրա քիչ օրինակներ չգիտի, իր հետևից թողնել անպտուղ, ամայի, մարդու համար անօգուտ տարածություններ: Բայց կարելի է և պետք է, ընկերնե՛ր, վեհացնել բնությունը, բնությանն օգնել առավել լրիվ բացահայտելու իր կենսական ուժերը»:



Բնության խելամիտ և տնտեսողաբար օգտագործման հարցերը միշտ եղել են սովետական կառավարության և կոմունիստական կուսակցության ուշադրության կենտրոնում:

Մեր երկրում 1971—73 թվականներին շրջակա միջավայրի պահպանմանը հատկացված պետական կապիտալ ներդրումները կազմել են մոտ 2 մլրդ ռուբլի, 1975 թ.՝ 1,8, ընթացիկ հնգամյակում նախատեսված է ֆինանսավորել 11 մլրդ ռուբլի, իսկ հետագայում, ինչպես նշվեց կուսակցության XXV համագումարում,այդ գումարն առավել կաճի:

Մեր երկրում իրականացվել են բնության օգտագործման մի շարք խոշոր միջոցառումներ, որոնց նպատակն է՝ նվազեցնել արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի և քաղաքի կոմունալ տնտեսության բացասական ազդեցությունը կենսոլորտի վրա, ինչպես և՝ երկրի ռեսուրսային պոտենցիալի պահպանումն ու բարձրացումը:

Համաժողովրդական այդ հրատապ խնդրի կարևորության արտահայտությունն է այն, որ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման պետական պլանում (տարեկան, հնգամյա, հեռանկարային) հատուկ բաժին է հատկացված բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և բնության պահպանության պետական միջոցառումներին: Կարևոր միջոցառումներից է, այսպես կոչված, էկոլոգիական ստանդարտների մշակումը: Երկրում զգալի գործ է արված օդային ավազանի աղտոտության նվազեցման, արտահոսող կեղտաջրերի մաքրման, ինչպես և խախտված հողատարածությունների վերակուլտիվացման ասպարեզում:

Շրջակա միջավայրի բարեկարգման զգալի գործ է արվում և մեր հանրապետությունում, որի ժողովրդական տնտեսության մեջ մեծ է այսպես կոչված՝ առաջնային ճյուղերի՝ լեռնաարդյունահանության, քիմիայի, գյուղական և ջրային տնտեսությունների տեսակարար կշիռը: Այդ հանգամանքը, ինչպես և բնակչության բարձր խտությունը, հանրապետության փոքր տարածքը և բնական յուրահատուկ պայմաններն ավելի հրատապ են դարձնում էկոլոգիական խնդիրների լուծումը Հայկական ՍՍՀ-ում: Այս ասպարեզում մեծ են պլանային, տնտեսական օրգանների, գիտնականների և մեր հանրապետության ողջ աշխատավորների անելիքները: Մեր հանրապետության կուսակցական ու պետական օրգանները բացառիկ ուշադրություն են նվիրում այդ կարևոր պրոբլեմին:

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն և Մինիստրների խորհուրդը 1973 թ. մայիսի 15-ին ընդունեցին որոշում «Բնության պահպանության ուժեղացման և բնական ռեսուրսների օգտագործման բարելավման մասին»: 1976 թ. հունիսին այդ հարցը քննարկվեց ՀՍՍՀ Գերագույն սովետի իններորդ գումարման երրորդ նստաշրջանում: Կենսոլորտի պահպանման նպատակով կենսագործվող միջոցառումները պլանավորում, կոորդինացնում և վերահսկում են ՀՍՍՀ Գերագույն սովետի բնության պահպանության հանձնաժողովը, հանրապետության պետպլանը և ՀՍՍՀ ԳԱ նախագահության կենսոլորտի պրոբլեմներով զբաղվող գիտական խորհուրդը: Կուսակցության ու կառավարության որոշումներն իրականացնում են հանրապետության շատ մինիստրություններ ու գերատեսչություններ, ինչպես նաև գիտահետազոտական ու նախագծակոնստրուկտորական մի շարք կազմակերպություններ:

Հանրապետության ջրօդերևութաբանական կայաններն այժմ օրական 3 անգամ հետազոտում են Երևան, Կիրովական և Ալավերդի քաղաքների օդային ավազանների ապականվածությունը՝ ածխածնի օքսիդով, ծծմբային գազով, ֆենոլով ու փոշով. օդերևութաբանական վտանգավոր պայմանների առաջացման դեպքում այդ կայանները տեղեկացնում են ձեռնարկություններին, և վերջիններս ձեռնարկում են արտահերթ միջոցներ:

Հանրապետության քիմիական, լեռնահանքային, մետաղագործության արդյունաբերություններում և ավտոտրանսպորտում զգալի գործ է արվում օդային ավազանների ապականման կանխման նպատակով: Այսպես, պոլիվինիլացետատի գործարանում մոնտաժված սանիտարական սարքի գործարկմամբ վի-

ճյուղերում (բացի կոմունալ կենցաղային սեկտորից), հարաբերականորեն պակասեցնել ջրօգտագործումը, միաժամանակ խիստ կրճատելով պայմանականորեն մաքուր կեղտաջրերի հոսքը ջրամբարներ, կրճատել խմելու ջրի վատնումը՝ տեխնոլոգիական նպատակներին ծառայող ջրամատակարարման աղբյուրներից։

Հողօգտագործման բնագավառում— կիրառել պրոֆիլակտիկ և մելիորատիվ էռոզիական միջոցառումներ, պահպանել հողատարածություններն ու գյուղատնտեսական հանդակները։

Թվարկված և այլ կարևոր միջոցառումների կենսագործման համար անհրաժեշտ է կազմակերպական պատշաճ աշխատանք. մեր կարծիքով, առաջին հերթին պետք է ստեղծել կենսաոլորտի պահպանման ու բնության օգտագործումը վերահսկող հատուկ միջճյուղային կառավարական օրգան (նշենք, որ այդպիսի պետական կոմիտեներ արդեն գործում են միութենական մի շարք հանրապետություններում)։

Նպատակահարմար ենք գտնում խոշոր արդյունաբերական կենտրոններում, առաջին հերթին՝ Կիրովականում, Ալավերդում, Քաջարանում, Ագարակում և այլուր ժողովրդական դեպուտատների տեղական սովետների գործկոմներին կից կազմակերպել նույնատիպ տեսչական ծառայություններ։ Ժամանակն է ստեղծելու գիտահետազոտական էկոլոգիական կենտրոն՝ փորձարարական բազայով և նախագծատեխնոլոգիական ծառայություններով։

Այժմ արդեն պետք է մտածել անհրաժեշտ կադրերի— մասնագետ էկոլոգների, ինժեներ-ռադիոտեխնիկների այնպիսի գիտնական-մանկավարժների նախապատրաստման, վերաորակավորման մասին, որոնք կենսաբանության և մթնոլորտային ֆիզիկայի իրենց գիտելիքները զուգակցեն հաշվողական, տիեզերական և մաթեմատիկական գիտելիքների հետ։

Գիտատեխնիկական առաջընթացի կառավարման պլանաչափ կազմակերպման և դրա սոցիալ-տնտեսական հետևանքների թելադրանքով անհրաժեշտ է գիտության ու տեխնիկայի զարգացման առանձին պրոբլեմների պլանավորում։ «Գիտություն—տեխնիկա—արտադրություն—մարդ» ցիկլի կոմպլեքսային պլանավորումը հնարավորություն կընձեռի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում կենտրոնացված վարելու միասնական տեխնիկական քաղաքականություն, ցույց տալու գիտական գաղափարների և նոր տեխնիկայի մշակման անցնելու ուղին՝ ծագումից մինչև դրանց անմիջական կենսագործումը, կոնկրետ որոշելու մարդու տեղն ու դերը այդ նորույթների իրացման գործում։ Հարկ է նախապես հաշվի առնել արտադրության արդյունքների ազդեցությունը հասարակության գլխավոր արտադրաուժի՝ մարդու կուլտուրական ու կրթական մակարդակի, նրա կյանքի ու բնակելի միջավայրի վրա։ Դրա շնորհիվ միայն հնարավոր կլինի նախադրյալներ ստեղծել կուսակցության կողմից սովետական ժողովրդին առաջադրված կարևոր խնդրի՝ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների և տնտեսվարման սոցիալիստական համակարգի առավելությունների օրգանական միահյուսման համար։

Գիտատեխնիկական և հասարակական առաջընթացի իրացման պլանային մեխանիզմն ընդգրկում է ո՛չ միայն վերջնական արդյունքները, այլև դրանց նվաճման միջոցները, մի հանգամանք, որի նկատմամբ երբեք անտարբեր չի եղել սոցիալիստական հասարակարգը։

Ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում, «Գիտատեխնիկական հեղափոխության հաջողությունը, էկոնոմիկայի վրա, հասարակության կյանքի բոլոր կողմերի վրա դրա բարերար ազդեցությունը չեն կարող ապահովվել միայն գիտական աշխատողների ջանքերով», ուստի և անհրաժեշտ է «...հանրային արտադրության բոլոր մասնակիցների, տնտեսական մեխանիզմի բոլոր օղակների ներգրավումն այդ պատմական նշանակություն ունեցող պրոցեսի մեջ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 72)։

---

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ

# ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԻՆՔՆԱՔՆՆԱԴԱՏՈՒԹՅԱՆ ԲԱՐԵՐԱՐ ԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆԸ

**Լ. Ս. ԱԼԱՎԵՐԴՅԱՆ**
ՀԿԿ Թումանյանի շրջկոմի առաջին քարտուղար

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի Վերածնունդ գիրքը կուսակցական շինարարության տեսության ու պրակտիկայի խնդիրներն արծարծող մեծարժեք աշխատություն է, որը թեև անմիջականորեն վերաբերում է հետպատերազմյան շրջանի գործունեության լուսաբանմանը, սակայն ունի միանգամայն այժմեական նշանակություն և խորհելու, մտորելու առատ նյութ է տալիս մեզ՝ կուսակցական աշխատողներիս. Լ. Ի. Բրեժնևի գրքում հանգամանորեն արծարծվում են նաև քննադատության ու ինքնաքննադատության հարցերը։ Եվ դա հասկանալի է։ Կուսակցության այդ փորձված զենքն օգնում է կուսակցական աշխատողներին, բոլոր կադրերին՝ համակողմանի պարզելու գործերի վիճակը, թափանցելու դրանց էության մեջ, հաղթահարելու ծագած դժվարություններն ու թերությունները, պայքարելու ամեն տեսակ սուբյեկտիվիզմի դեմ։ Խորապես ճշմարիտ է Լ. Ի. Բրեժնևի արտահայտած հետևյալ միտքը. «Ով դադարում է քննադատությունն ընդունելուց, գործի համար կորած է»։

Քննադատությունն ու ինքնաքննադատությունը եղել ու մնում են մեր կուսակցության փորձված զենքը, սխալների շտկման, թերությունների վերացման կարևոր միջոցը։ Դրանք վճռական դեր են խաղում կուսակցական-կազմակերպական, գաղափարական-դաստիարակչական աշխատանքի, հանրային արտադրության կուսակցական ղեկավարման բարելավման ու կատարելագործման առումով։

Քննադատության ու ինքնաքննադատության ըստ ամենայնի ծավալումն աշխատանքի լենինյան ոճի անբաժանելի մասն է և բխում է այդ ոճի բուն էությունից։

Կոմունիստների պարտքն է, սովորեցնում էր Վ. Ի. Լենինը, հասնել այն բանին, որպեսզի կուսակցության ողջ գործունեությունը ներթափանցված լինի աշխատանքի թերությունների, առանձին գործիչների սխալների, ոչ ճիշտ գործելակերպի համարձակ, սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության ոգով։

Քննադատության և ինքնաքննադատության մեթոդը պահանջում է որևէ կազմակերպության կամ աշխատողի գործունեությունը համակողմանի ու օբյեկտիվ գնահատել, եղած թերությունները հանգամանալի վերլուծել, մարդ-

կանց նկատմամբ տածած վստահությունն ու հարգանքը զուգորդել հանձնարարված գործի համար բարձր պահանջկոտության հետ։ «Սա,— ՍՄԿԿ XXV համագումարում նշեց Լ. Ի. Բրեժնևը,— կուսակցական, և ոչ միայն կուսակցական, այլև մեր ամբողջ աշխատանքի օրենքն է։ Եվ... քննադատության նկատմամբ սխալ վերաբերմունքի ամեն մի փաստ պետք է առաջ բերի կուսակցական մարմինների սուր և օպերատիվ արձագանքը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 102)։

«Տամբովի մարզային կուսակցական կազմակերպությունում քննադատության և ինքնաքննադատության վիճակի մասին» որոշման մեջ ՍՄԿԿ Կենտկոմը զարգացրեց լենինյան այն դրույթը, որ կոմունիստական շինարարության խնդիրների մասշտաբների մեծացմանն ու բարդացմանը, տնտեսավարման ինտենսիվ մեթոդների արմատավորմանը, գործունեության բոլոր ոլորտներում որակական ցուցանիշների վերընթացին զուգընթաց, մեծ նշանակություն են ստանում քննադատությունն ու ինքնաքննադատությունը՝ որպես կազմակերպչական ու գաղափարադաստիարակչական աշխատանքի մակարդակի բարձրացման վճռական միջոց։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թ. հունվարյան պլենումը հանրապետության կուսակցական կազմակերպություններին ցույց տվեց գործարարության, բարձր պահանջկոտության, աշխատանքի նկատմամբ ստեղծագործական մոտեցման, գործերի վիճակի քննադատական վերլուծության, սեփական գործունեությունը ինքնաքննադատաբար գնահատելու, այդ ամենից սկզբունքային հետևություններ անելու ուսանելի օրինակ։ Հունվարյան պլենումը, իսկ այնուհետև ՀԿԿ Կենտկոմի բյուրոն, սկզբունքային դիրքերից գնահատելով ժողովրդական տնտեսության կուսակցական ղեկավարման ասպարեզում Թումանյանի անվան շրջանի կուսշրջկոմի աշխատանքի ոճը, նրա կազմակերպչական ու գաղափարական գործունեության մեջ բացահայտեց լուրջ թերություններ ու վրիպումներ։ Կենտկոմի բյուրոն իրավացիորեն նշեց, որ տնտեսական, սոցիալական զարգացման և աշխատավորների գաղափարական դաստիարակության հարցերի լուծման գործում կոմպլեքսային մոտեցում, գիտական հիմնավորվածություն և ձեռներեցություն հանդես բերելու փոխարեն, շրջկոմը հաճախ տարվել է առօրեական մանրախնդրայնությամբ, սահմանափակվել պրակտիցիզմի նեղ շրջանակներով, խորամուխ չի եղել ձեռնարկությունների, կառույցների, սովխոզների գործունեության մեջ, աշխատանքային կոլեկտիվների ջանքերը թույլ է նպատակամղել պետական պլանների ու պարտավորությունների անվերապահ կատարմանը։ Ահա թե ինչու երկար ժամանակ չէր հաղթահարվում շրջանի արդյունաբերության ու գյուղատնտեսության, մասնավորապես մեր ամենախոշոր ձեռնարկության՝ լեռնամետալուրգիական կոմբինատի տևական ետ մնալը։

Մեր առջև խիստ կարևոր խնդիր դրվեց՝ դուրս գալ ստեղծված ծանր վիճակից։ Սակայն ինչի՞ց սկսել։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի որոշումներն ու ցուցումները բովանդակում էին այդ հարցի պատասխանը, և կուսշրջկոմը մշակեց աշխատանքի կոմպլեքսային ու հեռանկարային պլան, որն ընդգրկում էր թե՛ էկոնոմիկայի վերելքի, թե՛ գաղափարական դաստիարակության բարելավման հարցերը։

Տնտեսական, կազմակերպական և քաղաքական աշխատանքի միասնության ապահովման արդյունքն այն է, որ, ի վերջո, շրջադարձ կատարվեց արդի պահանջների ոգով տնտեսության կառավարման ոլորտում։ Թումանյանի անվան շրջանի աշխատանքային տարեգրության մեջ 1977 թվականը կհիշվի ոչ միայն որպես պատմական խոշոր իրադարձությունների՝ ՍՍՀՄ Սահմանադրության ընդունման և Մեծ Հոկտեմբերի 60-ամյակի տոնակատարության պանծալի տարեթիվ, այլև ետ մնալը վճռականապես հաղթահարելու բեկումնային տարի։ Տասներորդ հնգամյակի երկրորդ տարում արդյունաբերության աշխատողները ժամկետից յոթ օր շուտ հայրենիքին զեկուցեցին հիմնական արտադրատեսակների թողարկման ու իրացման պլանների կատարման մասին։ Նրանք սոցիալիստական մրցությամբ տարվա համար ստանձնած մեկ միլիոն ռուբլու փո-



խարեն թողարկեցին երկու միլիոն ռուբլու լրացուցիչ արտադրանք։ Ընթացիկ տարվա առաջին եռամսյակի բարձր արդյունքների համար շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները հաղթող ճանաչվեցին սոցմրցության մեջ և արժանացան ՀԿԿ Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշին։ Ընդհանրապես հիմնարկ-ձեռնարկություններն այդ նույն ժամանակամիջոցում հանրապետական և միութենական յոթ փոխանցիկ դրոշ են շահել։

Ասել, թե նախկինում մեզ չեն կշտամբել սխալների և թերացումների համար, մեզանից չեն պահանջել, ճիշտ չի լինի։ Ե՛վ քննադատել, և՛ պահանջել են, սակայն այդ ամենը հաճախ կրել է դեկլարատիվ բնույթ։ Բանն այն է, որ վերադաս կազմակերպությունները շրջանի ղեկավարությունից պահանջում էին բարելավել գործերի վիճակը, հաճախ խորամուխ չլինելով գործի էության մեջ, նույն եղանակով մենք էլ մեր հերթին դիմում էինք սկզբնական կուսկազմակերպություններին։ Սակայն ընդունված շատ որոշումներ չէին կատարվում այն պարզ պատճառով, որ, իրականում, վերից վար, գործնական քիչ օգնություն էր ցույց տրվում տեղերին՝ հասունացած հարցերը, մասնավորապես գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման պրոբլեմները լուծելու գործում։

Զարգացած սոցիալիստական հասարակության պայմաններում, երբ առկա է նյութատեխնիկական հսկայական պոտենցիալ և երբ ամբողջ երկրի մասշտաբով կուսակցությունը գյուղատնտեսության զարգացումը լայն մասշտաբներով փոխադրում է ինդուստրիալ հիմքերի վրա, բնականաբար, հարկ էր, շրջանի գյուղատնտեսության տևական ետ մնալը հաղթահարելու և վերացնելու նպատակով, ոչ միայն քննադատել ու պահանջել, այլև կոնկրետ աջակցություն ցույց տալ տնտեսություններին՝ այդ ճյուղը ժամանակակից պահանջներին համապատասխան վերակառուցելու համար։ Այդպես էլ վարվեցին Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության կառավարությունը։ Նրանք խորապես հիմնավորված որոշումներ ընդունեցին մեր շրջանի էկոնոմիկայի համակողմանի, դինամիկ զարգացման վերաբերյալ, որոնք մեզ համար դարձան գործողության ուղեցույց։

Շրջանի գյուղատնտեսության տևական ետ մնալը վերացնելու գործում կարևոր նշանակություն ունեցավ նաև կուսշրջկոմի 1976 թ. ապրիլի 2-ի պլենումը, որը, Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի որոշումներից բխող խնդիրներին համապատասխան, քննադատության ու ինքնաքննադատության մթնոլորտում բացահայտեց լուրջ թերություններ և միջոցառումներ մշակեց անասնապահությունն ու բուսաբուծությունն ինտենսիվորեն զարգացնելու, այդ ճյուղերը մասնագիտացնելու համար։ Եվ այսօր առաջընթացը նկատելի է. նախատեսված ծրագրերն իրականացվում են, շրջանում դրվել է միջտնտեսային կոոպերացման հիմքը։ Արդեն գործում են Ահնիձորի էգ մատղաշների աճեցման ձեռնարկությունը և նորոգման-շինարարական կազմակերպությունը։ Սկսվել է Օձունի և Դսեղի 800-ական գլուխ կովի տարողությամբ կաթնային համալիրների կառուցումը, էական փոփոխություններ են կատարվել ցանքաշրջանառության մեջ։

Տասներորդ հնգամյակում «Գլխհայջրշին» գլխավոր վարչությունը կատարելու է լայն մասշտաբի ջրաշինարարական աշխատանքներ։ Ջրաշինարարության նպատակին հատկացված է 10,5 միլիոն ռուբլի, որից ավելի քան 6,5 միլիոնը կիրացվի մինչև 1981 թվականը։ Հաշվարկները ցույց են տալիս, որ գյուղատնտեսությունը կարճ ժամանակում կփոխհատուցի այդ կապիտալ ներդրումները։

Քննադատությունը մեզ օգնեց՝ վերացնելու գյուղատնտեսական արտադրության առկա թերությունները, ուժեղացնելու պետական ու աշխատանքային կարգապահությունը, գործողության մեջ դնելու չօգտագործված ռեզերվները և դրանով իսկ՝ ապահովելու մթերքների արտադրության նկատելի աճ։ Կարտոֆիլի մթերման զգալի գերակատարումը հնարավորություն ընձեռեց փակելու հնգամյակի առաջին տարում առաջացած ճեղքվածքը։ Գերակատարվեցին նաև

հացահատիկի ու պտուղների պետական մթերումների առաջադրանքները։ Լուծվել է մի կարևոր խնդիր ևս. երկու տարի է ահա, ինչ շրջանի անասնապահությունն իր պահանջները բավարարում է սեփական արտադրության կերով։ Իսկ դա տալիս է որոշակի արդյունք. պետական տնտեսություններն անցած տարի պլանից ավելի արտադրեցին ու պետությանը վաճառեցին միս, կաթ, ձու և բուրդ։ Այս ամենը, իհարկե, լավ է։ Սակայն, հարկ է նշել, որ գյուղատնտեսության ասպարեզում ամենևին չեն հաղթահարված դժվարություններն ու թերությունները։

Քննադատությունն ինքնանպատակ չէ, այն օգտակար և ներգործուն է, երբ քննադատված մարմիններն ու կազմակերպությունները դրան արձագանքում են ժամանակին, համապատասխան եզրակացություն անում։ Բերենք մի կոնկրետ փաստ։ «Պրավդա» թերթը 1976 թ. դեկտեմբերի 6-ի համարում «Վեցերորդ որոշումը» հոդվածում նշել էր, որ կուսակցության Թումանյանի շրջկոմը պլենումներում ու բյուրոների նիստերում բազմիցս որոշումներ է ընդունել լեռնամետալուրգիական կոմբինատի և Ղաշաղանի սովխոզի գործունեությունը բարելավելու նպատակով, սակայն հետևողականություն չի ցուցաբերել իր իսկ որոշումները կենսագործելու ասպարեզում։ Թերթը նաև նշել էր, որ ընդունված որոշումների կատարման վերահսկողության և ստուգման գործում անբավարար են օգտագործվում շրջկոմի բաժինների վարիչների և հրահանգիչների նախաձեռնությունն ու ակտիվությունը։

Թերթի քննադատական ելույթը տեղին էր։ Այժմ արդեն բարելավել ենք շրջկոմի պլենումների, բյուրոների նիստերի, կուսակցական ժողովների հրավիրման պրակտիկան։ Այստեղ անկաշկանդ մթնոլորտում բազմակողմանիորեն քննարկվում են հարցերը, բացահայտվում թերությունները, ընդունվում գործնական որոշումներ։

«Պրավդայի» ելույթի կապակցությամբ կատարված ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ լեռնամետալուրգիական կոմբինատի առանձին ծառայությունների ու արտադրամասերի ղեկավարներ գերադասում են «հանգիստ կյանքը», սուբյեկտիվ պատճառաբանություններով փորձում են արդարացնել ձեռնարկության վերակառուցման ձգձգումները, անբավարար են զբաղվում ռեզերվների ու հնարավորությունների օգտագործմամբ։ Հարկ եղավ վերանայել կադրերի տեղաբաշխման հարցը։

Ձեռնարկված միջոցների շնորհիվ կոմբինատում վերացվեցին կոլեկտիվի արդյունավետ գործունեությանը խոչընդոտող շատ թերություններ, տեխնիկատնտեսական անհրաժեշտ պայմաններ և մոբիլիզացիոն վիճակ ստեղծվեցին պետական առաջադրանքների կատարման համար։ Ձեռնարկության կոլեկտիվը հոբելյանական տարվա համախառն արտադրանքի պլանը կատարեց 102,9, իրացմանը՝ 102,2 տոկոսով, այստեղ 1976 թ. համեմատությամբ արտադրանքի իրացման ծավալն աճեց 2,8 տոկոսով։ Պլանից ավելի թողարկվեցին հարյուրավոր տոննա պղինձ, ծծմբաթթու, պղնձարջասպ։ Ի դեպ, վերջին տասնամյակում առաջին անգամ կատարվեց ծծմբաթթվի արտադրության պլանը, երկրի ժողովրդական տնտեսությունը պլանից ավելի ստացավ շուրջ 10 հազար տոննա ծծմբաթթու։ Խնայողության ռեժիմի կիրառման միջոցով ձուլողներն ու քիմիագործները տնտեսեցին մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա և վառելանյութ։ Կոմբինատի կոլեկտիվը կրճատեց գործարկվող արտադրական կարողությունների յուրացման ժամկետները։ Եվ ահա արդյունքը. անցած տարվա երրորդ եռամսյակի լավ աշխատանքի համար արժանացավ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի և ճյուղային արհմիության հանրապետական կոմիտեի, իսկ չորրորդ եռամսյակում և այս տարվա առաջին եռամսյակում՝ ՍՍՀՄ գունավոր մետալուրգիայի մինիստրության և ճյուղային արհմիության Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշներին։

Մենք ձգտում ենք, որպեսզի յուրաքանչյուր ղեկավար, յուրաքանչյուր կոմունիստ զգա, որ ճշմարտացի քննադատությունն ու ինքնաքննադատությունն այն միջոցներն են, որ օգնում են վերացնելու թերությունները, նպաստում պաշտոնական պարտականությունների կատարմանը, սկզբունքայնության ոգով



մարդկանց դաստիարակությանը։ Եվ օրինաչափ է, որ կուսշրջկոմի պլենումներում, բյուրոյի նիստերում, կուսժողովներում ծավալվում է առողջ, գործին օգնող քննադատություն։ Կոմունիստները, ղեկավար կադրերն ավելի օբյեկտիվորեն են գնահատում իրենց գործունեությունը, անաչառ կերպով բացահայտում թերությունները, կշտամբում թերացողներին։ Կուսշրջկոմը կադրերի ուշադրությունը սևեռում է էկոնոմիկայի և աշխատավորների դաստիարակության հանգուցային պրոբլեմների վրա, բարձրացնում նրանց պատասխանատվությունը՝ հանձնարարված գործի և պահանջկոտությունը՝ թերությունների վերացման նկատմամբ։ Եվ դա նպաստում է գործի հանդեպ ինքնաքննադատական վերաբերմունքի դաստիարակմանը։

Մարդկանց գործունեությունը քննադատաբար արժեքավորելու, գործերի վիճակն օբյեկտիվ կերպով գնահատելու պրակտիկայի հաստատումն օգնեց մեզ՝ ձեռներեց կադրերով ամրապնդելու արդյունաբերության այնպիսի վճռական տեղամասեր, ինչպիսիք են լեռնամետալուրգիական կոմբինատն ու Թումանյանի հրակայուն նյութերի գործարանը, այդ տեղամասերում ստեղծելու աշխատանքի բարելավման նորմալ պայմաններ։

Կուսշրջկոմը ձգտում է, որպեսզի յուրաքանչյուր ղեկավար քննադատությունը և ինքնաքննադատությունը դիտի որպես գործերի վիճակի բարելավման, իր պարտականությունների կատարմանն օգնող հուսալի միջոց։ Սակայն դա միշտ չէ, որ հաջողվում է մեզ։ Կան ղեկավարներ, որոնք խոսքով ընդունում են իրենց հասցեին արված քննադատական դիտողությունները, ընդունում սխալները, բայց ոչինչ չեն անում դրանց վերացման համար։ Ահա բնորոշ մի օրինակ։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի մայիսյան (1976 թ.) պլենումում, ապա Կենտկոմի բյուրոյում, ՀԿԿ շրջկոմի պլենումներում ու բյուրոներում, կուսակցական ժողովներում քննադատվել է «Ախթալշին» տրեստի ղեկավարությունն այն բանի համար, որ ձախողել է լեռնամետալուրգիական կոմբինատի նոր օբյեկտների, Ախթալայի պահածոների գործարանի, Թումանյանի հրակայուն նյութերի գործարանի նոր արտադրամասի շինարարությունը։ Սակայն տրեստի ղեկավարները պատշաճ հետևություն չարեցին դրանից։ Շրջկոմը կուսակցական պատասխանատվության ենթարկեց նրանց և տվեց գործերի վիճակը շտկելու ժամկետ։ Իսկ երբ էական տեղաշարժ չկատարվեց, հարկադրված եղավ նրանց ազատել զբաղեցրած պաշտոններից։

Շրջանի սկզբնական շատ կազմակերպություններում ճիշտ է օգտագործվում այդ ամբիոնը, մարդիկ դեմ առ դեմ խոսում են միմյանց թերությունների և թերացումների մասին, օբյեկտիվ գնահատական տալիս յուրաքանչյուր ղեկավարի, կոմունիստի, ամեն մի տեղամասի գործունեությանը։

Այդ իրողությունը հաստատող փաստեր շատ կան։ Լեռնամետալուրգիական կոմբինատի մետալուրգիական արտադրամասի սկզբնական կուսկազմակերպության ժողովներում ամեն անգամ մտքերի փոխանակության համար անկաշկանդ ու անկեղծ ասպարեզ է բացվում։ Անցած տարվա վերջերին էր։ Արտադրամասի կուսկազմակերպությունը հերթական ժողովում քննարկեց հումքից մետաղի կորզման գործակիցը բարձրացնելու հարցը։ Ավագ ձուլող, սոցիալիստական աշխատանքի հերոս Ա. Ղազարյանը և հերթափոխության պետ Տ. Ստեփանյանն իրենց ելույթներում քննադատաբար նշեցին, որ մետալուրգիական ագրեգատներում, տեխնոլոգիական պրոցեսների խախտման հետևանքով, չի ապահովվում հումքից պղնձի կորզման պլանային ցուցանիշը, որ այդ պատճառով հեռացվող խարամի մեջ սահմանվածից բարձր է մետաղի պարունակությունը։ Նրանք առաջարկեցին հումքի օգտագործումը բարելավելու նպատակով մրցություն ծավալել հերթափոխությունների միջև։ Կոմբինատի ղեկավարությունը պաշտպանեց այդ նախաձեռնությունը և կազմակերպական-տեխնիկական աջակցությամբ ամեն կերպ նպաստեց արդյունավետության բարձրացմանը։ Իրոք, հումքից մետաղի կորզման գործակիցը 1978 թ. առաջին եռամսյակում պլանի համեմատությամբ բարձրացավ գրեթե մեկ տոկոսով, որի շնորհիվ թողարկվեց զգալի քանակությամբ լրացուցիչ անոդային պղինձ։

Աշխույժ, կոմունիստների ակտիվ մասնակցության պայմաններում են

անցնում նաև Շամլուղի հանքերի կուսկազմակերպության ժողովները, որովհետև այստեղ ևս հարգի են քննադատությունն ու ինքնաքննադատությունը, հետևողականորեն են կենսագործվում գործի շահերից բխող դիտողություններն ու առաջարկությունները։ Մինչդեռ ոչ վաղ անցյալում այստեղ ընդունված էր հարցերը նեղ շրջանակներում լուծելու պրակտիկան, բացակայում էր արտադրական խնդիրների լուծման նկատմամբ կոմպլեքսային մոտեցումը, հեռանկարները հստակորեն չէին պատկերացնում։ Աշխատանքի նման ոճը հանգեցրել էր նրան, որ հանքերում խրոնիկական էին դարձել պլանների ձախողումները։ Ստեղծված այս տագնապալի վիճակում իրենց ձայնը բարձրացրին լեռնագործ կոմունիստները։ Անցած տարվա հոկտեմբերին կայացած ժողովում նրանք քննադատության կրակի տակ առան հանքերի ղեկավարներին։ Հանքափորների կոմպլեքսային բրիգադի բրիգադավար Ս. Պապյանը, ստորերկրյա տրանսպորտի պետ Դ. Քսիֆիլինովը, հորատող Մ. Հովսեփյանը, № 1 հանքամասի պետ Ռ. Բարսեղյանը և ուրիշներ իրենց ելույթներում նշեցին, որ անբավարար են կազմակերպվում լեռնանախապատրաստական աշխատանքները, ձգձգվում է պղնձաքարով հարուստ 140 հորիզոնականում հանույթի նախապատրաստումը, շահագործման տեսակետից անմխիթար վիճակում է ստորերկրյա տրանսպորտի նեղգիծ երկաթուղին։ Նրանք նշեցին, որ կոլեկտիվում ցածր է աշխատանքային կարգապահությունը, հանքախորշերում գործող կոմպլեքսային բրիգադները հաճախ պարապուրդներ ունեն, նրանց միջև թույլ է ծավալվում սոցիալիստական մրցությունը։

Ժողովում արծարծվեցին նաև մարդկանց կուլտուր-կենցաղային պայմանների բարելավմանը վերաբերող մի շարք հարցեր։

Լեռնամետալուրգիական կոմբինատի դիրեկցիան և կուսկոմիտեն, ելնելով քննադատական դիտողություններից, կատարեցին կադրային փոփոխություններ, ուժեղացրին հանքերի ղեկավարումը։ Բացի այդ, կոմունիստներին ներկայացրին իրենց իսկ պահանջների հիման վրա մշակված տեխնիկատնտեսական և կուլտուր-կենցաղային միջոցառումներ, որոնց իրագործումը հնարավորություն ընձեռեց՝ հաղթահարելու ետ մնալը։ Պղնձաքարի հանույթի 1978 թ. առաջին եռամսյակի պլանը կատարվեց 109,9 տոկոսով, լեռնանախապատրաստական աշխատանքներինը՝ 120, հանքաքարի մեջ մետաղի պարունակությանը՝ 102 տոկոսով։

Քննադատության և ինքնաքննադատության ծավալմանը մեծապես նպաստում են կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները, եթե, իհարկե, դրանք նախապատրաստվում և անցկացվում են բարձր մակարդակով։

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը խնդիր դրեց ամենուրեք քննադատաբար ու ինքնաքննադատաբար վերլուծել գործունեության արդյունքները, բարձրացնել կազմակերպվածությունն ու պատասխանատվությունը, ուժեղացնել պլանային առաջադրանքների կատարման վերահսկողությունը, ամրապնդել պլանային ու արտադրական կարգապահությունը։ Այս ասպարեզում շատ անելիքներ ունի նաև մեր շրջկոմը։ Չէ՛ որ ամենևին վերացված չեն թերությունները, մի շարք ձեռնարկություններ ու տնտեսություններ, ինչպես օրինակ, Ախթալայի շինարարական իրերի կոմբինատը, Դսեղի կահույքի ֆաբրիկան, Շամուտի, Սանահինի սովխոզները թերակատարում են պետական պլաններն ու պարտավորությունները։

Սկզբունքային քննադատությունը, շիտակ ինքնաքննադատությունը բարեբար ազդեցություն են գործում շրջանային կուսակցական կազմակերպության գործունեության վրա։ Այդ փորձված մեթոդի կիրառումը օգնում, հետայսու ևս կօգնի լուծելու մեր առջև ծառացած խնդիրները, հաջողությամբ կենսագործելու ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, կատարելու տասներորդ հնգամյակի պետական առաջադրանքները։

---

# ՏՈՆՈՅԱՆԻ ԴԱՍԵՐԸ

## ՅՈՒՐԻ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Շիրակի հարթավայրից մենք վերադառնում էինք հարուստ տպավորություններով։ Իմ ուղեկիցը՝ հանրապետության ժողովրդական նկարիչ Հակոբ Հակոբյանը, սովորաբար ինքնամփոփ այդ մարդը, վերջապես սկսեց խոսել. «Ի՜նչ զարմանալի մարդ է Հովհաննես Տոնոյանը։ Որքա՜ն սիրալիր է նա, որքա՜ն հմայք ու ներքին կուլտուրա ունի... Ա՜յ թե նրան կպատկերեի ոգեշնչված, միայն ափսոս, որ նա ժամանակ չի ունենա՝ նկարվելու կեցվածք ընդունել։ Իսկ դու, որպես ժուռնալիստ, ավելի ազատ ես այդ հարցում»։

***

...Դահլիճը դղրդում էր ծափերից։ Հինգերորդ անգամ անընդմեջ Ախուրյանի շրջանին հանձնվում էր ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը։ Ալ դրոշն ընդունելով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանից, Հովհաննես Հակոբովիչը լայն ժպտաց։ Իսկ երբ եկավ պատասխան ելույթի ժամը, նա բարձրացավ բեմ և խոնարհ ողջունեց մարդկանց։

Ինչ-որ մի պահ դահլիճում լռություն տիրեց։ Լուսարձակների շողերի տակ Տոնոյանը շփոթված տեսք ուներ։ Մարդը հուզվում էր, և նրա վիճակը հասկանալի էր բոլորին։ Հաղթահարելով ինքն իրեն, թեթևակի կակազելով, նա մեղմ սկսեց.

— Շնորհակալություն ձեր աշխատանքային կոշտուկներին, ձեր համառությանը և հերոսական սխրանքին...

Եվ բոլորը տեսան, թե ինչպես Տոնոյանի աչքերը տամկացան։

Անցած տարին դժվարին էր գյուղի աշխատավորների համար։ Հնձի նախօրյակին հացահատիկը կարկտահարվեց, հետո թեթև սառնամանիք եղավ։ Եվ, այնուամենայնիվ, ախուրյանցիները յուրաքանչյուր հեկտարից ստացան 31 ցենտներ հացահատիկ, 547 ցենտներ շաքարի ճակնդեղ։ Ամեն մի կովից կթվեց 2.182 կիլոգրամ կաթ։ Գերակատարվեցին բրդի արտադրության առաջադրանքները, ստեղծվեց կերի կայուն բազա։ Շրջանն իր պատմության մեջ առաջին անգամ պետությանը վաճառեց ավելի քան մեկ միլիոն ցենտներ շաքարի ճակնդեղ։

Իսկ «առաջինը» տոնական այդ օրն իրեն հավատարիմ մնաց։ Իր ելույթի մեծ մասը նվիրեց... թերություններին։

— Արդյոք մենք ունե՞նք ավելի լավ աշխատելու ռեզերվներ,— այժմ արդեն ամբիոնից բարձր էր հնչում նրա ձայնը։— Անշո՛ւշտ, ունենք։ Իսկ ինչ են ռեզերվները։ Դրանք մեր բոլորի վրիպումներն են, բացթողումները։ Ինչո՞ւ, օրինակ, միատեսակ պայմաններում Հովունու և Կապսի տնտեսությունների աշխատանքի արդյունքները տարբեր են։ Դե՛, այն պատճառով, որ առաջին դեպքում իր բարձրության վրա գտնվեց սկզբնական կուսակցական կազմակերպությունը, իսկ երկրորդ դեպքում՝ զգացվեց կոմունիստների պասսիվությունը...

Հանդիսավոր օրերից մի շաբաթ հետո նկարիչ Հ. Հակոբյանի հետ նորից անցանք կուսակցության շրջկոմ։

— Որտե՞ղ է Տոնոյանը,— հարցրինք քարտուղարուհուն։

— Փնտրեցեք Կապսում։ Ամենից շատ այնտեղ է լինում։

Հեշտ է ասել՝ «փնտրեցեք», երբ շրջկենտրոնից մինչև գյուղ մի տասը բնակավայր կա։ Այնքան զանգահարեցինք, մինչև որ պատասխան ստացանք։ Հեռախոսալարի մյուս ծայրից հաղորդեցին, որ Տոնոյանը, ուր որ է, կլինի Ջաջուռում։

Իսկն ասած, դրա համար էլ եկել էինք։ Ջաջուռում է ծնվել ու հասակ առել մեր բարեկամը՝ հայ սկանավոր գեղանկարիչ Մինաս Ավետիսյանը։ Նա վաղ հեռացավ կյանքից։ Հան-

րապետության կառավարության որոշմամբ նրա անունով են կոչվել այն դպրոցը, որտեղ սովորել է նա, և Երևանի փողոցներից մեկը:

— Իսկ ինչո՞ւ գյուղում Մինասի թանգարան չլինի,— հարցը կտրուկ դրեց Հովհաննես Հակոբովիչը:— Արվեստի իսկական գնահատողների համար մայրաքաղաքից 130 կիլոմետր հեռավորությունը մի մեծ բան չէ: Մարդիկ թող Մինասի կտավներով հիանան նրա՛ գյուղում:

Նրա խոսքն ու գործը մեկ է: Գյուղում, դպրոցի կողքին հառնեց կուլտուրայի մի նոր օջախ: Կառուցմանը մասնակցում էր ամբողջ շրջանը՝ սեփական ուժերով: Նախագծի հարցում անշահախնդիր օգնություն ցույց տվեցին Երևանի ճարտարապետները: Եվ ահա գեղակերտ թանգարանի մոտ էլ հանդիպեցինք Տոնոյանին: Տեղի բնակիչներով շրջապատված՝ նա բծախնդրորեն ծանոթանում էր նորակառույցին: Տեսնելով մեզ, շտապեց ընդառաջ գալ և իսկույն հայտնեց իր նոր մտահղացումը.

— Հենց այստեղ էլ կկառուցենք կերպարվեստի ստուդիա: Թող երեխաները նկարիչ դառնան:

Իսկ հետո, արդեն Ախուրյանում, նա մի նոր անակնկալ մատուցեց. «Ուզո՞ւմ եք տեսնել մեր մանկական պատկերասրահը»:

Նորակառույց շենքի առաջին հարկում եռում էր աշխատանքը: Հարմարավետ, լուսավոր դահլիճներում բացմանը նախորդող պատրաստություններն էին ընթանում:

— Որքան ինձ հայտնի է,— նկատեց Հ. Հակոբյանը,— շրջկենտրոններում դեռ այսպիսի մանկական հիմնարկություններ չկան:

— Իսկ մի՞թե վատ է նախաձեռնող լինել: Չէ՛ որ վաղ թե ուշ նման օջախներ կգործեն ամբողջ հանրապետությունում:

Այո՛, գեղագիտական ծրագիրը, ամբողջությամբ վերցրած, շրջանում կենսագործվում է հաջողությամբ: Այստեղ երաժշտական յոթնամյա դպրոցներ են բացված Ազատան, Ախուրյան, Մարմաշեն գյուղերում: Հերթը Ոսկեհասկինն է ու Վահրամաբերդինը...

Իսկ չէ որ այս ամենի սաղմերը դրվել են դեռ այն ժամանակ, երբ Հովհաննես Հակոբովիչը շրջսովետի գործկոմի կուլտուրայի բաժնի վարիչ էր: Այն ժամանակ, շատ տարիներ առաջ, ծնունդ առավ Մարմաշենի նշանավոր երգչախումբը: Գյուղական 120 երգիչներ «գրնցեցին» հանրապետական մրցույթի ժյուրիին, դարձան հաղթողներ: Ախուրյանցիները հիշում են նաև նրա մեկ ուրիշ հոգեհարազատին՝ ինքնագործ փողային նվագախմբին: Նույն գյուղում ծնված ու հասակ առած ինը երաժիշտներ այսօր նվագում են Մոսկվայի լավագույն կոլեկտիվներում:

Բնավ պատահական չէ, որ տնտեսական հաջողությունների հետ միասին Ախուրյանի շրջանը հանրապետությունում ճանաչվել է որպես լավագույնը նաև կուլտուր-լուսավորական գործունեության դրվածքով: Նույնիսկ ամառային եռուն աշխատանքի պահին, երբ, ինչպես ասում են, գլուխ քորելու ժամանակ չկա, առաջին քարտուղարը հնարավորություն է գտնում լինելու ակումբներում, մասնակցելու ինքնագործ արտիստների փորձերին:

— Բոլոր մեծերն էլ սկզբում երեխա են եղել,— կատակում է Հովհաննես Հակոբովիչը,— միայն թե ոչ բոլորն են հիշում այդ: Թող միշտ բերկրանք լինի երեխաների նկարներում ու երգերում: Իսկն ասած, նրանց համար ենք մենք ապրում և աշխատում: Իսկ մեզ մոտ, խոստովանենք լինի, անում է հետաքրքրասեր և ունակ սերունդ:

Հաճախ է ինձ վիճակվում Տոնոյանի հետ հանդիպել աշխատանքի բերումով: Նրա ժամանակի բյուջեն խիստ լիմիտավորված է: Առավոտյան ժամը վեցից շրջում է դաշտերում, այցելում անասնապահական ֆերմաները, շրջանի նորակառույցները: Ուղիղ իննին արդեն շրջկոմում է: Կարելի է նախանձել նրա կոնկրետությանն ու գործարարությանը: Գործ ունես՝ խնդրեմ: Բայց միայն հարկավոր է խոսել ըստ էության: Չի սիրում, երբ իզուր ժամանակ են վատնում: Այս կապակցությամբ ուսանելի էր շրջանի կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովը, որին ես բախտ ունեցա ներկա լինել անցած աշնանը: Այն տևեց մեկ ժամից էլ պակաս: Շրջկոմի քարտուղարի հակիրճ զեկուցումից հետո ելույթ ունեցան ևս երեք ընկերներ, և օրակարգը դրանով սպառվեց: Երբ ես հարցրեցի Տոնոյանին, թե ինչո՞վ բացատրել այդ օպերատիվությունը, նա, խորամանկորեն կկոցելով աչքերը, հարցին պատասխանեց հարցով. «Իսկ մի՞թե երկար ու անհարկի ժողովներից գործի էությունը կփոխվի: Այլ բան է, եթե խոսքը գործնականում ամրապնդվում է կոնկրետ օրինակով: Ինչպես ասում են, մեկ անգամ տեսնելն ավելի լավ է, քան հարյուր անգամ լսելը»:

Եվ շրջանում բարի ավանդույթ է դարձել՝ առաջավորների մոտ սովորելու են գնում բոլոր տնտեսությունների ներկայացուցիչները: Եվ գնում են ոչ որպես դիտորդներ, այլ համահավասար աշխատելու նրանց հետ, փորձ կուտակելու: Չէ որ սոցիալիստական մրցությունը անեցրել է ռեկորդային բերքի, կթի, գյուղատնտեսական տեխնիկայի արդյունավետ օգտագործման վարպետների մի ամբողջ համաստեղություն: Դրանց թվում են ճակնդեղագործներ Վ. Ազատյանը, Ն. Վարդանյանը, Ս. Ջուլոյանը և շատ ուրիշներ, որոնք իրենց փորձնական հողամասից մեկ հեկտարի հաշվով ստացել են 744—765 ցենտներ արմատապտուղ: Կթվորուհիների մեջ շրջանի ռեկորդը՝ իրեն հատկացված 12 կովից յուրաքանչյուրից 3.584 կգ կաթ, պատկանում է Ն. Մկրտչյանին: Նրա հետ միասին երեքհազարականների հանրապետական ակումբի անդամ են ևս 34 կթվորուհիներ: Կարելի է հիշատակել պանծալի աշխատավորների տասնյակ և հարյուրավոր անուններ, որոնցից սովորում, որոնց ձգտում են հավասարվել կոլտնտեսականներն ու սովխոզների բանվորները:

Լսելով հանրապետության որևէ անկյունում դրսևորված նոր նախաձեռնության մասին, շրջանից այնտեղ են շտապում մասնագետները: Նաև հրավիրում են իրենց մոտ: Այժմ, օրինակ, խաղողագործության, պտղաբուծության և գինեգործության գիտահետազոտական ինստիտուտի գիտնականների հետ միասին փորձեր են արվում միրգ աճեցնելու հայկական Սիբիրում: Չէ՛ որ ձմռանը Շիրակի դաշտավայրում խստաշունչ սառնամանիք է լինում: Գարունն ուշ է գալիս, աշունը կարճատև է, իսկ Հովհաննես Հակոբովիչը մտադրվել է «դեմ» գնալ ժողտնտպլանին: «Մեր լեռնային պայմաններում էլ կարելի է զարգացնել պտղաբուծությունը»:

Նա այնպիսի՛ խոր հետաքրքրություն ունի գիտության հանդեպ... Իսկ այն, ի դեպ, ապացուցեց, որ ախուրյանցիները կարո՛ղ են ստանալ տանձի և խնձորի կայուն բերք: Բավական է լինել «Սոֆյայի այգում»՝ ինչպես սիրով անվանում են մարդիկ այն աշխատանքը, որ իրենց հողում ներդրել է Հայկական ՍՍՀ պետական մրցանակի դափնեկիր, կենսաբանական գիտությունների թեկնածու Սոֆյա Ագույլյանը: Շրջանացված ցրտադիմացկուն սորտերն արդեն գրանցում են ստացել շատ գյուղերում:

Նոր, հետաքրքիր լուր ստանալով Ռոստովի մարզի Մյասնիկյանի շրջանից, Տոնոյանը մի պատվիրակության հետ ճանապարհ ընկավ դեպի այդ կողմերը: Նրանք մրցակիցներից փոխ առան դաշտավարության բարձր կուլտուրան: Իսկ երբ իրենց հերթին Ախուրյան եկան մյասնիկյանցիները, այժմ արդեն նրանց հերթն էր վերցնելու ախուրյանցիների փորձը: Հատկանշական է և այն, որ մրցակից երկու շրջանները հարվածային աշխատանքի համար հնգամյակի հոբելյանական տարում արժանացան ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽՍ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին:

— Աշխարհագրական լայն տարածում է ստացել մեր մրցությունը,— իր մտքերին մեզ հաղորդակից է դարձնում սոցիալիստական աշխատանքի հերոս, Արևիկի կոլտնտեսության կոմբայնավար Ա. Մինասյանը:— Մեր մրցակիցներն են նաև Խերսոնի մարզի Գորնոստայի շրջանի աշխատավորները: Տոնոյանի շնորհիվ մենք սկսեցինք և՛ մեր աշխատանքը հարգել, և՛ աշխարհ տեսանք:

— Իսկ ահա թե ինչ կասեմ ես,— զրույցին է միանում Ազատանի կոլտնտեսության օղակավարուհի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Նորա Ստամբոլցյանը.— Տոնոյանի դասերի մեջ գլխավորն այն է, որ նա կարողանում է գտնել մարդկանց սրտի բանալին: Փոքրի հետ փոքր է նա, մեծի հետ՝ պարզ ու հասարակ: Նրա մեջ մեծամտության նշույլ անգամ չկա: Այդ պատճառով էլ բոլորը հարգում են նրան...

...Ղարիբջանյան գյուղը հարուստ է հեղափոխական ավանդույթներով: Երբ պայթեց մեծ Հայրենականը, տղամարդիկ կամավոր մեկնեցին ռազմաճակատ: Մնացին միայն կանայք ու երեխաները: Այն դժնդակ օրերին տղաները Հովհաննեսին ընտրեցին սկզբնական կոմերիտական կազմակերպության ղեկավար: Լուսաբացից մինչև ուշ գիշեր բանում էին կոլտնտեսային դաշտում: Դպրոց հաճախում էին ձմռանը: Այդպիսին էր ժամանակը: Ավարտվեց պատերազմը: Քչերը վերադարձան իրենց տները: Աշխատող ձեռքերի խիստ կարիք էր զգացվում: Հասակ առած պատանիներն արդեն համարվում էին կոլտնտեսության վետերաններ: Այդ ժամանակ էլ Տոնոյանին ընդունեցին կուսակցության մեջ: Միայն 1948 թվականին նրան հաջողվեց իրականացնել իր վաղեմի իղձը՝ ընդունվել Լենինականի մանկավարժական ինստիտուտի պատմության ֆակուլտետը: Ուսումը համատեղում էր աշխատանքի հետ, ավարտեց գերազանցով: Եվ իսկույն նրան վերցրին որպես կուսակցության շրջկոմի հրահանգիչ:

Այսօր, շատ տարիներ անց, Հովհաննես Հակոբովիչը հուզմունքով է հիշում իր առաջին այցը Ազատանի կուսակցական կազմակերպություն: Ձիով ալացավ գյուղ, կանչեց կուսկազմակերպության քարտուղար Մ. Իկիլիկյանին: Նրանից խստորեն պահանջեց ժողովների արձանագրությունները: Իսկ քարտուղարը ուժեղ կամքի տեր մարդ էր. «Ի՞նչ խակ ես դու, երիտասարդ: Թե որ շրջկոմից ես՝ եղիր բարյացակամ»:

Ամբողջ կյանքում այս բառերը մեխվել են հի-

շողության մեջ: Մինչև օրս էլ, կոմպլեկտավորելով շրջկոմի կադրերը, Հովհաննես Հակոբովիչը սկսնակներին պատմում է իր պատմությունը: Ամփոփում է պարզ ու հասարակ. «Հրահանգիչը կուսակցության օգնականն է: Նրանից սպասում են ոչ թե հրամաններ, այլ պարզաբանումներ: Մարդկանց հետ պետք է վարվել չափազանց հարգալից: Եվ, որ ամենագլխավորն է, ոչ մի դեպքում չի կարելի վիրավորել նրանց ինքնասիրությունը»:

— Կուսակցական աշխատանքը մեծ վարպետություն է,— այսպես է դատում շրջկոմի քարտուղար Մանիկ Հակոբի Ոսկանյանը՝ Տոնոյանի հին և ազնիվ բարեկամը:— Ախր չորս կողմից մեզ «դիտում են», մենք միշտ կոմունիստների, տասնյակ հազարավոր աշխատավորների տեսադաշտում ենք: Մեր վարքագծում, անձնական կյանքում ամենաչնչին թերությունն անգամ կարող է զանազան ենթադրությունների առիթ դառնալ: Նման թյուրիմացություններից խուսափելու համար յուրաքանչյուր կուսակցական պարտավոր է ամենից առաջ խըստապահանջ լինել ինքն իր նկատմամբ:

Շրջկոմական այս դասերը լավ են յուրացրել գյուղական կոմունիստները:

— Կյանքում ամեն մեկը ցանկանում է նմանվել արժանավոր մարդու,— բարձրաձայն իր մտքերն է հաղորդում տրակտորիստ Լևոն Մկրտչյանը:— Ինձ համար այդպիսի անձնավորություն է Հովհաննես Հակոբովիչը: Մարդկանց համար միշտ հաճելի է նրա հետ շփվելը:

Մեկ անգամ չէ, որ ես առիթ եմ ունեցել ներկա լինելու նրա մեղմաբարո խոսակցությանը: Եվ միշտ զարմացնում է այն, որ նա զրուցակցին դիմում է անունով: Շրջանում ճանաչում է բոլորին առանց բացառության՝ փոքրից մինչև մեծը: Խոսում է հանգիստ, մեղմ ձայնով: Ինտոնացիան այնքան անկեղծ է, որ ամեն մարդու տրամադրում է անմիջականության: Թերևս հենց այդ է պատճառը, որ որևէ դեպք պատահելիս ախուրյանցիները շտապում են իրենց «առաջինի» մոտ: Ահա ջաջուռցի ծերունի Կարապետը եկել է խորհուրդ հարցնելու իր թոռան հարցով:

— Գիտեմ, ձեր տանը նեղվածք է: Դե, քանի որ Վազգենն ամուսնացել է, արդեն ժամանակն է, որ իր տուն-տեղն ունենա: Եղե՞լ եք սովխոզի դիրեկտորի մոտ:

— Հենց բանն էլ էդ է, է՛լի, նա էլ դեմ չէ:

— Բա էլ ի՞նչն է խանգարում:

— Շինանյութ չունենք:

— Կօգնենք:

Եվ հենց տեղնուտեղը, ծերունու ներկայությամբ, կապվում է ում հետ հարկն է:

Մտնում է մի երիտասարդ կին: Տեղացի է, բայց ուսուցչուհի աշխատելու համար նշանակում է ստացել մեկ ուրիշ շրջանում: Երեք տարի է ոչ մի կերպ չի կարողանում տեղափոխվելու թույլտվություն ստանալ: Հովհաննես Հակոբովիչը խոստանում է լուծել նրա հարցը...

Ի դեպ, նա ընդունելության օրեր է սահմանել նաև գյուղերում: Մարդիկ հենց իրենց բնակավայրում կամ ուղղակի դաշտում կարող են ցանկացած հարցով համարձակորեն դիմել նրան: Տոնոյանը բոլորի նկատմամբ ուշադիր է: Այդպիսին է նրա բնավորությունը՝ զգայուն, անբռնազբոսիկ: Եվ նրան հավատում են այն պարզ պատճառով, որ եթե խոստանում է, անպայման կկատարի իր խոստումը:

Մարդիկ այն էլ գիտեն, որ նա խիստ կպատժի ամենափոքր մեղքի համար: Չի հանդուրժում ավելորդ ներողամտությունը, անկազմակերպվածությունը, ամեն ինչում պետք է կարգ ու կանոն լինի: Վերջերս լսել էր, որ ջրային տնտեսության շինարարության վարորդ Իգիթ Հովհաննիսյանը լքել է ընտանիքը, զբաղվում է հարբեցողությամբ և ամիսներով աշխատանքի դուրս չի գալիս: Հովհաննես Հակոբովիչը սկզբնական կուսկազմակերպության քարտուղարին հանձնարարեց ժողովում քննարկել նրա հարցը: Կոմունիստները խիստ դատապարտեցին Հովհաննիսյանին անբարոյական արարքների համար: Միաձայն վտարեցին նրան կուսակցության շարքերից: Երբ շրջկոմի բյուրոյում հաստատում էին կուսկազմակերպության որոշումը, Տոնոյանն առաջինն արտահայտվեց վտարման օգտին: Եվ իսկույն դառնությամբ նկատեց. «Սա մե՛ր վրիպումն է»:

Իմ ծոցատետրերից մեկում ընդգծված է Տոնոյանի հետևյալ արտահայտությունը. «Բերքատվությունն սկսվում է լավ տրամադրությունից»: Մեծ իմաստ է դրված թևավոր դարձած այս արտահայտության մեջ: Վերջին հինգ տարում գյուղատնտեսական արտադրանքի միջին տարեկան աճը շրջանում կազմել է 70 տոկոս, տնտեսությունների դրամական եկամուտները ավելացել են 63 տոկոսով: Ուղղակի հիանալի թվաքանություն է:

Բարետես են դարձել նաև գյուղերը: Մարդիկ մոռացել են բնակչության երբեմնի տեղաշարժերը: Ախուրյանցիներն այժմ հարուստ են ապրում: Մեծ ու շուքով բնակելի տներ, կոմունալ հարմարություններ: Բնակարաններում՝ ժամանակակից կահույք, սառնարան, հեռուստացույց, դաշնամուր: Յուրաքանչյուր հինգերորդ ընտանիք ունի իր ավտոմեքենան: Տեսնելու բան է, թե ինչպես է հագնվում երիտասարդությունը:

Այսքան զարմանալի փոփոխությունները, անշուշտ, հնարավոր են դարձել շնորհիվ կազմակերպչական ու դաստիարակչական մեծ աշխատանքի, որ կոլեկտիվներում ծավալել են կոմունիստները: Ահա ևս մի բնորոշ գիծ. վերջերս Ոսկեհատի կոլտնտեսության սկզբնական կուսակցական կազմակերպությունում շրջկոմի բյուրոյի տված հաշվետվության ժամանակ կոմունիստ Մ. Սարգսյանի առաջարկությամբ ժողովը, բարձր գնահատական տալով շրջկոմի գործունեությանը, մի առանձին կետով նշեց. «Մինչև 1980 թվականը եռապատկել բանջարեղենի, կրկնապատկել շաքարի ճակնդեղի արտադրությունը, պլանից 50 տոկոսով ավելի արտադրել անասնապահական մթերքներ...»:

— Ինչի՞ց է բխում հեռանկարի նկատմամբ այդպիսի վստահությունը: Չէ՛ որ գյուղատընտեսական հողատարածությունները բոլորովին չեն ավելացել,— հարցնում եմ Հովհաննես Հակոբովիչին: Իսկ նա ծալում է մատները. «Մեքենայացում, քիմիացում, սելեկցիայի և սերմնաբուծության զարգացում...»:

Գյուղատնտեսական արտադրության շեշտակի վերելքի համար կուսակցության վերցրած կուրսի շրջանակներում այս հնգամյակն ունի իր առանձնահատկությունները: Այժմ, քան երբևէ, ամբողջ հասակով մեկ ծառանում է արդյունավետության բարձրացման, որակական ցուցանիշների բարելավման խնդիրը: Դա իր հերթին ուժեղացնում է կադրերի պատասխանատվությունը, նրանց իրազեկությունը, ձեռներեցությունը, հոգատարությունն այն մասին, որ ավելի լավ օգտագործվեն ներքին ռեզերվները:

— Գիտատեխնիկական հեղափոխությունը,— իր կարծիքն է հայտնում Հովհաննես Հակոբովիչը,— պահանջում է արմատապես փոխել տնտեսավարման ոճն ու մեթոդները, անկեղծ հարգանք տածել գիտնականների նկատմամբ, նրանց հետ խորհրդակցելու, հաշվի նստելու կարողություն և ցանկություն ունենալ: Ախր սա խորապես կուսակցական խնդիր է: Թերևս՝ ամենահրատապը:

Ահա ասօր էլ, աշխատանքից վերադառնալով ուշ երեկոյան, Հովհաննես Հակոբովիչը կնստի գրասեղանի առջև, կթաղվի ընթերցանության մեջ: Կարդում է ամենաբազմազան գրքեր, բայց ավելի շատ՝ քաղաքական ու տընտեսագիտական: Հաճույքով ու հափշտակությամբ է ուսումնասիրում կուսակցության ագրարային քաղաքականության հարցերը: Սեղանին հիմա ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի նյութերն են՝ նշումներով, ընդգծումներով: Ուսումնասիրում, գործնական հետևություններ է անում: Նա գիտի, որ ինքը, որպես շրջանի կոմունիստների ղեկավար, պետք է քաջատեղյակ լինի իրադարձություններից, իմանա այն ամենը, ինչ նոր է, առաջավոր: Նրա աշխատանքն է այդպիսին: Յուրահատո՛ւկ է: Հեղինակավո՛ր: Խորապե՛ս մարդկային:

---

# ԺԱՄԱՆԱԿԻՆ ԳՈՐԾԱՐԿԵԼ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՆՈՐ ԿԱՐՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**Է. Վ. ՂԱԶԱՐՅԱՆ**

*ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ արտադրական նոր կարողությունների գործարկման, արտադրության արդյունավետության և թողարկվող ապրանքների որակի բարձրացման վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կենսագործման բնագավառում զգալի հաջողությունների են հասել Հայկական ՍՍՀ մեքենաշինական արդյունաբերության ձեռնարկությունները։ 1977 թ. վերջերին գործարկվեց «Հայէլեկտրաապարատ» միավորման արդյունաբերական համալիրի առաջին հերթը, որի մեջ մտնում են գործիքաշինական արտադրությունը, մեխանիկական և նախաշինվածքային արտադրամասերը, սկսեցին գործել ներկման մեքենայացված գծերը, ներդրվում են ավտոմատ հաստոցներ։ Գլխամասային գործարանի փաթաթման արտադրամասը գրեթե լրիվին հագեցված է ավտոմատ և կիսաավտոմատ սարքավորումներով։ Միավորման էջմիածնի գործարանում շարք մտավ տեխնոլոգիական նոր գիծ։ Այստեղ պոլիմերային նյութերից պատրաստվող իրերը կթողարկվեն ճնշման տակ կատարվող ձուլմամբ։*

*«Էլեկտրասարք» միավորման բոլոր գործարաններում ներդրվում են առաջավոր տեխնիկան ու տեխնոլոգիան, որը հնարավորություն ընձեռեց արդեն 1977 թվականին 25 տոկոսով նորացնել արտադրանքի անվանացանկը։ «Երազ» գործարանը տասներորդ հնգամյակի 22 ամսում իրացրել է 5,1 մլն ռուբլու կապիտալ ներդրում, գործարկել է 3 մլն ռուբլու հիմնական ֆոնդ։ Քանաքեռի ալյումինի գործարանում իրացվել է կոնդենսատորային փայլաթիթեղի արտադրամասի նախագծային կարողությունը, աշխատանքներ են տարվել կաղապարման յոթ ագրեգատների տեղակայման նպատակով, որը, առանց լրացուցիչ կապիտալ ծախսերի, 50 տոկոսով կապահովի նախագծային կարողության մեծացումը։*

*Կիրովականում 1977 թվականի առաջին կիսամյակում հանձնվել է 7 մլն 811 հազար ռուբլու հիմնական արտադրական ֆոնդ։ Արտադրական նոր կարողություններ են շարք մտել քիմիական, «Ավտոմատիկա», «Ավտոգենմաշ», գերճշգրիտ հաստոցների գործարաններում։ Նախագծային կարողության է հասել ֆիլտրով սիգարեթների համար ացետատային քուղերի արտադրությունը։ Իրացվել է ծրագրային կառավարմամբ հաստոցների սերիական թողարկումը։ «Հայէլեկտրալույս» միավորման Կիրովականի լուսատեխնիկական գործարանում վերակառուցվել է գալվանական արտադրամասը, մոնտաժվել են երկու հոսքային գծեր, կարգավորվել է ներգործարանային տրանսպորտի աշխատանքը։ Կամոյի անվան տրիկոտաժի ֆաբրիկայում տեղադրվել է բարձրարտադրողական ավելի քան 20 մեքենա, պլանից դուրս թողարկվել է մեկ մլն ռուբլուց ավելի արտադրանք։*



*Հայկական ՍՍՀ աշխատավորների ստանձնած սոցիալիստական պարտավորություններում 1978 թվականի պլանի կատարման ու գերակատարման համար նշված է, որ ներդրվելու է նոր տեխնիկայի 750 միջոցառում, այդ թվում՝ 140 մեքենայացված և ավտոմատացված հոսքային գծեր, առաջադիմական տեխնոլոգիական 120 կարևորագույն պրոցեսներ, կոմպլեքս մեքենայացված և ավտոմատացված 30 արտադրամաս և տեղամաս, թողարկվելու են 180 նոր տեսակի մեքենաներ ու սարքեր...։*

*Ամբողջ երկրի մասշտաբով լայն թափ է ստացել արտադրության արդյունավետության և թողարկվող ապրանքների որակի համար մղվող պայքարը։ Անշեղորեն աճում է բարձրորակ ապրանքների թողարկումը, ամեն տարի իրացվում է ավելի քան երեք հազար նոր մեքենա և սարքավորում, արտադրությունից հանվում են ավելի քան 1,8 հազար տեսակի հնացած ապրանքներ։ Հենց այստեղ է դրսևորվում գիտատեխնիկական առաջընթացի ազդեցությունը երկրի արդյունաբերության և, առաջին հերթին, մեքենաշինության առաջատար ճյուղերի վրա։ Նոր տեսակի ապրանքների մասսայական իրացումը լրացուցիչ դըժվարություններ է ստեղծում դրանց արտադրական կարողությունների նախագծման ու իրացման գործում։ Հնգամյակի անցած երկու տարում թերակատարվել են արտադրական շատ կարողությունների գործարկման պլանները, մեծացել է թերակատարված շինարարության և չտեղակայված սարքավորման ծավալը։*

*Հետևաբար, օրակարգի հարց է դառնում արդյունաբերական ձեռնարկությունների արտադրակարողությունների կոմպլեքսային նախագծման պրոբլեմը, տարբեր մասնագիտական պրոֆիլի կոլեկտիվների գործունեության կոորդինացումը, կապիտալ ներդրումների պլանավորման և օգտագործման նկատմամբ եղած մոտեցման փոփոխումը։ ՍՄԿԿ XXV համագումարում Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Հարկավոր է փոխել բուն մոտեցումը կապիտալ ներդրումների պլանավորման և օգտագործման նկատմամբ, ապահովել գործող արտադրության և նորի կառուցման՝ որպես միասնական ամբողջի պլանավորումը։ Կապիտալ ներդրումները մինիստրություններին ու գերատեսչություններին պետք է հատկացվեն ոչ թե ընդհանրապես, ոչ թե նոր օբյեկտների համար, այլ արտադրանքի պլանավորված աճի համար»* (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, *էջ 68)։*

*Պատրաստի արտադրանքի ծավալի հիման վրա արտադրության պլանավորումը պահանջում է կարողությունները նախագծել ըստ հետևյալ հիմնական փուլերի՝ պատրաստի արտադրանքի նկատմամբ հասարակության պահանջարկի որոշումը. տվյալ արտադրության տեխնոլոգիական նախապատրաստումը. արտադրատեխնոլոգիական լավագույն կառուցվածքի հաշվարկը պլանային տարում արտադրանքի պահանջարկի սահմաններում. արտադրատեխնոլոգիական լավագույն կառուցվածքների բաշխումն ըստ գործող կամ նոր ձեռնարկությունների շինարարություններում. սարքավորման պարկի բեռնվածության և աշխատատեղերի բարելավումը. կազմակերպվող արտադրակարողության տեխնիկատնտեսական հիմնական ցուցանիշների հաշվարկը և դրանց համադրումն ըստ ճյուղային, հանրապետական, տնտեսական շրջանի նորմատիվների։ Հենց այս բոլոր հարցերն էլ պետք է քննության առնվեն արտադրակարողությունները պլանավորելիս։*

*Նոր արտադրանքի նախագծման ու ներդրման գործում մեծ է գիտաարտադրական և արտադրական միավորումների դերը։ Երկրի մասշտաբով 1976 թվականի վերջերին կար 3312 արտադրական և գիտաարտադրական միավորումներ, որոնք թողարկում էին իրացված արտադրանքի ամբողջ ծավալի 40,5 տոկոսը։ Օրինակ, Հայկական ՍՍՀ մեքենաշինության մեջ ստեղծվել են խոշոր միավորումներ և ինստիտուտներ, որտեղ մշակվում են տարբեր սերունդների հաշվողական տեխնիկայի միջոցներ, թվային ծրագրային կառավարման հաստոցներ, շարժիչներ, շարժական էլեկտրակայաններ, կապի միջոցներ, սարքեր և այլն, որոնք ներդրվում են կամ բուն միավորումների արտադրության մեջ, կամ հանձնվում են այլ կազմակերպությունների։ Ուստի և անհրաժեշտ է, որ այդ միավորումները նախագծեն նոր ապրանքների արտադրակարողություններ։*

Արդյունաբերական ձեռնարկության արտադրակարողությունը բարձրորակ արտադրանքի տարեկան առավելագույն հնարավոր թողարկումն է կամ հումքի վերամշակման ծավալը (պլանային տարվա համար նախատեսված անվանացանկով և տեսականիով)՝ արտադրական սարքավորման և արտադրատարածքի լրիվ օգտագործմամբ, հաշվի առնելով առաջավոր տեխնոլոգիայի կիրառումը, արտադրության և աշխատանքի կազմակերպման բարելավումը: Հետևաբար, վերոհիշյալ հասկացությունն ընդգրկում է մի շարք խնդիրներ, որոնք վերաբերում են արտադրանքի որակին, անվանացանկի ձևավորմանը, կոնկրետ պայմաններում արտադրության և կառուցվածքի աշխատանքի կազմակերպմանը: Նախագծման առաջադրանքի մեջ միայն արտադրանքի թողարկման ծրագիրը և պլանային տարին համարվում են տրված մեծություններ, իսկ արտադրանքի տեխնոլոգիական պրոցեսը, ըստ այդ ծրագրի, սարքավորման պարկի և ձեռնարկության կառուցվածքը, դրա քանակական ու որակական կազմը, արտադրատարածքի չափերը և տեխնիկատնտեսական մյուս ցուցանիշները համարվում են որոնելի մեծություններ: Սակայն ստանդարտների, համապատասխան մեթոդիկաների, հրահանգների բովանդակության վերլուծությունը ցույց տվեց, որ արդյունաբերական արտադրության պլանի տեխնիկատնտեսական հիմնավորման համար կիրառվում են առկա կամ գործող արտադրակարողությունների հաշվարկները: Դրանցում բազային կարողությունն արդեն նախատեսված է համարվում արտադրության տեխնոլոգիական նախապատրաստման փուլում:

Նախագծման միասնական մեթոդիկայի բացակայությունն իր հերթին հանգեցնում է կարողության ձևավորման և գործարկման տեխնիկատնտեսական խնդիրների շփոթության, պլանավորման մի մակարդակը մյուսով փոխարինելուն: Բանն այն է, որ ձեռնարկության գործող կարողությունը պետք է ապահովի տեխնիկատնտեսական համապատասխան ցուցանիշների մակարդակը ոչ պակաս, քան նախատեսված է: Իսկ պլանավորման պրակտիկայում օգտագործվում է ավելի թանկ նստող ուղին, այն է՝ արտադրական ստորաբաժանումների փուլային զարգացումը, այսինքն՝ անցում արտադրության ավելի վատ պայմաններից, որոնք վերցվում են որպես բազային մեծություն, դեպի ավելի լավը, որոնք քիչ ծախսումներով ապահովում են ավելի շատ արտադրանքի թողարկումը: Արտադրակարողության մեծացման նման պրակտիկան մեքենաշինության շատ ճյուղերի համար դառնում է անընդունելի, քանի որ կրճատվում է ապրանքների անվանացանկի նորացման ժամանակամիջոցը, կազմելով մեկից հինգ տարի: Այսպիսի ճյուղերից են, օրինակ, սարքաշինությունը, ռադիոտեխնիկական, էլեկտրոնային և այլ ճյուղեր, հետևաբար, անհրաժեշտ է արտադրակարողության նախագծման և հաշվարկման միասնական սիստեմ, սկսած ապրանքների փորձնական նմուշից (փորձնական թողարկումից):

Նախ անհրաժեշտ է հիմնվել արտադրության պլանաչափ և համամասնական զարգացման սոցիալիստական օրենքի վրա: Դրա համար որոշվում է, թե հասարակությունը հեռանկարում ինչ պահանջարկ ունի տվյալ ապրանքի նկատմամբ: Ճշտելով այդ ծրագիրը, կարելի է սահմանել գնողունակ ապրանքների մատակարարման տարեկան ծավալը նատուրալ ու արժեքային արտահայտությամբ, և կոնկրետ մատակարարող ձեռնարկությունները: Դրանով իսկ մասամբ որոշվում է նախագծվող արտադրության նյութատեխնիկական մատակարարման ծավալն ու համամասնությունը: Գնման ստանդարտ և օրիգինալ դետալները պետք է համապատասխանեն նոր ապրանքի կառուցվածքի աշխատավճարման կանոններին: Սակայն դրանք, թեև նախագծվող նոր արտադրության հիմքն են, բայց ի վիճակի չեն ամբողջովին ապահովել ապրանքի պահանջվող որակը: Անհրաժեշտ է տեխնոլոգիական, գործառնության, երթուղային և կոմպլեկտավորման քարտերի օգնությամբ նկարագրել արտադրական հիմնական պրոցեսը, ցույց տալ սարքավորումների կոմպլեկտներն ու աշխատատեղերը, որտեղ պատրաստվում են դետալները, հավաքվում և մոնտաժվում են հանգույցները, ստուգվում դրանց համապատասխան պարամետրերը՝ նպատակ ունենալով ապահովել վերջնական ապրանքի անհրաժեշտ որակը: Միմյանց փոխարինող սարքավորումների կոմպլեկտների և աշխատատեղերի ճիշտ



ընտրությամբ, կոնկրետ տեխնոլոգիական, հավաքման-մոնտաժային և կարգավորման գործողություններ կատարող բանվորական բարձրորակ կադրերով միայն կարելի է ապահովել ապրանքների որակի նկատմամբ եղած բոլոր պահանջները: Միմյանց փոխարինող սարքավորումների կոմպլեկտների և աշխատատեղերի այսպիսի ընտրությունն ու վերլուծությունն աշխատատար տեխնոլոգիական խնդիր է, որի լուծումով էլ, վերջին հաշվով, պայմանավորված է նախագծվող արտադրակարողությունը և ապրանքի որակը:

Նոր ապրանքի պատրաստման հիմնական տեխնոլոգիական պրոցեսը նկարագրելուց հետո անհրաժեշտ է անցկացնել միմյանց փոխարինող սարքավորումների միատեսակ կոմպլեկտների և աշխատատեղերի վերախմբավորում: Նման խմբավորումը հնարավորություն կընձեռի առանձնացնելու նյութերի, պատրաստուքների, հարմարանքների, կտրող և չափող գործիքների հիմնական տեսակները, հիմնական արտադրությունը կազմակերպելու համար որոշելու դրանց նկատմամբ եղած պահանջը: Դրանով իսկ ավելի լրիվ է բացահայտվում նյութատեխնիկական մատակարարման անվանացանկը:

Մյուս կողմից, բազային տեխնիկատնտեսական անհրաժեշտ ինֆորմացիա է ստացվում միարդյունքային հիմնական արտադրական-տեխնոլոգիական կառուցվածքի բարելավման մասին, որի հիմքում դրված է արտադրանքի (ապրանքի) մեկ միավորի վրա տեսակարար ծախսերի իջեցման ընդհանուր միտումը՝ արտադրության տարեկան ծավալի մեծացմամբ հանդերձ: Արտադրանքի տարեկան հենց այդպիսի ծավալը և դրա բազմապատիկ մեծություններն են բնորոշում միարդյունքային արտադրական-տեխնոլոգիական նախագծվող կառուցվածքների լավագույն կարողությունը: Ըստ որում, որոշակիորեն կայունանում են հիմնական արտադրությունների նախագծվող տեխնիկատնտեսական ցուցանիշները՝ սարքավորումների պարկի և աշխատատեղերի, արդյունաբերական-արտադրական անձնակազմի, արտադրատարածքի կառուցվածքը, հիմնական արտադրաստորաբաժանումների մասնագիտացման ձևը և այլն:

Միարդյունքային արտադրական-տեխնոլոգիական կառուցվածքների բարելավման խնդրի լուծումն ունի ևս մի կարևոր հանգամանք՝ կապված դրանց տեղաբաշխման հետ: Եթե հաշվարկելիս ստացվել են մի քանի միարդյունքային լավագույն արտադրական-տեխնոլոգիական կառուցվածքներ, ապա դրանք կարող են տեղաբաշխվել մի քանի ձեռնարկություններում ու միավորումներում, որտեղ հնացած ապրանքն արտադրությունից հանելու հետևանքով կամ այլ պատճառներով գոյացել է կարողության բավականաչափ ռեզերվ: Այդ դեպքում վերանում է արդյունաբերական նոր ձեռնարկություններ կառուցելու անհրաժեշտությունը և պետք է լուծվեն գործող ձեռնարկությունների ընդլայնման կամ վերակառուցման հետ կապված հարցերը:

ՍՄԿԿ XXV համագումարում նշվեց, որ «Հարկավոր է նյութական և ֆինանսական ռեսուրսներն առաջին հերթին օգտագործել գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինման ու վերակառուցման համար, օգտագործել այնտեղ, որտեղ կարելի է արտադրական կարողություններն ընդլայնել առանց նոր շինարարության կամ ավելի պակաս տեսակարար կապիտալ ծախսումներով» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 68):

Հետևաբար, անհրաժեշտ է գործող ձեռնարկություններում այնպես տեղաբաշխել նախագծվող միարդյունքային արտադրական-տեխնոլոգիական կառուցվածքները և դրանց հիմնական ստորաբաժանումները, որ այդ ձեռնարկությունների ընդլայնման և վերակառուցման կապիտալ ծախսերը հասնեն նվազագույնի, իսկ արտադրության մեջ նոր ապրանքներ ներդնելու ժամկետները չգերազանցեն գործարկվող ձեռնարկությունների նախագծային կարողությունների իրացման տևողության նորմաները: Դրա համար հարկ է իմանալ համապատասխան ձեռնարկությունների կարողության ռեզերվները պլանային տարում և լուծել հիմնական արտադրական ֆոնդերի մեջ նվազագույն լրացուցիչ կապիտալ ներդրումների տնտեսական խնդիրը՝ միարդյունքային արտադրական-տեխնոլոգիական լավագույն կառուցվածքի հիմնական ստորաբաժանումների զուգակցմամբ:

ՍՄԿԿ XXV համագումարում նշվեց, որ արտադրակարողությունների թերի
օգտագործման հետևանքով տարեցտարի ստանում ենք միլիարդավոր ռուբլի-
ների պակաս արտադրանք։

Արդեն նախագծման փուլում արտադրության զուգակցման հարցին ճիշտ
մոտենալու դեպքում իսկ կհաջողվի ավելի լրիվ օգտագործել եղած արտադրա-
կարողությունները։ Ընդ որում, անհրաժեշտ է հաշվի առնել տնտեսական այն
շրջանի յուրահատկությունը, որտեղ տեղակայված է տվյալ ձեռնարկությունը,
այսինքն՝ հաշվարկների մեջ մտցնել աշխատավարձի և կապիտալ ներդրումների
ճյուղային ու տերիտորիալ ուղղման գործակիցներ (օրինակ, Հայկական ՍՍՀ
բարձր լեռնային պայմանները հաշվի առնելիս պետք է մտցնել կապիտալ ներ-
դրումների ուղղման գործակից, որ հավասար է 1,2)։ Այստեղ անհրաժեշտ է
հաշվի առնել նաև հումքը, կիսաֆաբրիկատները, կոմպլեկտավորման դետալ-
ները տեղ հասցնելու տրանսպորտային ծախսերը, այսինքն՝ լուծել նյութատեխ-
նիկական մատակարարման խնդիրները։ Միարդյունքային արտադրական-տեխ-
նոլոգիական կառուցվածքների նախագծվող հիմնական ստորաբաժանումների
զուգակցման ու տեղաբաշխման հարցը դրականորեն կլուծվի, եթե տնտեսական
շրջանի յուրահատկության և նյութական արժեքների փոխադրման ծախսերը
չգերազանցեն կապիտալ ներդրումների գծով եղած խնայողություններին։ Հա-
կառակ դեպքում քննության է դրվում նոր ձեռնարկության շինարարության
հարցը։

Արդյունաբերության առանձին ճյուղերում դեռևս մեծ են սարքավորում-
ների պարապուրդները։ Ինչպես հայտնի է, երկրի մեքենաշինական գործարան-
ներում անցյալ տարի անգործության էին մատնված օրական տասնյակ հազա-
րավոր հաստոցներ։ Օրինակ, մեքենաշինական ձեռնարկությունում հաստոցի
մեկհերթյան պարապուրդի զուտ կորուստը, միջին ցուցանիշներով հաշված,
կազմում է 13 ռուբլուց ոչ պակաս։ Ժողովրդական տնտեսության տարեկան կո-
րուստն այդպիսի մեծաքանակ սարքավորման և աշխատուժի անգործության
հետևանքով կազմում է 0,5 մլրդ ռուբլի։ Իսկ եթե հաշվի առնենք հումքի, նյու-
թերի, դետալների, հավաքովի միավորների, էներգետիկ ռեսուրսների կոնսեր-
վացումը, ապա կորուստներն զգալիորեն ավելի մեծ կլինեն։ Հետևաբար, ար-
դյունաբերական ձեռնարկության արտադրական կարողությունը նախագծելիս
անհրաժեշտ է բացառել նման իրադրության հնարավորությունը։ Դրա համար
առաջին հերթին որոշվում է սարքավորման միատիպ կոմպլեկտների և աշխա-
տատեղերի ժամանակի արդյունավետ ֆոնդը՝ ըստ ձեռնարկության հիմնական
արտադրական ստորաբաժանումների, ինչպես նաև ապրանքների պատրաստ-
ման աշխատատարությունը։ Այս մեծությունների հարաբերությունը կտա հա-
մապատասխան սարքավորումների և աշխատատեղերի բեռնվածության գոր-
ծակցի մեծությունը, որն իր հերթին պետք է զուգորդվի ճյուղային նորմատիվ
մեծության հետ։ Դրանով իսկ որոշվում է կարողության ռեզերվի մեծությունը։
Նախագծման այդ փուլում աշխատաժամանակի խնայողության պահանջը դըր-
վում է առաջին տեղում։ Անհրաժեշտ է լուծել սարքավորման կոմպլեկտների և
աշխատատեղերի բեռնվածությունը բարելավելու տնտեսական կոնկրետ խըն-
դիրը։ Դա հնարավորություն կընձեռի՝ որոշելու արտադրանքի պրոֆիլային
կամ լրացուցիչ անվանացանկի ծավալը, որի դեպքում կապահովվեր արտա-
դրական, տեխնոլոգիական, ստուգող-չափող սարքավորման և աշխատատեղերի
բեռնվածության՝ նորմատիվին մոտ գործակիցը։ Դրանով էլ, ըստ ձեռնարկու-
թյան հիմնական ստորաբաժանումների, որոշվում է բարձրորակ արտադրանքի
առավելագույն հնարավոր տարեկան թողարկումը՝ արտադրական սարքավոր-
ման և արտադրատարածքի լրիվ օգտագործման դեպքում։

Ինչպես երևում է վերոշարադրյալից, արտադրակարողության նախագծումն
ըստ հիմնական ստորաբաժանումների առնչվում է փոխադարձաբար կապված
տեխնոլոգիական, տնտեսական ու տրանսպորտային մի շարք խնդիրների լուծ-
ման հետ։

Սակայն դրանով ավարտված չպետք է համարել ձեռնարկության արտա-
դրակարողությունների նախագծումը, չնայած մի շարք հրահանգներում և մե-



թոդական նյութերում քննության է առնվում միայն արտադրական հիմնական
ստորաբաժանումների կարողությունը։

Աշխատանքի բարձր արտադրողականության հասնելու համար հատուկ
ուշադրություն պետք է նվիրել նոր տեխնիկայի ներդրման պլանների կատար-
ման և աշխատանքի գիտական կազմակերպման, ձեռքի աշխատանքը օժան-
դակ, բեռնման-բեռնաթափման բնագավառում կրճատման վրա։ Առաջին հեր-
թին սահմանվում է արտադրական հիմնական անընդհատ պրոցեսի ապահով-
ման, տրանսպորտային ռիթմիկ փոխադրումների և նյութական արժեքների
պահպանման համար անհրաժեշտ աշխատանքների ու ծառայությունների ան-
վանացանկն ու տարեկան ծավալը։ Դրանից հետո անցկացվում են համանման
հաշվարկներ, որոնք, ըստ հիմնական ստորաբաժանումների, կիրառվել էին
արդյունաբերական ձեռնարկությունների արտադրակարողության նախագծման
համար։ Սակայն օժանդակ և այլ արտադրության համար տեղաբաշխման գոր-
ծոնը հստակորեն նշված է միավորման շրջանակներով և տնտեսական շրջանով։

Հիմնական, օժանդակ, սպասարկող արտադրության և պահեստային տըն-
տեսության գծով ստացված նախագծային կարողության տեխնիկատնտեսական
ցուցանիշներն առանձին-առանձին պետք է հանգեցվեն արտադրության ամբողջ
կոմպլեքսը բնորոշող ընդհանուր ցուցանիշներին։ Օրինակ, արտադրական-ար-
դյունաբերական անձնակազմի թիվը և նրա կառուցվածքը որոշվում է աշխա-
տողների կատեգորիայով, աշխատավարձի և խրախուսանքի ֆոնդով, աշխա-
տանքի արտադրողականությամբ, ձեռնարկության ընդհանուր մակերեսով, շա-
հութաբերությամբ, եկամտով, կապիտալ ներդրումների փոխհատուցման ժամ-
կետներով և այլն։ Ընդհանուր ցուցանիշները պետք է զուգադրվեն ճյուղային
ու տերիտորիալ նորմատիվների հետ և վերագրվեն արտադրական նոր կարո-
ղության գործարկման պլանային տարուն։

Նոր ապրանքների թողարկման արտադրակարողության նախագծումն ար-
դյունաբերական ձեռնարկություններին հնարավորություն կընձեռի՝ ստանալու
նորմատիվորեն հիմնավորված բազային ինֆորմացիա արտադրության ար-
դյունավետության և թողարկվող ապրանքի որակի բարձրացման համար։

ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ
Կենտկոմի նամակում շեշտված է, որ բարձր արդյունավետության ու որակի
ձեռքբերումն անխզելիորեն կապված է արտադրական օբյեկտների գործար-
կումն արագացնելու, արտադրական ֆոնդերը լրիվ օգտագործելու, արտադրան-
քի տեխնիկական մակարդակը, հուսալիությունն ու որակը բարձրացնելու հետ։

---

# ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

**Վ. Կ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ**
**Ա. Հ. ԻԿԻԼԻԿՅԱՆ**
**Հ. Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ**

*ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՆՅՈՒԹԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԲԱԶԱՅԻ ստեղծման ժամանակաշրջանում առանձնապես հրատապ են դառնում աշխատանքի արտադրողականության, արտադրանքի որակի և հասարակական արտադրության արդյունավետության համակողմանի բարձրացման խնդիրները։ Այդ պրոբլեմի լուծման առավել գործուն միջոցներից մեկը արտադրանքի որակի բարելավումն է, որը նպաստում է տեխնիկական առաջընթացին, էկոնոմիկայի զարգացման բարձր տեմպերի ապահովմանը, նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների, արտադրակարողությունների ավելի նպատակահարմար օգտագործմանը և, վերջին հաշվով, արտադրության հետըզհետե աճող պահանջների և ժողովրդի հարաճուն պահանջմունքների բարելավմանը։ Գիտատեխնիկական հեղափոխության ժամանակակից փուլը նախ բնութագրվում է արտադրության նոր ճյուղերի զարգացմամբ, մեքենաների, սարքավորումների և գործիքների կատարելագործմամբ, նոր տեսակի նյութերի ներդրմամբ, ձեռնարկությունների մասնագիտացմամբ և միջճյուղային կոոպերացմամբ։ Մեր երկրի արդյունաբերության մեջ տեխնիկական առաջընթացի բուռն տեմպերի, մեքենայացման և ավտոմատացման մակարդակի աճի շնորհիվ իրականացվում է արտադրական սարքավորումների արագ դիֆերենցացիա, այժմ դրանք, որպես կանոն, միմյանցից մեկուսացված չեն, այլ մտնում են մեքենաների, մեխանիզմների, ավտոմատ գծերի բարդ համակարգի մեջ։ Այդպիսի պայմաններում նյութերի, դետալների և տեխնիկական սարքերի որակը, դրանց նպատակահարմար օգտագործումը և նյութական ու աշխատանքային ռեսուրսների խնայողության ռեժիմը նպաստում են մեքենաների, մեխանիզմների, ձեռնարկությունների արտադրական կոմպլեքսների և, ամբողջությամբ վերցրած, տնտեսական շրջանների աշխատանքի առավել արդյունավետությանը։*

*Այդ բարդ պրոբլեմի լուծման հուսալի երաշխիք է արտադրության, ինչպես և արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային համակարգի ստեղծումը։*

*Իններորդ հնգամյակում և տասներորդ հնգամյակի անցած երկու տարիներին արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային համակարգի ստեղծման և արմատավորման գործում զգալի հաջողությունների են հասել նաև Հայկական ՍՍՀ արդյունաբերական ձեռնարկությունները։ Արտադրանքի ատեստացիայի, աշխատանքի կազմակերպչական ձևերի կատարելագործման, սոցիալիստական մրցության հետագա զարգացման հարցերը մշտապես կուսակցական կազմակերպությունների տեսադաշտում են։*

*Պրակտիկան ցույց է տվել, որ որակի կառավարման կոմպլեքսային համակարգը էականորեն նպաստում է ձեռնարկությունների աշխատանքի որակական ցուցանիշների բարելավմանը, արտադրության տեխնիկական մակարդակի և արդյունավետության բարձրացմանը։*



*Արտադրության կառավարման և արդյունավետության բարձրացման հետ կապված խնդիրները հասարակության զարգացման բոլոր փուլերում կարևոր դեր են խաղացել։*

*Զարգացած սոցիալիզմի արդի փուլում հետզհետե ավելի է կարևորվում հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը։ Այդ հանգամանքը շեշտվել է ՍՄԿԿ XXIV և XXV համագումարներում, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումներում, ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթներում։ Վերջին տասնամյակը կարելի է բնութագրել որպես հասարակական արտադրության բոլոր օղակների կառավարումը զարգացնելու ու կատարելագործելու ասպարեզում առավել ակտիվ ստեղծագործական-հետազոտական և գործնական աշխատանքի ժամանակաշրջան։ Դա կապված է նախ և առաջ ժամանակակից արտադրության զգալի բարդացման, դրա մասշտաբների մեծացման հետ։ Ներճյուղային ու միջճյուղային կապերի ընդլայնումը հանգեցրել է այն բանին, որ առաջնահերթ նշանակություն են ստացել արտադրության, շրջանառության, փոխանակության ու սպառման տարբեր օղակների, գիտական ու տեխնիկական կազմակերպությունների գործունեության պլանաչափ և համակցված զարգացման հարցերը։ Ծավալվող գիտատեխնիկական հեղափոխությունն առաջադրել է կառավարման բնագավառի նոր խնդիրներ, որոնք կապված են առավել արդյունավետ տեխնիկական, տեխնոլոգիական ու կազմակերպական լուծումների մշակման ու կիրառման, դրանց նվաճումների արմատավորման, նոր տեխնիկայի յուրացման արագացման, այդ գործոնների հետ կապված ծախսումների կրճատման հետ։*

*Մեր հանրապետության արդյունաբերության առաջատար ճյուղերից է մեքենաշինությունը, որն ընդգրկում է 150-ից ավելի ինքնուրույն ձեռնարկություններ և որի արտադրանքի տեսակարար կշիռն արդյունաբերության մեջ 1976 թվականին, ըստ արտադրանքի թողարկման ծավալի, կազմել է 24,9 տոկոս։ Արտադրական նման պոտենցիալի առկայությունը ինքնին խոսում է այս ճյուղում արտադրության կառավարման և արդյունավետության բարձրացման կարևորության մասին։ Այդ տնտեսական և գիտատեխնիկական մեծ պոտենցիալը հնարավորություն ընձեռեց և անհրաժեշտ դարձրեց ուշադրությունը բևեռել արտադրության զարգացման ինտենսիվ գործոնների վրա, առաջին պլան մղելով արտադրության արդյունավետության բարձրացման, արտադրանքի որակի բարելավման, արտադրության կառավարման և բոլոր տեսակի աշխատանքների արտադրողականության բարձրացման խնդիրը։ Կառավարման ողջ համակարգը նպաստում է արտադրության ինտենսիվացման համար առավել բարենպաստ պայմանների ստեղծմանը։*

*Այսպես, հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ 1977 թ. տնտեսվել է ավելի քան 30 հազար մարդու աշխատանք, ազգային եկամուտն աճել մոտ 7,29 տոկոսով. արդյունաբերական արտադրանքը, 1976 թվականի համեմատությամբ, աճել է 6,98, աշխատանքի արտադրողականությունը՝ 3,5 տոկոսով և այդ բարձրացման հաշվին ստացվել է արտադրության աճի 48 տոկոսը։ Իսկ արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման շնորհիվ ստացված տնտեսումը, 1976 թվականի համեմատությամբ, աճել է մոտ 10 մլն ռուբլով։ Ժամանակակից արտադրության արդյունավետության բարձրացման համար պահանջվում է տնտեսական ու տեխնիկական այնպիսի պրոբլեմների առաջնահերթ լուծում, ինչպիսիք են թողարկվող արտադրանքի անվանացանկի և տեխնոլոգիական սարքավորումների նորացումը, արտադրանքի որակի կառավարումը, նյութական ծախսերի կրճատումը, արտադրապրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման մակարդակի բարձրացումը, գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացումը և այլն։*

*Կյանքն առաջադրել է բազմաթիվ պրոբլեմներ, որոնց հրատապ լուծման համար օբյեկտիվ նախադրյալներ են ստեղծվել։ Այս առումով կուսակցության XXV համագումարն անհրաժեշտ գտավ մշակել պրոգնոզներ ու ծրագրեր երկա-*

րատև հեռանկարի համար և որոշեց հեռանկարային պլանները դարձնել պլանավորման հիմնական ձև։ Տարեցտարի մեծանում է արդյունաբերական նոր արտադրանքների տեսակարար կշիռը, կիրառվում են նորագույն տեխնոլոգիական պրոցեսներ, տեղադրվում են մեքենայացված հոսքային գծեր և այլն։ Այսպես, 1977 թվականին հանրապետությունում ստեղծվել են նոր տիպի մեքենաների, սարքավորումների, ապարատների, ավտոմատացման միջոցների մոտավորապես 60 նոր նմուշներ, ձեռնարկություններում տեղադրվել են շուրջ 100 մեքենայացված ավտոմատ գծեր, կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման են ենթարկվել ավելի քան 50 տեղամասեր, արտադրամասեր և արտադրություններ, ներդրվել են շուրջ 18 հազար գյուտեր և ռացիոնալիզատորական առաջարկություններ։ 1978 թվականի սկզբին պետական որականիշ են ունեցել 1156 արտադրատեսակներ։

Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման գործում անգնահատելի նշանակություն ունի գիտատեխնիկական առաջընթացը, մասնավորապես՝ գիտության ու տեխնիկայի նվաճումների մասսայական կիրառումը, որի շնորհիվ խորանում են աշխատանքի հասարակական բաժանումն ու արտադրության մասնագիտացումը, կատարելագործվում հասարակության կառավարման համակարգը։ Նոր տեխնիկայի արմատավորումը, արտադրության տեխնոլոգիայի բարելավումը, տեխնիկական կատարելագործումները և հայտնագործություններն ու գյուտերը ապահովում են նյութական արժեքների վիթխարի տնտեսում, աշխատանքի պայմանների բարելավում, արտադրողականության և արտադրանքի որակի բարձրացում, թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցում։

Գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորումը մեծապես նպաստում է արտադրության կառավարման բարելավմանը, տալիս տնտեսական առումով մեծ արդյունք։ Դրանում համոզվելու համար բավական է նշել հաշվողական կենտրոնների ստեղծման հանգամանքը, որոնց թիվն ամենուր աճում է։ Նման կենտրոն կազմակերպվել է նաև մեր հանրապետության արտադրության առաջատար ենթաճյուղերից՝ էներգետիկայում։ Ստեղծված հաշվողական կենտրոնի աշխատանքի շնորհիվ «Հայգլխէներգոյի» գործունեության տեխնիկատնտեսական օրական ցուցանիշները, նախկինում եղած 5 ժամվա փոխարեն, այժմ կարող է ստացվել 5 րոպեի ընթացքում։ Տեղադրված մեքենաները հնարավորություն են ընձեռում ո՛չ միայն միմյանց կապել տվյալ ճյուղի բոլոր 45 ձեռնարկությունները, այլև մի քանի րոպեի ընթացքում հանրապետության էլեկտրակայանների տեխնիկատնտեսական ցուցանիշները հաղորդելու Անդրկովկասի դիսպետչերական կենտրոն (վարչություն)։ Կազմակերպված էլեկտրոնային հաշվիչ կենտրոնի տարեկան տնտեսական արդյունքը միջին հաշվով ավելի քան մեկ միլիոն ռուբլի է։

Ելնելով այն հանգամանքից, որ գոյություն ունեցող ռեսուրսները բոլոր բնագավառներում, այդ թվում նաև գիտության մեջ ունեն որոշակի սահմանափակվածություններ, ինչպես նաև դրանց արդյունավետ օգտագործումը, այդ իսկ պատճառով էլ զարգացման ներկա փուլում ավելի քան երբեք, առավել լուրջ նշանակություն է տրվում գիտատեխնիկական նոր մշակումների տեխնիկատնտեսական և տեխնոլոգիական հիմնավորվածությանը, հատկապես շեշտը դնելով դրանց արդյունքների կիրառելության վրա։ Հակառակ դեպքում կստացվի այնպես, որ նույնիսկ ժողտնտեսության մասշտաբով արժեքավոր մշակումներն ու մտահղացումները գործողության ուղեգրեր չեն ստանում, մնում են գիտական կազմակերպությունների գզրոցներում։ Հենց այստեղից էլ առաջանում է այն անհրաժեշտ պայմանը, որ պետք է առավել ամրապնդել գիտության, արտադրության ու պրակտիկայի դաշինքը, կատարելագործել դրանց մերձեցման ուղիներն ու խթանող միջոցները, լուրջ աշխատանք տանել միջանկյալ օղակներում գիտնականների, կոնստրուկտորների, տնտեսագետների և այլ մասնագետների աջակցության ու փոխօգնության իրականացման ասպարեզում։

Գիտահետազոտական աշխատանքների կառավարման ու պլանավորման



արդյունավետության բարձրացման գործում վճռական նշանակություն ունի գիտության, տեխնիկայի և արտադրության համապատասխանաբար ու համամասնական զարգացումը, այսինքն, զարգացման ներկա մակարդակը օբյեկտիվորեն պահանջում է տվյալ տնտեսական ռեգիոնի կամ հանրապետության գիտության և էկոնոմիկայի զարգացման շահերի զուգակցում, դրանց համապատասխան մասնագիտացում և աշխատանքների կոորդինացում։

Ուսումնասիրությունները միաժամանակ վկայում են, որ հանրապետությունում կատարվող՝ հատկապես ճյուղային գիտահետազոտական ինստիտուտների հետազոտություններն անմիջականորեն առնչվում և կապված են, այսպես կոչված, հանրապետության անմիջական արդյունաբերական ձեռնարկությունների գործունեության հետ, դրանց նվաճումները համեմատաբար լավ են օգտագործվում արտադրության կողմից։

Գիտահետազոտական աշխատանքները արտադրության զարգացմանը զուգակցելու աշխատանքների պլանավորման ուսանելի փորձ ունեն մեր հանրապետության տերիտորիայում գտնվող մի շարք ինստիտուտներ։ Օրինակ, Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական, կոմպլեքս էլեկտրասարքավորումների համամիութենական գիտահետազոտական, քարի և սիլիկատների գիտահետազոտական ինստիտուտները, սարքերի և ավտոմատ էլեմենտների պետական միութենական կոնստրուկտորական բյուրոն և այլն։

Հասարակական արտադրության արդյունավետության մակարդակի ճիշտ որոշումը զգալիորեն պայմանավորված է նրա հաշվարկման մեթոդների ու ձևերի կատարելագործման աստիճանով, իսկ արտադրության արդյունավետությունը՝ բազմաթիվ գործոններով, որոնցում վճռական նշանակություն ունի գիտատեխնիկական առաջընթացը և դրա հետ կապված արտադրության գիտատարության մակարդակն ու նրա հաշվարկման առանձնահատկությունները, ինչպես նաև յուրացվող ու պատրաստվող արտադրանքի ինքնարժեքի ծախսային էլեմենտում «գիտության ծախսերի» առանձնացման հնարավորությունները և դրա մոտավոր հաշվարկները։

Ինչպես հայտնի է, ներկա տվյալներով, գիտահետազոտական աշխատանքների իրականացման նպատակներով առանձնացվում են վիթխարի նյութական, աշխատանքային և դրամական միջոցներ։ Այսպես, միայն 1978 թ. նախատեսված է այդ նպատակների համար ծախսել 19,4 մլրդ ռուբլի։ Ըստ մեր կարծիքով, նման պայմաններում արտադրանքի ինքնարժեքի կառուցվածքում գիտության համար կատարվող ծախսումների առանձնացումը դրա փոխհատուցման կարևորագույն պայմաններից մեկն է և այն հասարակական արտադրության տնտեսական արդյունավետության բարձրացման հաշվարկների կատարելագործման, ինչպես նաև սոցիալիստական տնտեսվարման կարևորագույն մեթոդներից մեկի՝ տնտեսական հաշվարկի արմատավորման և կատարելագործման կարևորագույն լծակներից է։

Սակայն հասարակական արտադրության տնտեսական արդյունավետության բարձրացման առանցքը եղել և մնում է աշխատանքի արտադրողականության համակողմանի բարձրացումը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ու բնագավառներում։ Այն ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի, մեր սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման, սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման գլխավոր գործոնն է։ «...Երկրի առջև կանգնած տնտեսական և սոցիալական բազմազան խնդիրները հաջողությամբ լուծելու համար այլ ուղի չկա, բացի աշխատանքի արտադրողականության արագ աճից, ամբողջ հանրային արտադրության արդյունավետության խիստ բարձրացումից։ Շեշտը արդյունավետության վրա դնելը, և այդ մասին հարկ է կրկին ու կրկին ասել, մեր ամբողջ տնտեսական ստրատեգիայի կարևորագույն բաղկացուցիչ մասն է» (**ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը**, էջ 64)։

Զարգացման ներկա պայմաններում վերոհիշյալ խնդիրների լուծումն առանձնապես հրատապ է դառնում։ Այս հանգամանքը նախ և առաջ կապված է աշխատանքային կամ ընդհանրապես գոյություն ունեցող ռեսուրսների սահմանափակվածության պրոբլեմի հետ։ Այժմ նյութական բարիքների արտադրու-

թյան ավելացումը հիմնականում պետք է ընթանա աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին, կենդանի աշխատանքի խիստ կրճատման, արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման ուղիով։

Երկրի ժողովրդական տնտեսության զարգացման ընթացիկ հնգամյակի պլանների մշակման հիմքում դրված է կուսակցության այդ կուրսը։ Աշխատանքի արտադրողականության բարձրացումը պետք է ապահովի արդյունաբերական արտադրանքի աճի մոտ 90 տոկոսը, գյուղատնտեսական և շինարարության արտադրանքի ամբողջ աճը։ Դրա հաշվին կստացվի ազգային եկամտի ավելացման 85—90 տոկոսը՝ նախորդ հնգամյակի 80 տոկոսի փոխարեն։

Ժողովրդական տնտեսության ղեկավարումը բարելավելու խիստ կարևոր բնագավառ է կառավարման կազմակերպական կառուցվածքի և նրա մեթոդների կատարելագործումը։ Դա առաջին հերթին վերաբերում է դեմոկրատական ցենտրալիզմի երկու վճռական հիմունքների զարգացմանը. մի կողմից անհրաժեշտ է զարգացնել ցենտրալիզմը, դրանով իսկ արգելք հարուցելով գերատեսչական և տեղայնական տենդենցներին, իսկ մյուս կողմից՝ զարգացնել դեմոկրատական հիմունքները, տեղերի նախաձեռնությունը, միաժամանակ ապահովելով կառավարման օպերատիվությունն ու ճկունությունը՝ որոշումներ կայացնելիս։

Մեր կուսակցության XXV համագումարը, անդրադառնալով արտադրության արդյունավետության խնդիրներին, նշեց, որ գիտատեխնիկական հեղափոխության արդի փուլում վճռականը ժամանակի գործոնն է։ Արտադրության կառավարման և պլանավորման բնագավառում դա առաջին հերթին նշանակում է նյութական, աշխատանքային և դրամական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հետ մեկտեղ հնարավորին ճշտությամբ հաշվի առնել նաև այն ժամկետները, որ կպահանջի զանազան նախագծերի իրականացումը։ Որոշումները վճռելիս ընտրել այնպիսի տարբերակներ, որոնք հնարավորություն կընձեռեն՝ լուծելու այն հիմնական խնդիրը, որը կապված է կապիտալ ներդրումների շուտափույթ փոխհատուցման հետ, նպաստում է ժամանակի խնայողության խրախուսմանը, միաժամանակ ապահովելով կառավարչական որոշումների օպերատիվությունը։

Այսօր սոցիալիստական արտադրության կառավարման կազմակերպումը գիտական հիմունքներով հրամայական պահանջ է, հատկապես հասարակական արտադրության արդյունավետության, ինչպես նաև կատարվող աշխատանքի ու թողարկվող արտադրանքի որակի բարձրացման խնդիրների իրականացման առումով։ Այս հանգամանքը հիմնավորվում է բազմաթիվ փաստերով և օրինակներով։

Այսպես, գրեթե նույն պայմաններում գտնվող արդյունաբերական ձեռնարկությունների և միավորումների մեծ մասը, շնորհիվ արտադրության պլանային կառավարման լավ դրվածքի, կատարում և գերակատարում է պլանային առաջադրանքներն ու պարտավորությունները։ Այս տեսակետից պատահական չէ, որ տասներորդ հնգամյակի ժողովրդական տնտեսության զարգացման պլանները մշակելիս արտադրության կառավարման պրոբլեմների կատարելագործումը դիտվեց որպես այդ պլանի առանձին բաժին։

Այսպիսով, հասարակական արտադրության կառավարման գիտական բարձր մակարդակով կազմակերպումն ու իրականացումը անհրաժեշտ նախադրյալներ են ստեղծում ընթացիկ հնգամյակի գլխավոր տնտեսական խնդրի լուծման, մասնավորապես՝ արտադրության արդյունավետության և իրականացվող աշխատանքների, ինչպես նաև թողարկվող արտադրանքի որակի համակողմանի բարձրացման համար։

---



# ՌՈՒՍԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՄՏՔԻ ԱՐՁԱԳԱՆՔՆԵՐԸ ՀԱՅ ԻՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ XIX ԴԱՐԻ ԵՐԿՐՈՐԴ ԿԵՍԻՆ

**Ռ. Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր

ԱՆՑՅԱԼ ԴԱՐԻ ՀԱՅ ԱՌԱՋԱԴԵՄ ՄԻՏՔԸ, սկսած հատկապես 40—60-ական թվականներից, Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորվելը գնահատում էր որպես հարազատ ժողովրդի մի հսկայական հատվածի ազատագրում հետամնաց արևելյան բռնապետության ծանր լծից, որը հայությանն սպառնում էր տնտեսական քայքայում, քաղաքական դիմազրկում, վայրենացում և ֆիզիկական ու բարոյական տեսական ոչնչացում։ Ռուսաստանը համարելով Եվրոպայի հետ կապված և եվրոպական պետություն, հայ առաջադեմ մտածողները գտնում էին, որ նրա հետ Հայաստանի միավորումը բազում հնարավորություններ է ընձեռում մեր ժողովրդին՝ Ռուսաստանի զարգացած հոգևոր մշակույթի հետ հաղորդակցվելու, ինչպես և տնտեսական, քաղաքական ու հոգևոր բարգավաճման համար։ Զեր սխալվում Նազարյանցը, երբ, անդրադառնալով այդ հարցին, գրում էր, թե «ժողովրդի հայրենիքը այժմ ազատված է ստրկության լծից։ Նա կապակցված է մի եվրոպական, լուսավորություն ընդունող տերության հետ, ժողովրդի բոլոր իմացական զորությունքը կարող են այժմ ազատապես աճել և զորանալ. Եվրոպան բաց ու արձակ է հայերի առջև, նոքա կարող են մասնակից լինել նորա կրթությանը և լուսավորությանը» (Ս. Նազարյանց, Երկեր, Թիֆլիս, 1913, հ. 1, էջ 93)։

Սակայն Արևելյան Հայաստանը Ռուսաստանի հետ միավորվելու պատմական նշանակությունը դրանով չէր սահմանափակվում։ Այն դրսևորվում էր նաև նրանում, որ մի կողմից՝ հայ իրականությունում կապիտալիզմի զարգացման ու հայկական ազգային զարթոնքի և մյուս կողմից՝ Ռուսաստանում ծավալվող գյուղացիական հուզումների բովում սկիզբ էին առնում ռուսական առաջադեմ, մասնավորապես հեղափոխական-դեմոկրատական աշխարհայեցողության հետ հայ մտքի այնպիսի առնչություններ, որոնք նոր աստիճանի էին բարձրացնում մեր ժողովրդի պայքարը հանուն սոցիալական և ազգային ազատագրության, հանուն նրա ընդհանուր հասարակական առաջընթացի։

XIX դարի երկրորդ կեսի հայ առաջադեմ մտքի կապը ռուսական հեղափոխական դեմոկրատիայի աշխարհայեցողության հետ դրսևորվում է մասնավորապես փիլիսոփայական, հասարակական-քաղաքական և էսթետիկական հարցերում։ Անշուշտ, նման առնչությունները հայ մտածողներին հազվադեպ են բարձրացրել հեղափոխական դեմոկրատիայի մակարդակին, հանգեցրել հասարակական կյանքի զանազան ոլորտների հեղափոխական վերակառուցման անհրաժեշտության գիտակցությանը։ Նրանց մեծ մասը, բացառությամբ, թերևս, Նալբանդյանի, հեղափոխական դեմոկրատիայի փիլիսոփայական, հասարակական-քաղաքական և գեղագիտական ըմբռնումները յուրացրել է հասարակական

կյանքի խաղաղ, լուսավորական վերանորոգման տեսանկյունից։ Ըստ որում, ռուսական հեղափոխական դեմոկրատիայի նշանավոր գործիչներ Բելինսկու, Գերցենի, Դոբրոլյուբովի և Չերնիշևսկու հոգևոր ժառանգության հետ հայ առաջադեմ մտքի այդպիսի մերձեցումը շարունակվում է պահպանվել նաև հայ իրականությունում ծավալվող սոցիալ-դեմոկրատական շարժման և մարքսիզմի ազդեցության ուժեղացման շրջանում։ Մի շրջան, երբ այդ ժառանգությունը, որ դասակարգային շահերի տեսանկյունից կատարված որոշ ընտրությամբ վկայակոչվում էր նաև հայ լիբերալ բուրժուազիայի գաղափարախոսների կողմից, իր բուն բովանդակությամբ նպաստում էր պրոլետարիատի հոգևոր աճին, նրա քաղաքական գիտակցականության և դասակարգային պայքարի զարգացմանը։

Ռուս վաթսունականների փիլիսոփայական հայացքների ազդեցությունն ակնհայտորեն դրսևորվեց հատկապես Մ. Նալբանդյանի աշխարհայացքում։ Շարունակելով մատերիալիզմի այն ավանդույթները, որոնք որոշակիորեն արտահայտվել էին բազմադարյան հայ փիլիսոփայության պատմության մեջ, Նալբանդյանը Գերցենի և Չերնիշևսկու ազդեցությամբ մի նոր աստիճանի բարձրացրեց մատերիալիստական փիլիսոփայությունը հայ իրականությունում՝ հաղորդելով նրան մարտականություն, հեղափոխական հնչեղություն, այն, որպես տեսական-փիլիսոփայական զենք, ի սպաս դնելով հայ ժողովրդի ազգային-ազատագրական պայքարին։ Իր Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ, Հեգելը և նորա ժամանակը աշխատություններում Նալբանդյանն արձագանքում էր Չերնիշևսկու Մարդաբանական սկզբունքը փիլիսոփայության մեջ և Համայնական հողատիրության ընդդեմ եղած փիլիսոփայական կանխահամոզումների քննադատությունը գրքերին։ Նրա համար ևս, ինչպես ռուս հեղափոխական դեմոկրատների, փիլիսոփայությունը տեսական մարզանքների ասպարեզ չէր, այլ գործունեություն, որ կոչված էր ծառայելու ժողովրդի կենսական խնդիրների լուծմանը։ «Փիլիսոփայությունը,— հայտարարում էր Նալբանդյանը,— պիտի բխի յուրաքանչյուր ազգի կյանքից. և այդ կյանքը յուր ամեն մի քայլափոխում, ամեն մի կերպարանքում պիտի աղբերացնե նոր հայացք... նա մեռած է այն րոպեից, երբ նորա վերջին միտքն ընկել էր թղթի վրա. կյանքը գնում է առաջ, գնում է և նորա փիլիսոփայությունը...» (Մ. Նալբանդյան, ԵԼԺ, հ. 3, ՍՍՀՄ ԳԱ Արմֆանի հրատ., Ե., 1940, էջ 298—299)։ Գերցենի և Չերնիշևսկու նման, Նալբանդյանը ևս, ֆոյերբախյան մարդաբանական սկզբունքին տուրք տալով հանդերձ, մարդուն համարում էր փիլիսոփայության և՛ «հեղինակը, և՛ առարկան» (նույն տեղը, էջ 73), սակայն, մոտենալով մարդու սոցիալական էության ըմբռնմանը, հասկանալով հասարակության մեջ գոյություն ունեցող սոցիալական տարբերությունների նյութական պատճառները, լուրջ քայլ էր անում անտրոպոլոգիզմից հեռանալու համար։ Այդ ըմբռնումն էր նրան հիմք տալիս մարդկանց քաղաքական ազատության խնդիրն աղերսելու տնտեսական խնդրի հետ։ «Եվ քանի որ տնտեսական խնդիրը— այն բազմակնճիռ Գորդիասի կապը լուծված չէ,— գրում էր Նալբանդյանը,— հասարակությունը յուր ընկերական և ընտանեկան հարաբերությանց մեջ ազատ չէ, թող քառասուն անգամ, եթե կամենան, փոփոխեն կառավարության ձևը, բայց քանի որ հասարակության մի մասը տիրապետել է հողին, իսկ մյուս մասը մնում է մուրացիկ, այնտեղ թագավորում է բռնությունը» (նույն տեղը, էջ 56)։

Ելնելով փիլիսոփայության գործնական նշանակության այս ըմբռնումից, Նալբանդյանը քննադատաբար էր վերաբերվում անցյալի փիլիսոփայական ուսմունքներին և, ինչպես Գերցենը, Բելինսկին ու Չերնիշևսկին, դրանցում, մասնավորապես՝ Հեգելի փիլիսոփայության մեջ, տեսնում էր ո՛չ միայն մերժելի կողմեր, այլև աշխարհի զարգացման էությունն արտահայտող այնպիսի դրույթներ, որոնք հանգեցնում էին կյանքը արմատականորեն վերափոխելու հեղափոխական եզրակացությունների։ Ծանոթությունը արևմտաեվրոպական փիլիսոփայական տեսություններին, ակնհայտ համակրանքը Գերցենի և Չերնիշևսկու մարտնչող մատերիալիստական աշխարհայացքի նկատմամբ հնարավորություն էին ընձեռում նրան մոտենալու մարդկային գիտակցության հա-



սարակական էության ըմբռնմանը և գիտակցության ու կեցության հարաբերության փիլիսոփայական գլխավոր հարցի մատերիալիստական լուծմանը։ Ըմբռնելով գիտակցության ածանցյալ լինելը կեցությունից, նա հայտարարում էր, որ գիտակցության բնույթը պայմանավորված է մարդկային կյանքի պայմանների բնույթով։ Իսկ մարդկային կյանքը մշտնջենական փոփոխություն է և զարգացում՝ ամբողջ բնությանը բնորոշ համընդհանուր շարժման դրսևորումներից մեկը։ Շարժումը համարելով բնության անկապտելի հատկություն, Նալբանդյանը հանգում էր շարժման՝ որպես հակադրությունների պայքարի, հեգելյան ըմբռնմանը։ Դիտելով կյանքը որպես շարժում, իսկ շարժումը՝ որպես հակադրությունների պայքար, նա ո՛չ միայն ցուցաբերում էր հակադրությունների պայքարի՝ Հեգելի կողմից ձևակերպված օրենքի խոր ըմբռնում, այլև արտահայտում իր հավատարմությունն այն դրույթներին, որոնք արծարծված էին Չերնիշևսկու Արվեստի էսթետիկական հարաբերությունը իրականության հետ և Մարդաբանական սկզբունքը փիլիսոփայության մեջ աշխատություններում։

Նալբանդյանը վաթսունական թվականների իր մյուս հավատակիցների հետ միասին յուրացրեց և հետագա շրջանի հայ առաջադեմ մտքին փոխանցեց ռուս հեղափոխական դեմոկրատիայի առավելապես հասարակական-քաղաքական գաղափարները, որոնք հագեցած էին ճորտատիրության և ցարիզմի անխնա մերկացումներով, հասարակական կյանքի սոցիալիստական վերափոխման ուտոպիական ծրագրերով, ժողովրդական զանգվածների դարավոր իղձերի իրականացման մտահոգություններով։ Այդ գաղափարների ոգով հայ առաջադեմ միտքը տասնամյակներ շարունակ քննում ու գնահատում էր հայկական կյանքի երևույթները, բացահայտում դրանում առկա արատներն ու խոցերը, հիմնավորում ժողովրդին լուսավորելու, նրա կյանքը բարելավելու, նրան ընդհանուր հասարակական առաջընթացի ուղիով տանելու իր պահանջների հրատապությունն ու արդարացիությունը։ Այս տեսակետից կարևոր դեր կատարեց 1858 թվականին Նազարյանցի հիմնած «Հյուսիսափայլ» ամսագիրը, որը շատ հարցերում արձագանքում էր Չերնիշևսկու ժամանակաշրջանի «Սովրեմեննիկին»։ Այդտեղից «Հյուսիսափայլը» ո՛չ միայն թարգմանաբար արտատպում էր զանազան հոդվածներ, այդ շրջանի ռուս և արևմտաեվրոպական նշանավոր բանաստեղծների ազատաշունչ գործերը, այլև կիրառում էր իրականության քննադատության այն սկզբունքը, որ ռուսական մամուլում սկիզբ էր դրել Բելինսկին և նոր ուժով հնչում էր Չերնիշևսկու «Սովրեմեննիկում»։ Նազարյանցը չէր էլ թաքցնում, որ կյանքի բացասական երևույթների մերկացման հարցում ինքը հետևել է արևմտաեվրոպական և, հատկապես, ռուսական առաջադեմ ամսագրերին։

Անշուշտ, հայ հոգևորականության բարոյական այլասերման մերկացման միջոցով, ազգային կյանքում հայ եկեղեցու ունեցած գերիշխանության դեմ ծառացած իր ըմբոստությամբ, հանուն խղճի ազատության իր մաքառումներով, որ երբեմն ստանում էր քաղաքական ազատության համար պայքարի երանգ, «Հյուսիսափայլը» վերջին հաշվով քննադատում էր ազգային շրջանակներում գոյություն ունեցող «քաղաքական կարգերն ու օրենքները»։ Բայց ամսագիրը հաճախ դուրս էր գալիս այդ ազգային շրջանակներից և միանում այն համընդհանուր պայքարին, որ մղում էին ռուսական և արևմտաեվրոպական առաջադեմ գործիչները ռեակցիայի, սոցիալական և ազգային ճնշման դեմ։ Դրա փայլուն դրսևորումներից էր Մարտիրոս Հրաչյայի թարգմանությամբ «Սովրեմեննիկից» արտատպած Ն. Կարնովիչի «Գարիբալդու կյանքը» հոդվածը, որում արտահայտվում էր ռուսական առաջադեմ մտքի, և առաջին հերթին՝ Դոբրոլյուբովի ու Չերնիշևսկու բացահայտ համակրանքը Իտալիայի ժողովրդական հերոսի, նրա գլխավորությամբ տեղի ունեցող և համաեվրոպական արձագանք ստացած ազգային-ազատագրական կռվի նկատմամբ։ Այս տրամադրություններով էին համակված 1860 թվականի ընթացքում «Սովրեմեննիկում» հրապարակվող Չերնիշևսկու միջազգային տեսությունները, Դոբրոլյուբովի «Նամակներ Թուրինից» հոդվածաշարը, ինչպես նաև Նալբանդյանի նամակը Սվաճյանին, որտեղ նա, որպես գարիբալդիական վոլոնտերների հայրենասի-

րական շարժման ականատես, գրում էր. «...Չեմ նախանձում Իտալիայի ազատության, դորա հակառակ առ ի սրտե ուրախ եմ, սակայն տեսանելով նորա ազատությունը և իմ ազգի տկարությունը, կրծում է սիրտս և այրում է հոգիս...» (Մ. Նալբանդյան, ԵԼԺ, հ. 4, ՀՍՍՀ ԳԱ հրատ., Ե., 1949, էջ 86)։

Նալբանդյանի հայացքները համահնչուն էին ռուս վաթսունականների հայացքներին ո՛չ միայն իտալական ազգային-դեմոկրատական շարժման, այլև տվյալ շրջանի Ռուսաստանի համար մեծ կարևորություն ունեցող մի այնպիսի խնդրում, ինչպիսին էր ճորտատիրության վերացման և գյուղացիությանը հողաբաժնով ապահովելու ուղիների հարցը։ Համամիտ լինելով Չերնիշևսկու տեսակետին, նա Ռուսաստանում չէր տեսնում ճորտատիրության վերացման այլ միջոց, քան գյուղացիական հեղափոխությունը։ Արտահայտելով ռուս մեծ մտածողի հայացքները, Նալբանդյանը ևս հողը համարում էր քաղաքական ազատության միակ իրական հիմքը և արդարացիորեն գտնում, որ ռուսական կյանքի հանգուցային՝ ագրարային հարցի հետևողական և վերջնական լուծման պայմանը գյուղացիության ազատագրությունն է ճորտությունից առանց հողի եռգնման, որովհետև ազատություն տալ եռգնման պայմանով, միևնույն է, թե պահպանել նրա տնտեսական և իրավական կախումը հին տերերից։

Պաշտպանելով Գերցենի և Չերնիշևսկու սոցիալիստական համոզմունքները, Նալբանդյանը նույնպես գտնում էր, որ Ռուսաստանում ճորտատիրական իրավունքը վերացնելու և հողը գյուղացուն հանձնելուց հետո պետք է ընթանալ ոչ թե Արևմտյան Եվրոպայի ճանապարհով, որտեղ հողի կապիտալիստական սեփականությունը նոր ստրկություն բերեց գյուղացիությանը, այլ պետք է զարկ տալ հողի համայնական սեփականության զարգացմանը։ Կարծելով, ինչպես Չերնիշևսկին, որ գյուղական համայնքը հնարավոր կդարձնի Ռուսաստանում շրջանցելու կապիտալիզմը և օգտվելով ռուս մտածողի Համայնական հողատիրության ընդդեմ եղած փիլիսոփայական կանխահամոզումների քննադատությունը աշխատության տեսական սկզբունքներից, ուտոպիական սոցիալիզմի հայ ներկայացուցիչը գրեթե բառացի կրկնում էր նրան, երբ գրում էր. «Եթե մի որևիցե ազգ հասել է իր զարգացման վերին աստիճանին, մի ուրիշ ազգ, որ խեղճ վիճակում է, կարող է հասնել այդ աստիճանին, առանց այնքան ժամանակ և ուժ գործ դնելու, որքան առաջին ազգը, և բնավ չհանդիպելով միջին մոմենտներին, որոնցից անցել էր առաջին ազգը» (Մ. Նալբանդյան, ԵԼԺ, հ. 3, էջ 317)։ Ըստ Նալբանդյանի, միջին օղակների շրջանցումը ո՛չ միայն չի կտրում հասարակական զարգացման հաջորդական շղթան, այլև կապակցում է այն։ Ուստի հիմք կա պնդելու, որ այդ շրջանցումը Արևելքի ժողովուրդների, մասնավորապես՝ Ռուսաստանի համար, որտեղ վաղուց ի վեր գոյություն ունի գյուղական համայնքը, ո՛չ միայն չի հակասում պատմական զարգացման ընդհանուր տրամաբանությանը, այլև լիովին համընկնում է նրան, հանդես գալիս որպես օրինաչափություն։

Նալբանդյանի այն տեսակետը, թե ժողովրդի իրական ազատության արմատական պայմանը տնտեսական խնդրի լուծումն է, տեսական նախադրյալ էր ծառայում ո՛չ միայն Ռուսաստանում ճորտատիրությունը վերացնելու և ամբողջ հողը աշխատավոր գյուղացուն անհատույց հանձնելու անհրաժեշտությունը հիմնավորելու, այլև այն սեռուն միտքն արծարծելու համար, թե ժողովրդի ազգային-պետական ինքնորոշումն անիմաստ ու անհնար է առանց ազգային տերիտորիայի, առանց այն հողի, որի վրա պիտի աճի ու բարգավաճի տվյալ ժողովրդի քաղաքական ու մշակութային կյանքը։

Հետևելով Բելինսկուն, Նալբանդյանը ժողովրդի ինքնությունը, կամ ինչպես ինքն էր ասում՝ «անձնավորությունը», համարում էր նրա ազգությունը, այսինքն՝ լեզվի, սովորությունների, հավատալիքների, մշակույթի այն ուրույն համաձուլվածքը, որով ժողովուրդները տարբերվում են միմյանցից։ Նա կարծում էր, որ այդ համաձուլվածքը ներկայացնում է մի անորոշություն, այսպես կոչված՝ «վերացական ազգություն», քանի դեռ այն խարսխված չէ տնտեսական հողի վրա (տե՛ս նույն տեղը, էջ 90—91)։ Իսկ իրական ազգությունը հարկավոր է, որպեսզի այդ ազգության անդամներն իրավունք ունենան բողոքելու մի



կտոր հող ձեռք բերելու և դրանով իրենց ապրուստն ապահովելու համար։ Բայց այն դեպքում միայն, երբ հողը պատկանում է ոչ թե մի քանի անձերից բաղկացած կառավարություններին, այլ ամբողջ ժողովրդին։

Այս դատողություններով Նալբանդյանը հանդես էր գալիս որպես մի մտածող, որը խորապես ըմբռնել էր ճնշված ժողովուրդների՝ ազգային անկախության և ազատության համար մղվող պայքարի օրգանական կապը սոցիալական կեղեքման ու շահագործման դեմ ուղղված այն ընդհանուր պայքարի հետ, որ ամենուրեք մղում էին աշխատավորական զանգվածները տիրող դասակարգերի դեմ։ Այս իմաստով Նալբանդյանի հեղափոխական դեմոկրատիզմը, որ, անկասկած, Գերցենի, Բելինսկու և Չերնիշևսկու գաղափարների ազդեցության արդյունքն էր, դրսևորվում էր նաև որպես հայ ժողովրդի հեղափոխական ազգային-ազատագրական պայքարի գաղափարախոսություն։

Հենց դրանով էր թանկ Նալբանդյանը հաջորդ տասնամյակների հայ առաջադեմ մտավորականության համար, որը նոր, հասարակական կյանքի զարգացման ավելի հասուն պայմաններում որդեգրեց նրա սոցիալիստական հայացքները՝ ջանալով դրանց լույսի ներքո զննել հայ ժողովրդի սոցիալ-տնտեսական և ազգային-քաղաքական զարգացման առկա վիճակը և հեռանկարները։ Այս սերունդը, իրեն համարելով Նալբանդյանի արժանի ժառանգորդը, բնականաբար պիտի իր հայացքն ուղղեր դեպի նրա հոգևոր հայրերի՝ ռուսական հեղափոխական դեմոկրատների փիլիսոփայությունը՝ որոնելով այնտեղ դարաշրջանի առաջադրած նոր հարցերի պատասխանները։

Հայ առաջադեմ մտավորականության այս նոր սերնդի մի մասը, յուրացնելով Գերցենի և Չերնիշևսկու սոցիալիստական ուսմունքը, հայկական կյանքի վերակառուցման անհրաժեշտությունն ըմբռնեց առավելապես խաղաղ բարենորոգչական տեսանկյունով։ Այսպես, օրինակ, հայ նարոդնիկներից ոմանք (Հ. Տեր-Մովսիսյան, Ս. Ղորղանյան և այլք) Հայաստանում հետռեֆորմյան հողային հարցը շոշափելիս, թեև երբեմն առանց հիշատակելու Չերնիշևսկու անունը, վկայակոչում էին նրա տեսակետը՝ ամբողջ հողը առանց եռգնման գյուղացիությանը հանձնելու մասին։ Սակայն միաժամանակ կարծում էին, թե ժողովրդական հուզումները կանխելու համար նպատակահարմար է ագրարային հարցը լուծել «վերևից»՝ բացահայտորեն հեռանալով հասարակական խնդիրների լուծման այն ընդհանուր հեղափոխական ոգուց, որով ներթափանցված էր ռուս վաթսունականների սոցիալիզմը։

Բայց հայ մտքի զարգացման հենց այս շրջանում հայտնվեցին մարդիկ, որոնք ո՛չ միայն գիտակցում էին ռուս հեղափոխական դեմոկրատիայի գաղափարական ազդեցության արգասավորությունը հարազատ ժողովրդի սոցիալ-ազգային ազատագրությանը նախանձախնդիր երիտասարդ սերունդների դաստիարակության հարցում, այլև ուղղակի կամ անուղղակի անդրադարձնում էին այդ ազդեցությունը, երբ մշակում էին թուրքական լծից հայ ժողովրդի ազատագրության ազգային-հեղափոխական պայքարի և սոցիալական զարգացման ծրագրեր։

Դա ամենից առաջ վերաբերում է Րաֆֆուն։ Իր Խենթը և Կայծեր վեպերում նա երազում էր մի հասարակություն, որտեղ «չարություն չի լինի, բոլոր մարդիկը բարի կլինեն, ամենի ապրուստը ապահովված կլինի.— ազաների դարը կանցնե, կտիրե միայն արդարությունը և իրավունքը» (Րաֆֆի, Երկերի ժողովածու, հ. 4, Ե., 1963, էջ 377)։ Հայ մեծ գրողը, հետևելով ռուս ուտոպիստ-սոցիալիստներին, գտնում էր, որ հասարակությունը պետք է կազմակերպել այնպես, որպեսզի «զորեղն անզորին չճնշե, որ մշակ մարդու աշխատության վաստակը չխլեն, և նա միշտ իր տանը ուտելու հաց ունենա, և ամենի վրա տիրե հավասարությունը...» (նույն տեղը)։ Գոյություն ունեցող հասարակությունը, ըստ Րաֆֆու, չի համապատասխանում մարդու էությանը։ Այն պայմանները, որոնք իշխում են առկա հասարակական կազմակերպության մեջ, հող են ստեղծում արատավոր բարքերի և չարության առաջացման համար։ Փոխի՛ր մարդկանց կյանքի պայմանները, «և դու կտեսնես, որ նրանք օրինավոր մարդիկ կդառ-

նել, ամրապնդել իր լայնածավալ երկրի արևելյան սահմանները՝ ստեղծելով այնտեղ քրիստոնյաների բնակավայրեր:

Հայ ժողովուրդը, կապելով իր հույսերը, իր ապագան Ռուսաստանի հետ, ազնվորեն մասնակցել է երկրի պաշտպանությանը: Նրա լավագույն զավակները ռուս զինվորների հետ միասին կռվել են ընդհանուր թշնամու դեմ: Դեռ 1723 թվականին մոտ յոթ հարյուր հայեր և վրացիներ կամավոր մտնում են ռուսական բանակի շարքերը, կազմելով առանձին զորամասեր: Հայկական վաշտի հրամանատարն էր Լազար Խրիստոֆորովը. նրան, ինչպես և հայ զինվորական Իվան Յուզբաշուն, իրենց «ռազմական ծառայությունների ու հավատարմության համար» 1734-ին շնորհվում է գեներալ-մայորի աստիճան: Նրանք առաջին հայ գեներալներն էին ռուսական բանակում:

Իսրայել Օրին արևմտահայ ազատագրական շարժման առաջին գործիչներից էր, որը կապ հաստատեց Պետրոս Առաջինի հետ, նպատակ ունենալով Ռուսաստանի օգնությամբ վերականգնել հայոց պետությունը: Այդ նրան չհաջողվեց: Նրանից հետո հասարակական ասպարեզ իջավ Հովսեփ Էմինը: Հնդկահայ էր նա, Լոնդոնում էին անցել նրա երիտասարդական տարիները, ուր ջանասիրությամբ պատրաստվել էր իր ապագա գործունեության համար: 1759 թվականին Էմինը գալիս է Հայաստան, այցելում Վրաստան, ծանոթանում է Իրակլի երկրորդի հետ, մշակում Հայաստանի ազատագրման ծրագիրը: 1761 թվականին Էմինը գալիս է Պետերբուրգ, մտադրություն ունենալով անմիջական կապեր հաստատել ռուսական կառավարության հետ: Էմինին ևս չի հաջողվում իրականացնել իր քաղաքական ծրագրերը: Նա վերադարձավ Հնդկաստան, ուր և վախճանվեց 1809 թվականին:

Հնդկահայ գաղութից էր նաև Շահամիր Շահամիրյանը, որի գործունեությունը սերտորեն կապված էր հայ ազատագրական պայքարի հետ: Նա Մադրասում հրատարակել է Հայոց թագավորության պատմական-աշխարհագրական համառոտ նկարագրությունը, որի օրինակներից ուղարկվել է Պետերբուրգ, Հովսեփ արքեպիսկոպոս Արղությանին: Վերջինիս օժանդակությամբ Շահամիրյանի գիրքը լույս է տեսնում Պետերբուրգում, Վաղլամ Վագանովի թարգմանությամբ: Նրան է պատկանում նաև Խորենացու Ողբի ռուսերեն թարգմանությունը, որը լույս է տեսել Պետերբուրգում՝ 1786-ին, առանձին գրքույկով:

Անող հետաքրքրասիրությունը Հայաստանի անցյալի նկատմամբ անմիջականորեն կապված էր դարավերջի ռուս քաղաքական կյանքի իրադարձությունների հետ: Այն ժամանակաշրջանն էր այդ, երբ Պետերբուրգում մշակվում էր «Հայոց թագավորության» վերականգնման նախագիծը: Դժվար չէ պատկերացնել, թե որքա՜ն այժմեական են հնչել այն ժամանակ Խորենացու Ողբի տողերը, որոնք հիշեցնում էին ընթերցողին հայերի ավերված հայրենիքի, թուրքական ու պարսկական լծի տակ հեծող ժողովրդի ծայրաստիճան թշվառ, ծանր վիճակի մասին:

***

Հայ և ռուս ժողովուրդների միջև թե՛ քաղաքական և թե՛ կուլտուրական հետագա ավելի սերտ կապեր ստեղծելու գործում առանձնակի կարևոր դեր է խաղացել Պետերբուրգի հայկական գաղութը, որն ստեղծվել է քաղաքի հիմնադրումից գրեթե անմիջապես հետո: 1710 թվականին արդեն Պետերբուրգում գործել են «Հայկական գործակալություններ», իսկ 1780-ական թվականներին Վասիլևյան կղզու փողոցներից մեկն անվանվել է Հայկական: Ռուսաստանի հյուսիսային մայրաքաղաքը կառուցվում է շատ արագ: Տարեցտարի ավելանում է բնակչությունը: Գալիս են տարբեր երկրներից, տարբեր ազգության ու մասնագիտության տեր մարդիկ— ճարտարապետներ, նկարիչներ, գիտնականներ, արհեստավորներ, առևտրականներ, արդյունաբերողներ: Պետրոս Առաջինի հրովարտակները վկայում են, թե ինչպես էր նա խրախուսում մասնավորապես հայ առևտրականների ու արդյունաբերողների գործունեությունը՝ շնորհելով նրանց հատուկ արտոնություններ: Այդ քաղաքականությունը շարունակում է Եկատերինա երկրորդը: Նա զգալի քայլեր արեց հայ գաղութներ ստեղծելու գործում: Նրա անմիջական կարգադրությամբ կառուցվում են հայկական բնակավայրեր, քաղաքներ— Նախիջևանը՝ Դոն գետի ափին, Գրիգորիոպոլը, հայկական գաղութներ են հիմնըվում ռուսական խոշոր կենտրոններում՝ Մոսկվայում, Պետերբուրգում, նաև Աստրախանում, Ղզլարում, Մոզդոկում, Դերբենտում, Ղրիմում: Եկատերինա երկրորդը շնորհում է հայերին արտոնություններ, իրավունքներ, որոնք հաստատվում են «գերագույն հրովարտակներով»: Նա կարգադրում է միջոցներ ձեռք առնել բարելավելու համար եկվոր հայերի կյանքի պայմանները, «որպեսզի ո՛չ միայն մեր սահմաններում ապրող բոլոր հայերը պահպանվեն,— ասված է փաստաթղթում,— այլ որպեսզի դուրսը, արտասահմանում ապրող հայերը՝ տեսնելով նրանց բարեկեցությունը՝ միանան նրանց»:



Տասնութերորդ դարի վերջին երկու տասնամյակներին ռուս քաղաքական կյանքում տեղի ունեցան իրադարձություններ, որոնք կարևոր դեր խաղացին հայ-ռուսական հետագա հարաբերություններում— ռուս-թուրքական պատերազմը, ռուսական զորքերի մուտքը հարևան Վրաստան, ռուսական քաղաքականության նոր քայլերը Կովկասի նկատմամբ: Ռուսաստանի այդ տարիների պետական ծրագրերում Հայաստանը հատուկ տեղ էր գրավում: Հայ ժողովուրդը կենտրոնացած էր գլխավորապես պատմական Հայաստանում, թեև մեծ թվով հայեր ապրում էին նաև Վրաստանում, Անդրկովկասյան խանություններում: Եկատերինա երկրորդը, նպաստելով հայերի ազատագրական շարժումներին, մտադիր էր գոյության նպաստավոր պայմաններ ստեղծել նրանց համար: Մի բան, որ միանգամայն համապատասխանում էր նրա արևելյան քաղաքականությանը: Նա նպատակ ուներ հիմնադրել մի նոր քրիստոնեական պետություն, որը Վրաստանի հետ պիտի պաշտպան-պատնեշ ծառայեր երկրի արևելյան սահմաններին: Այդ ծրագրերի իրագործման համար պայմանները բարենպաստ էին: Ո՛չ միայն հայ մելիքները, հոգևորականությունը՝ հանձին Էջմիածնի, այլև հայ ժողովուրդը Ռուսաստանից էին սպասում հայրենի երկրի ազատագրումը թուրքական ու պարսկական լծից:

Պետերբուրգի հայ գաղութի ականավոր ու գործունյա ներկայացուցիչներից էին Իվան Լազարևը և Հովսեփ արքեպիսկոպոս Արղության Երկայնաբազուկը. վերջինս այդ տարիներին հանդես է եկել ո՛չ միայն որպես հոգևորական, այլև՝ հայ ժողովրդի (Ռուսաստանում ապրող հայերի) քաղաքական ներկայացուցիչ: Մեծ է եղել նրա դերը Եկատերինա երկրորդի գահակալության տարիներին: Արղությանն արտակարգ ընդունակությունների տեր, իր ժամանակի կիրթ ու զարգացած մարդկանցից էր: Նա հրաշալի տիրապետում էր ռուսաց լեզվին. այդ հանգամանքը նպաստում էր նրա բարձր դիրքին ու հեղինակությանը Ռուսաստանի կառավարական շրջաններում:

Պետերբուրգի հայ գաղութը մեծ դեր խաղաց ո՛չ միայն հայ-ռուսական քաղաքական հարաբերությունների պատմության մեջ: Ակնհայտ է նրա նշանակությունը նաև կուլտուրայի բնագավառում: Պետերբուրգում է լույս տեսել Գրիգոր Խալդարյանի Լեզվագիտության շավիղը, որի նպատակն է եղել հայերին ծանոթացնել «Լուսավոր Ռուսաստանի փառավոր ու հոյակապ լեզվին»: Նույն 1788 թվականին լույս է տեսել Կլեոպատրա Սարաֆովայի Իմացության բանալի գիրքը, ուր, բացի բառարաններից կան բաժիններ, որոնք իրավունք են տալիս մտածելու, որ հեղինակին խորթ չեն եղել դարի լուսավոր-հումանիստական գաղափարները: Կլեոպատրա Սարաֆովային Լեոն անվանել է «առևելահայ առաջին կին գրողը»: Պետերբուրգում է հիմնվել ու գործել հայկական առաջին տպարանը Ռուսաստանում:

Դեռևս գրված չէ Պետերբուրգի հայ գաղութի պատմությունը: Լրիվ չեն նրա ականավոր ներկայացուցիչների համառոտ բնութագրերի ու գործունեության մասին եղած փաստերն ու տեղեկությունները: Սակայն մի բան որոշակի է, այդ մշակութային հայկական օջախը XVIII դարի վերջերին շատ ջանքեր է թափել, նպաստելով երկու ժողովուրդների մերձեցման, բարեկամական հարաբերությունների հետագա զարգացման ընթացքին:

***

Տասնիններորդ դարի քաղաքական անցքերը Կովկասում բարերար ազդեցություն ունեցան նաև հայերի վիճակի վրա: 1801 թվականին հունվարի 18-ի մանիֆեստի համաձայն Վրաստանը մտավ Ռուսաստանի կազմի մեջ: Դարասկզբին ռուսական տիրապետության տակ անցան Անդրկովկասյան խանությունները, ուր բնակչության զգալի մասը հայեր էին:

Հայ-ռուսական ռազմական կապերն ուժեղացան 1812 թվականի Հայրենական պատերազմի ժամանակ, երբ հայ ժողովրդի զավակներից շատերը կռվում էին ռուսական բանակում նապոլեոնյան զորքերի դեմ: Պատերազմական գործողություններում աչքի ընկան հայ գեներալներ Վալերիան (Ռոստոմ) Մադաթովը, Դավիթ Դելյանովը, Աբամելիք առաջինը, Աբամելիք երկրորդը, Պավել Մելիքովը: Հայ զինվորներից շատերը զոհվեցին կռվի դաշտում: Հայերի մասնակցությունը երկրի պաշտպանության գործին, նրանց «վաստակը և սխրագործությունները» հատուկ շնորհագրով նշվեցին ռուսական պետության կողմից:

1826 թվականի ամռանն սկսվեց ռուս-պարսկական պատերազմը: Ռուսական զորամասերը, գեներալ Մադաթովի հրամանատարությամբ, թշնամու բանակը ջախջախելուց հետո գրավեցին Գյանջան (Ելիզավետպոլը): Ռազմական գործողությունները շուտով տարածվեցին Արևելյան Հայաստանում: 1827 թվականի սեպտեմբերի 19-ին ռուսական զորքերը մտան Սարդարապատ, իսկ մի քանի օր անց պաշարեցին Երևանը: Այսպես է նկարագրում ռուս զինվորական թղթակիցը քաղաքի գրավումը Երևանից գրած իր նամակում: «Կուզեի, որ դու անձամբ ականատես լինեիր այս սարսափելի տեսարանին: Չկան խոսքեր հաղորդելու

տպավորությունն՝ իր ողջ ուժով: Կասեմ միայն, որ քիչ է ասել, թե Երևանի չորս պատերը (պարիսպները) լուսավորված էին որքան հնարավոր է. ո՛չ, դրանք կարծես կրակից էին և տեղում էին գնդակների կարկուտ: Միաժամանակ մեր մոտ քառասուն տարբեր հրանոթները ոչ թե կրակ, դժոխք էին բացել ամրոցի դեմ: Հիմա պատկերացրու այս բոլորը միասին և ավելացրու դրան կրակոցների որոտը երկու կողմից, քանդվող պատերի շառաչն ու դղրդյունը, գնդակների վզզոցը, մարդկանց վայրենի գոռգոռոցը, թշվառ բնակիչների վայնասունը... Անշուշտ, հասկանալի է, որ մի ժամից հետո ամրոցը պիտի լռեր, հանգցներ իր վառ կրակները և թաքնվեր մութ գիշերվա թանձր խավարում»:

Մեկ ուրիշը, այդ իրադարձությունների մասնակից ռուս զինվորական, գրում է. «Նրանք (հայերը) պատմում են, որ շատ վաղուց նրանց հայրերը մեռնելիս կտակել են իրենց որդիներին՝ զանգերի ուրախ ղողանջով իմաց տալ նրանց գերեզմանոցում, երբ հայերի համար կծագի երջանկության արեգակը, երբ ռուսները կազատեն նրանց ծանր լծից, ի մի կժողովեն չքավորության ու պանդխտության դուռն ընկած, աշխարհի տարբեր վայրերում դեգերող Հայաստանի զավակներին»:

Պուշկինի ճանապարհորդական նոթերի սեղմ տողերից կարելի է եզրակացնել, թե ինչպիսի խանդավառությամբ է դիմավորել ռուս զորքերին հայ բնակչությունը. «Թուրքերը,— գրում է նա,— իրենց տափակ տանիքներից խոժոռ, մռայլորեն նայում էին մեզ: Հայերն աղմկալի խռնվել էին նեղ փողոցներում: Նրանց երեխաները վազվզում էին մեր ձիերի առջև, խաչակնքելով ու կրկնելով՝ խրիստիան, խրիստիան...»:

Ռուս բանաստեղծը եղել է Հայաստանում կարճ ժամանակով, պատերազմի պայմաններում: Նա տեսել է հայկական գյուղերը, որոնք նրա վրա «քարակույտերի» տպավորություն են թողել, հողածածկ տների տանիքներին նստած ցնցոտիներով կանայք հյուրասիրել են ռուս բանաստեղծին կաթով ու պանրով: Արաքսի ափերին, նշել է պոետը, «գյուղերը դատարկ էին, շրջակայքը՝ տխուր»: Պուշկինը բնութագրում է Հայաստանը որպես «սառն» ու «ամայի» մի երկիր:

Ռուս գրողներից Ա. Ս. Գրիբոեդովը առաջինն էր, որ այցելեց Հայաստան. 1818—1819 թվականների ձմռանը, որպես ռուսական դիվանագիտական միսիայի քարտուղար, դեռ Սարդար Հուսեին խանի տիրապետության ժամանակ Թեհրան մեկնելիս, մի քանի օրով նա կանգ առավ Հայաստանում: 1819 թվականի փետրվարի սկզբին նա ժամանեց Երևան: Հայաստանից ստացած առաջին տպավորությունները վավերագրվեցին նրա ճամփորդական նոթերում, որոնցից, դժբախտաբար, պատառիկներ են միայն հասել մեզ: Գրիբոեդովը հակիրճ, գեղանկարչորեն նկարագրում է առանձին պատկերներ, երևույթներ, պատահական հանդիպումներ: Հեղինակի ընկալումը գերազանցապես բանաստեղծական է. «Գիշերը Դարիալի կիրճում: Սարսափում ես արտակարգ բարձր ժայռերից. Թերեքի աղմուկը»: «Օրը մթնում է: Վանքի երկար ստվերը ձյունապատ լանջին...»: «Արևն իջնում է անչափ գեղատեսիլ և ոսկեորում սարերի կատարները, որոնք ալիքանման վետվետում են...»: Միաժամանակ Գրիբոեդովը խոստովանում է, թե որքա՛ն դժվար է պատկերել լեռների խաղաղ նինջը, իրիկվա անդորրը, Կովկասյան բնության վառ, ինքնատիպ գեղեցկությունը, փոխանցիկ գույների, լույսի ու ստվերի կախարդիչ հմայքը: Ուժեղ տպավորություն է թողել Գրիբոեդովի վրա Արարատը, երբ դեռ հեռվից առաջին անգամ տեսել է նա հպարտ ձյունագագաթները: «Ո՛չ Ստեփան-Ծմինդան, ո՛չ կովկասյան մյուս հսկաները,— գրում է նա,— չզարմացրին իրենց այսպիսի հոյակապությամբ, վեհությամբ... Ում հոգին ակնածանք է տածում սրբազան առասպելների նկատմամբ, անբացատրելի զարմանքով կապշի այդ հինավուրց սարի միայն տեսքից: Երկար ժամանակ ես անշարժ կանգնած էի...»: Այնուհետև Գրիբոեդովը նկարագրում է հայ գեղջուկի բնակարանը՝ օդան, ուր նա ստիպված է եղել գիշերել...

Երեք օր նա հյուր է մնացել Երևանում: Այդ տարի ձմեռը սաստիկ ցուրտ էր: «Ոչ-ոք,— գրում է Գրիբոեդովը,— չի հիշում այդպիսի սառնամանիք... Դեռ հիմա էլ լսում եմ ինչպես է փխրուն ձյունը ճռճռում ձիերի սմբակների տակ: Արագահոս Զանգուն տեղ-տեղ սառել է, տեղ-տեղ էլ դանդաղ հոսում է սառույցի տակ»:

Այդ առաջին այցելության ժամանակ Գրիբոեդովը քիչ է շփվել տեղական բնակչության հետ: Երբ Սարդարի պահակի ուղեկցությամբ նա մտել է Երևան, տեսել է այստեղ-այնտեղ կուչ եկած հայ բնակչության առանձին խմբեր: Սարդարի պահակը՝ «բարձր գլխարկով, դեղին չեքմենով, կապույտ բաճկոնով, մեջքի վրա կախ ընկած թնքերով, երկար նիզակով ճանապարհ էր ցույց տալիս և անխղճորեն ծեծում ամենքին, ով պատահում էր...»:

Երևանում ռուս գրողն ըմպել է հայկական «կարմիր գինին», սակայն տրամադրությունը մնացել է տխո՛ւր, մռա՛յլ: Հայաստանը թվացել է նրան «ամայի» մի երկիր: Մենակության զգացումը հեռու, օտար վայրում, պաշտոնական սառը շրջապատը, Հուսեին խանի ու Մեհմեդ բեկի կեղծավոր, քսու «պարսկական քաղաքավարությունը», ճնշված, կողոպտված հայ բնակչությունը. այս ամենը դառնությամբ էին լցրել ռուս գրողի ազնիվ սիրտը:



Ռուս-պարսկական պատերազմի օրերին Գրիբոեդովը կրկին Հայաստանում է. ռուսական բանակի հետ նա շարժվում է դեպի Երևան: Կառավարությունը հանձնարարել է նրան վարել արտաքին հարաբերությունները Պարսկաստանի ու Թուրքիայի հետ:

1826 թվականի հունիսի 4-ին Գրիբոեդովն այցելեց Համամլուից ոչ հեռու գտնվող ռուս զինվորի գերեզմանը: Գրեթե մի տարի անց, Լալվարի սարերի վրայով նա հասավ Լոռի, հունիսի 5-ին նրա առջև կրկին բացվեց Արարատի վեհ տեսարանը: Երկու օր անց նա եղավ Էջմիածնում, ուր ռուս բանաստեղծին ընդունեցին ջերմորեն, դիմավորեցին առանձին պատվով ու հանդիսավորությամբ, ինչպես նըշում է ինքը՝ «զանգերի ղողանջով»:

Վերադարձին, Երևանի ճանապարհին, Զանգվի կամրջի մոտ, Գրիբոեդովին ողջունում է պարսկական լծից ազատված հայ բնակչությունը:

Գրիբոեդովի 1827 թվականի օրագիրը տարբերվում է 1818—1819 թվականների ճանապարհորդական գրառումներից: Այժմ տպավորությունն այլ է: Ամառվա շոգ օրերն էին: Ծուրջը՝ հասուն արտերի ծովն է, մրգառատ այգիներ: Հայաստանն այժմ «մշակված երկիր» է. «Որ կողմը նայես,— գրում է Գրիբոեդովը,— գյուղեր, բազմաթիվ գյուղեր, այգիներ»: Սակայն ամենուր նա տեսնում է նաև պատերազմի դեռ նկատելի, ավերիչ հետքերը:

Գրիբոեդովին մեծապես հետաքրքրել են հայկական կուլտուրայի հուշարձանները, հին տաճարների, վանքերի ավերակները: Մեծ տպավորություն են թողել նրա վրա Լոռվա ձորը, աղմկալի Դեբեդը, հին կամուրջների ճարտարապետական արվեստը:

Ռուս գրողի ճանապարհորդական գրառումներում կարևոր տեղ են գրավում Հայաստանի լեռնային բնության տեսարանները. «Արաքսի սքանչելի դաշտավայրը», «Անամպ Արարատը՝ իր ողջ գեղեցկությամբ հառնում է վեր, մինչ կապույտները», «Հիասքանչ է գյուղը՝ Աշտարակը. երեք կամարներով կամուրջը, որի տակ Ապարան գետը փշրվում է քարերին», «Պոետական երեկոն Էջմիածնում. պատուհանից լուսավորում է լուսինը. վանահայրը շրջում է դանդաղ, ստվերի նման...», «Ամպեր ու անձրև, հետո երևում է լուսինը»: Գրիբոեդովը Բզովդալի փեշին խփել է իր վրանը, ունկնդիր եղել գիշերային լռության մեջ աղբյուրների «ախորժալուր քչքչոցին»: 1827 թվականի հունիսի սկիզբն էր: Մոտ մի տարի անց, ռուս-պարսկական պատերազմի օրերին, նա կրկին իջավ Բզովդալով: Այս անգամ լեռան գագաթին ճայթեց կայծակը, և անձրևը հեղեղեց սարերն ու դաշտերը: Ճամփորդներն ստիպված եղան գիշերել լեռան լանջին, թրջվելով «մինչև ոսկորները»: Չանցավ մի տարի և նույն՝ Բզովդալի սարահարթում Պուշկինը տեսավ, թե ինչպես սայլով տանում էին Գրիբոեդովի դին... Այդ թռուցիկ, սեղմ նկարագրություններում Գրիբոեդովի պոետական խոր ներաշխարհն է և կասկածից վեր է, որ դրանք կարող էին դառնալ ամբողջական, ավարտուն գեղարվեստական պատկերներ, եթե այդքան վաղաժամ ու ողբերգորեն չկտրվեր նրա կյանքի թելը...

Գրիբոեդովը հայ ժողովրդի ազնիվ բարեկամն էր:

Երբ ռուսական պաշտոնական մամուլը մեղադրեց Պուշկինին, որ իբր նա հայրենասեր չէ, որովհետև չի գովերգել ռուսական բանակի սխրագործությունները, նա իր Ծանապարհորդություն դեպ Էրզրում-ի առաջաբանում (սևագիր տարբերակներից մեկում), պատասխանելով այդ մեղադրանքներին, ասում է, որ ինքը «պարտական չէ գրելու պարոնայք ժուռնալիստների պատվերով»: Այստեղ հիշատակվում են նաև երկու ռուս գրողների անուններ, որոնք նույն ժամանակաշրջանում եղել են Կովկասում: Նրանցից մեկը՝ Ա. Ն. Մուրավյովը, տարիներ անց՝ 1848 թվականին, Պետերբուրգում հրատարակեց մի ընդարձակ աշխատություն Վրաստան և Հայաստան վերնագրով, ուր շարադրված են իր ճամփորդական տպավորությունները և դատողությունները կրոնական հարցերի շուրջ: Այդ գրքի երկրորդ հատորն ամբողջովին նվիրված է Հայաստանին, ուր հատկապես ուշագրավ են Անիի ավերակներին և լեռնային բնության տեսարաններին նվիրված էջերը:

Մուրավյովը Հայաստանում ծանոթացել է տեղացի առանձին մտավորականների: «Ինձ ուղեկցում էին,— գրում է նա,— մի քանի պաշտոնյաներ, որոնց թվում Աբովյանը... Նա անխոնջ ուղեկից է եղել Պարրոտին և Աբիխին Արարատ բարձրանալիս»: Աբովյանի անունը հիշատակվում է երկրորդ անգամ, երբ Մուրավյովը խոսում է եզդիների մասին:

Այդ դարաշրջանի, հայ ժողովրդի գոյավիճակի պատմական շրջադարձի անմահ հուշարձանն է Աբովյանի Վերք Հայաստանին: «Օրհնվի էն սհաթը,— գրել է Աբովյանը,— որ ռսի օրհնած ոտը հայոց լիս աշխարհը մտավ ու Ղզլբաշի անիծած չար շունչը մեր երկրիցը հալածեց»: Դժվար չէ պատկերացնել, թե ինչ-

պիսի բուռն ոգևորությամբ ու խանդավառությամբ էր դիմավորում հայ բնակչությունը ռուսական զորքերի հաղթական առաջընթացը: Դարերով նա երազել է այդ, ինչպես Աբովյանն է ասել, «ավետաբեր սհաթին»:

Ո՛չ միայն Աբովյանը, այլև հայ գրականության ու հասարակական մտքի առաջադեմ բոլոր գործիչները վաղուց էին ըմբռնել, գիտակցել, որ միայն ու միայն Ռուսաստանն է այն իրական ուժը, որի օգնությամբ հայ ժողովուրդը կկարողանա ազատվել արևելյան հետամնաց թուրք-պարսկական պետությունների բռնակալության դարավոր լծից:

Վերք Հայաստանին միաժամանակ «կտրիճ հայերի», նրանց ազատագրական անձնազոհ կռվի ու հայրենասիրության պատմությունն է: Հայ ժողովուրդը այդ դաժան պայմաններում իսկ շարունակել է պայքարը, ամեն կերպ նըպաստելով ռուսական բանակի հաղթանակին: Եվ, երբ 1826 թվականին, ինչպես գրում է Սերգեյ Գլինկան, «հնչեցին ռուսների զենքերը Արարատի լեռնագագաթների մոտ», հայ ժողովրդի լավագույն զավակներից շատերը մասնակցեցին ռազմական գործողություններին՝ ցուցաբերելով արտակարգ հերոսություն:

Մինչև Արևելյան Հայաստանի ազատագրումը ռուսական մամուլում հայերի և Հայաստանի մասին մերթ ընդ մերթ երևան են եկել կցկտուր, պատահական տեղեկություններ: Ռուսաստանում դարեր շարունակ հայերի մասին դատել են՝ շփվելով հիմնականում առևտրական խավերի հետ: Ռուսական շրջաններում տարածվել են զանազան սխալ կարծիքներ: Անցյալ դարի քսանական թվականների իրադարձությունների արդյունքներից մեկն այն եղավ, որ դրանց շնորհիվ ռուս մարդիկ մոտիկից ճանաչեցին հայ ժողովրդին, անմիջականորեն ծանոթացան հայկական կյանքին ու իրականությանը. այդ ամենը նպաստեց ավելի ճիշտ գաղափար կազմելու հայերի մասին:

***

Դառն ու դաժան է եղել հայ ժողովրդի անցյալը: Սակայն նա երբեք չի հուսահատվել, չի կորցրել իր կենսունակությունը: Դարավոր բռնությունը չի մարել նրա սրտում արժանապատվության, ջերմ հայրենասիրության ազնիվ զգացումը, ըմբոստության ու պայքարի ոգին, ազատության տենչը: Հայ ժողովուրդը, անցնելով իր պատմական ծանր, ողբերգական ուղին, միշտ պահել ու պահպանել է իր հոգևոր ու նյութական բազմադարյան կուլտուրան, իր մայրենի լեզուն, պայծառ ապագայի հավատը:

Պատմությունը ցույց տվեց, թե որքա՛ն հեռատես ու իմաստուն գտնվեցին այն հայ գործիչները, ովքեր խորապես գիտակցեցին հայ-ռուսական գաղափարական և կուլտուրական հարաբերությունների ամրապնդման անհրաժեշտությունը, ովքեր հայ ժողովրդի ազատագրական պայքարը կապեցին ռուս մեծ ժողովրդի ազատագրական պայքարի հետ:

Արգասաբեր եղավ երկու ժողովուրդների դարավոր բարեկամությունը: Այդ բարեկամության շնորհիվ է, որ ահա շուրջ վաթսուն տարի է, ինչ հայ ժողովուրդը, ռուս և սովետական մյուս եղբայրական ժողովուրդների հետ մեկտեղ, ապրում է խաղաղ, ստեղծագործական կյանքով:

Լենինգրադ


**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

**ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Մ. Բ., ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ. (պատասխանատու քարտուղար), ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ., ԿՃՈՅԱՆ Թ. Գ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ):**

Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 04821 Պատվեր 1697 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 15.700 Գինը՝ 20 կոպ.: Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 31/VII-1978 թ. ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*




# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մարքսիզմի պատմական զարգացման մի քանի առանձնահատկությունների մասին: Մարքսիզմի երեք աղբյուրները և երեք բաղկացուցիչ մասերը: *«Հայաստան» հրատ., 1978:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սոցիալիզմը և կրոնը: Բանվորական կուսակցության վերաբերմունքը դեպի կրոնը: *«Հայաստան» հրատ., 1978:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երիտասարդության միությունների խնդիրները: *«Հայաստան» հրատ., 1978:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Վելիկոռուսների ազգային հպարտության մասին: Գերցենի հիշատակին: *«Հայաստան» հրատ., 1978:*

Վ. ՊԱՐՍԱՄՅԱՆ— Արևելյան Հայաստանը Ռուսաստանի կազմի մեջ մտնելը և նրա պատմական նշանակությունը *(150-ամյակի առթիվ): Ե., «Գիտելիք» հրատ.,*

ՍՄԿԿ XXV համագումարը և մարքսիստական-լենինյան տեսության զարգացումը: *Ե., «Գիտելիք» հրատ., 1978:*

Բ. ՕՀԱՆՋԱՆՅԱՆ— Դաշնակցությունն առանց դիմակի: *«Հայաստան» հրատ., 1978:*

Ս. ՍԱՐՈԽԱՆՅԱՆ— Գաղափարական աշխատանքի արդյունավետ ուղին: *Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանի կուսկազմակերպության գաղափարական աշխատանքի փորձը: «Հայաստան» հրատ., 1978:*

Լ. ԲԵԶԻՄԵՆՍԿԻ— «Բարբարոսա» հատուկ թղթապանակը: *Փաստագրական պատմություն: «Հայաստան» հրատ., 1978:*

Օ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ— Ժողովրդական ավանդույթները՝ դպրոցականների բարոյական դաստիարակության գործում: *Ե., «Լույս» հրատ., 1978:*

**А. ГРОМЫКО — О практических путях к прекращению гонки вооружений.** Речь на специальной сессии Генеральной Ассамблеи ООН по разоружению. 26 мая 1978 года, М., Политиздат, 1978.

**Р. ЖЕЛЕЗНОВ и А. СТОЛЕШНИКОВ — Вопросы разоружения и будущее Европы.** М., «Международные отношения», 1978.

**А. КРУХМАЛЕВ — Нерушимый союз рабочих, крестьян и интеллигенции — социальная основа СССР.** М., «Знание», 1978.

**В. ГОРДЕЕВ, В. ПЛЕТНИКОВ — Антикоммунизм — главное идейно-политическое оружие империализма,** М., Политиздат, 1978.

**В. ТЕТЮШЕВ — Социалистическое преобразование экономики СССР и буржуазные «критики».** М., Политиздат, 1978.

**Э. УТКИН — Социалистическое соревнование смежных коллективов.** М., Профиздат, 1978.

**В. ФЕДИНИН — Соревнование: политэкономические аспекты.,** М., Политиздат, 1978.

**И. ТРОЦЕНКО — Воспитание и управление.** М., Политиздат, 1978.

**Н. ЛЯПОРОВ — Партийная принципиальность.** М., Политиздат, 1978.

**Гуманизм, атеизм, религия.** Сборник. М., Политиздат, 1978.

**В. ВАЩЕНКО — Пятилетка и технический прогресс.** М., Профиздат, 1978.

**В. СКАЧКОВ — Космос и проблемы мировой экономики.** М., «Международн. отнош.», 1978.

Գինը՝ 20 կ.

Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՓԱԹԵԹԱՎՈՐՄԱՆ ԱՎՏՈՄԱՏ

*Թափանցիկ պլաստիկ ժապավենով փաթեթավորված, մեկ անգամ օգտագործվող դեղահաբերը, կենցաղային քիմիայի արտադրանքները շատ հարմար են ամենօրյա գործածության համար։ Եվ, պատահական չէ, որ փաթեթավորման սարքերի միջազգային ցուցահանդեսներում նշանակալի տեղ են գրավում դեղահաբերը փաթեթավորող մեքենաները։ Նման մեքենաների ստեղծման բնագավառում որոշակի հաջողությունների են հասել Մոսկվայի պարենային մեքենաշինության համամիութենական գիտահետազոտական փորձարարակոնստրուկտորական ինստիտուտի երիտասարդ մասնագետները՝ ինստիտուտի փորձարարական գործարանում։ Նրանք ստեղծել են անընդհատ գործող ավտոմատ՝ րոպեում 200 փաթեթ արտադրողականությամբ։ Այն կարող է միաժամանակ փաթեթավորել երկու տարբեր բաղադրությամբ հաբեր, արագ վերակառուցվել նոր տեսակի արտադրանքի փաթեթավորման համար և անջատել խոտան արտադրանքը։*

## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԴՈՆՈՐՆԵՐԻՆ

*Աուտոհեմոտրանսֆուզիան այն մեթոդն է, երբ հիվանդին փոխներարկվում է իր իսկ արյունը։ Այս եղանակն սկսել են կիրառել Սարանսկի բժիշկները։ Դրա առավելությունը ո՛չ միայն հրաժարումն է դոնորի արյունից, այլև բացառվում են բուժվող հիվանդների մոտ ալերգիկ երևույթները, երիկամների, լյարդի, սրտի գործունեության վատացումը և այլ բարդություններ, որոնք երբեմն հարուցում է «օտարամուտը»։ Միակ թերությունն այն է, որ հնարավոր չէ դա կիրառել շտապ վիրահատության դեպքում. աուտոհեմոտրանսֆուզիան պահանջում է նախապատրաստական որոշ աշխատանք։ Վիրահատությունից 2—4 օր առաջ հիվանդի երակից վերցվում է 250—500 մլ արյուն, խառնվում հատուկ լուծույթի և պահվում է սառնարանում, 4—6 աստիճան տաքության պայմաններում։ Այն հիվանդին է ներարկվում վիրահատության առավել ծանր պահերին։*

## ՊԼՈՄԲԵԼՈՒ ՆՈՐ ԵՂԱՆԱԿ

*Ատամների բուժումը հաճախ ավարտվում է դրանք պլոմբելով։ Պլոմբը որոշ ժամանակ պահպանում է ատամը, բայց լիովին չի փրկում. այն շարունակում է քայքայվել, որի հետևանքով սովորական պլոմբի ժամանակ ատամի հյուսվածքի և պլոմբի միջև անպայման մնում է ոչ մեծ բացվածք, որտեղ նպաստավոր պայմաններ են ստեղծվում հիվանդության զարգացման համար։ Մեր երկրի բժիշկների կատարելագործման կենտրոնական ինստիտուտում մշակվել է նոր եղանակ, որը վերացնում է այդ բացը։ Հատուկ սարքից նոր, դեռ չկարծրացած պլոմբի վրա, ռադիոհաղորդափողի միջոցով հաղորդվում է ուլտրաձայնային տատանումներ և դրանց ազդեցությամբ պլոմբանյութը մտնում է ատամի հյուսվածքի մեջ՝ լցնելով մանրագույն ծակոտիները։*

## ՈՏՆԱԿԱՎՈՐ ԱՎՏՈՄՈԲԻԼ

*Էլեկտրական ճգնաժամը կյանքի կոչեց մեծերի համար ոտնակավոր փոքր ավտոմեքենաների թողարկումը։ Առանց շարժիչի մեքենաներ արտադրող գործարաններ կան արդեն Ճապոնիայում, Հնդկաստանում և ԱՄՆ-ում։ Փորձնական նմուշներ են հայտնվել Ավստրալիայում, Անգլիայում և այլուր։ Ի դեպ, ոտնակավոր մեքենաները բժիշկները ընկալում են իբրև հիանալի միջոց սրտային հիվանդությունների դեմ։ Բժիշկները հավաստում են, որ դրանք կնպաստեն երկարակեցությանը։ ԱՄՆ-ում նման ավտոմեքենաներ պատրաստում են ապակեպլաստիկ նյութից. դրանք ունեն մոտ 60 կգ քաշ։ Առավելագույն արագությունը ժամում 20 կմ է։ Մեքենան երկու հոգու համար է։ Այն ունի սկավառակաձև արգելակիչներ, փոխանցումների եռարագության տուփ, հետընթաց արագության փոխարկիչ։ Ոտնակավոր մեքենան պարզ է, հարմար։*